ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
Մ. ԱԲԵՂՅԱՆԻ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՄԱՆՈՒԿ ԱԲԵՂՅԱՆ

## ԵՐԿԵՐ

## Զ



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1974



Խմբագրական կոլեգիա

ԱՂԱՅԱՆ Է. Բ., ՀԱԿՈԲՅԱՆ Գ. Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. Բ., ՂԱՆԱԼԱՆՅԱՆ Ա. Տ., ՄԵԼԻՔ-ՕՀԱՆՋԱՆՅԱՆ Կ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Վ. Ս., ՊԻՎԱԶՅԱՆ Է. Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Խ. Ս.

Հատորի խմբագիր
Է. Բ. ԱՂԱՅԱՆ

Հատորը տպագրության պատրաստեց և ծանոթագրեց
Գ. ՇԱՐԱԲԽԱՆՅԱՆ

Ա $\frac{0723\text{-}003}{703\ (02)\text{-}74}$ 

## ՀԱՅՑԱԿԱՆ ՀՈԼՈՎԸ ՄԵՐ ԱՇԽԱՐՀԱԲԱՐՈՒՄ



## ԳՐԱԲԱՐԻ ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ



### Առաջին մաս, հնչյուններ



### Երկրորդ մաս, ձևաբանություն



### Ե ր կ ր ո ր դ գ լ ո ւ խ, գոյական և ածական



### Երրորդ մաս. շարահյուսություն

---

МАНУК ХАЧАТУРОВИЧ АБЕГЯН

ՄԱՆՈՒԿ ԽԱՉԱՏՈՒՐԻ ԱԲԵՂՅԱՆ

МАНУК ХАЧАТУРОВИЧ АБЕГЯН

# ԵՐԿԵՐ

## Զ


Տպագրվում է Հայկական ՍՍՀ ԳԱ Մանուկ Աբեղյանի
անվան Գրականության ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ





Հրատարակչ. խմբագիր Ժ. Մ. ԱԴՈՆՑ
Նկարչ. ձևավ. Կ. Թ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ
Տեխն. խմբագիր Մ. Ա. ԿԱՓԼԱՆՅԱՆ
Սրբագրիչ Մ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ

Հրատ. № 3436 ԽՀԽ 1312 Պատվեր № 935 Տպաքանակ 7000
Հանձնված է արտադրության 13/XII 1972 թ.,ստորագրված է տպագրության 20/IX 1974 թ.
տպագր. 53 մամ.+1 ներդիր, հրատ. 54,4 մամ., պայմ. 74,2 մամ., թուղթ № 1,
70×108 1/16, Գինը՝ 3 ռ. 90 կ.։
Հայկական ՍՍՀ ԳԱ հրատ. տպարան, Երևան, Բարեկամության 24

# ԱՌԱՋԱԲԱՆ

*Այս «Գրաբարի քերականության» առաջին տպագրությունը 1907 թ. պատրաստված էր մեր միջնակարգ դպրոցների վերին դասարանների համար։ Այժմ նույնը վերամշակված և մի փոքր ընդարձակված լույս է ընծայվում մեր բարձրագույն դպրոցների ուսանողների և առհասարակ նրանց համար, որոնք ցանկանում են մեր հին լեզուն ուսումնասիրել։*

*Քերականության մեջ կարևոր է համարված մեջ բերել համեմատաբար շատ օրինակներ և դժվար կտորները թարգմանված են աշխարհաբար։ Օրինակների հեղինակների անունները չեն հիշված՝ գրքի ծավալը չմեծացնելու համար. դրանք առնված են մեր հին հայոնի մատենագիրներից՝ Եզնիկ, Ագաթանգեղոս, Բուզանդ, Եղիշե, Մովսես Խորենացի, ինչպես և Ավետարանից և այլն։*

*1936 թ. հունիսի 25.* *Մ. Ա.*
*Երևան*

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

## ԳՐԱԲԱՐ ԵՎ ԱՇԽԱՐՀԱԲԱՐ

**1.** *Հայոց գրերի գյուտը եղել է 5-րդ դարի սկզբներին Մեսրոպ Մաշտոցի ձեռով։ Այդ ժամանակներից սկսած՝ թարգմանություններ են անում ասորերենից ու հունարենից, ապա գրում են նաև ինքնուրույն գրքեր։*

*Իբրև գրական լեզու բանեցնում են քաղաքական ու կրոնական կենտրոնների—Վաղարշապատ և Արտաշատ մայրաքաղաքների բարբառը, որով հորինում էին և երգիչները։ Մեր այգ հին գրական լեզուն, որ սովորաբար կոչվում է* գրաբար *(գրոց լեզու), այլև* հին հայերեն, *գործ են ածում և հետո, նույնիսկ մինչև 19-րդ դարի կեսերը։*

*Օրինակելի դասական լեզու, որին նմանում էին հետագայում, համարվում էր ամենից առաջ Ս. Գրքի թարգմանության լեզուն, ապա՝ ուրիշ գրքերի—Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոց», Ագաթանգեղոսի «Պատմութիւն Հայոց», Փավստոս Բուզանդի «Պատմութիւն Հայոց», Ղազար Փարպեցու «Պատմութիւն Հայոց», այլև Եղիշեի «Վասն Վարդանայ և Հայոց Պատերազմին» (Պատմութիւն Վարդանանց»), Մովսես Խորենացու «Պատմութիւն Հայոց» և ուրիշները։*

*Միջին դարերում, երբ գրաբարն ու սովորական խոսակցական լեզուն բավական տարբերվում էին միմյանցից, առաջ է գալիս միջին գրական լեզուն կամ* միջին հայերենը, *որ բանեցնում էին բանաստեղծական, բժշկական և աշխարհիկ բնավորություն ունեցող այլ գրվածքների համար։*

*Եվ վերջապես 19-րդ դարի առաջին քառորդից սկսած, արարատյան բարբառի հիման վրա, զարգանում է* նոր գրական լեզուն *կամ* աշխարհաբարը: *Դա Խ. Հայաստանի և ԽՍՀՄ-ի այլ կողմերի հայության գրական լեզուն է։ Ունենք նաև արևմտյան գրական լեզուն, որ գործածում են Կ. Պոլսի, Արևմտյան Եվրոպայի և այլ երկրների հայերը (բացի Իրանից)։*

**2.** *Գրաբարի և աշխարհաբարի ԲԱՌԵՐԸ մեծ մասամբ նույնն են. սակավաթիվ բառեր կան գրաբարում, որոնք աշխարհաբարում չեն գործածվում։*

Պետք է նկատի ունենալ, որ գրաբարում բառերը երբեմն ուրիշ իմաստով են առնվում, քան ինչ որ աշխարհաբարում. օրինակ՝ մորթել գրաբարում նշանակում է մորթազերծ անել, քերթել և ապա երկրորդաբար՝ փողոտել, վիզը կտրել. իսկ աշխարհաբարում նույն բառը գործ է ածվում միայն երկրորդ իմաստով։

Կան բառեր էլ, որ գրաբար և աշխարհաբար նույն նշանակությունն ունեն, բայց միմյանցից զանազանվում են որոշ հնչափոխությամբ. օրինակ՝ գրաբարի լեառն, մտանել, փախուցանել, լոյս, յարմար բառերն աշխարհաբար լինում են՝ լեռ, մտնել, փախցնել, լույս, հարմար։

**3. Բառակազմության** նկատմամբ գրաբարն և աշխարհաբարն իրարուց առանձին տարբերություն չունին, ուստի այդ մասին չի գրված այս քերականության մեջ[1]։

Գրաբարի էական տարբերությունն աշխարհաբարից՝ ձևաբանության և շարահյուսության մեջ է։

**4. Ձևաբանության** համար պիտի իմանալ.

ա) Կան ձևեր, որ գրաբար և աշխարհաբար բոլորովին նույնն են, օրինակ՝ գնացի, գնա՛, քաղաքի, գործով։

բ) Կան ձևեր, որ գրաբար և աշխարհաբար նույնն են՝ միայն իմաստի շրջումով, օրինակ՝ գնամ, գնաս, գնայ գրաբարում նշանակում են ավելի՝ գնում եմ, գնում ես, գնում է, և երկրորդաբար՝ կը գնամ, կը գնաս, կը գնա կամ գնամ, գնաս, գնա։

գ) Կան ձևեր, որ գրաբար և աշխարհաբար նույնն են՝ միայն որոշ հնչափոխությամբ, օրինակ՝ փախեայ, փախեար, փախեաւ են աշխարհաբարում լինում են՝ փախա, փախար, փախավ։

դ) Կան ձևեր էլ, որ աշխարհաբարում նոր կազմված են ուրիշ ձևերի նմանությամբ, կամ գրաբարի մի սովորական ձևի փոխանակել է մի ուրիշ սովորական կամ քիչ պատահող ձև, օրինակ՝ անցյալ կատարյալի՝ հասի, հասեր, հաս, հասաք, հասէք, հասին ձևերի տեղ անցել են ուրիշ բայերի համար սովորական ա ձայնավորով վերջավորությունները՝ հասա, հասար, հասավ, հասանք, հասաք, հասան։ Այսպես և հրամայականի հոգն. 2-րդ դեմքի համար գրաբարի էք, այք, արուք, իք վերջավորություններից աշխարհաբարում մնում է բոլոր բայերի համար միայն էք վերջավորությունը։ Իսկ անունների հոգնակի թվի համար ընդհանրացել է եար, նեար=եր, ներ մասնիկը, որ գրաբարում քիչ է պատահում։

**5. Շարահյուսությունը** գրաբարում և աշխարհաբարում մեծ մասամբ նույնն է. երկուսի հիմնական տարբերությունը հետևյալն է.

ա) Կողմնակի խնդիրները գրաբարում սովորաբար իրենց խնդրառուից հետո են դրվում, մինչդեռ աշխարհաբարում առաջ են ընկնում. օրինակ՝ բարձումն ազգին Արշակունեաց=Արշակունյաց ազգի բարձումը[2]։

բ) *Վերադիր ածականները գրաբարում կարող են իրենց գոյականից հետո էլ դրվել և ետադաս ժամանակ սովորաբար, երբեմն և նախադաս ժամանակ, թվով և հոլովով համաձայնում են իրենց գոյականին, մինչդեռ աշխարհաբարում ածականներն անփոփոխ են մնում, օրինակ՝ մեծ զօրութիւն, մեծի զօրութեան, մեծաւ զօրութեամբ և այլն, կամ ետադաս՝ զօրավարն քաջ, զօրավարին քաջի, ի զօրավարէն քաջէ և այլն, աշխարհաբար լինում է՝ մեծ զորություն, մեծ զորության, մեծ զորությամբ,—քաջ զորավարը, քաջ զորավարին, քաջ զորավարից և այլն։*

գ) *Գրաբարում շատ գործածական են՝* զ, ի (յ) ց, առ, ընդ, ըստ *նախդիրները՝ զանազան իմաստներով. դրանց փոխանակում են աշխարհաբարում զանազան հոլովներ կամ ուրիշ կապեր ու կապական բառեր. օրինակ՝ ընդ ծառով=ծառի տակ։ Զքաղաքաւ=քաղաքի շուրջը։*

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

## ՀՆՉՅՈՒՆՆԵՐԸ

### ՀԻՆ ԱՐՏԱՍԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**6.** *Մեսրոպյան այբբենարանով ամեն հնչյուն ունեցել է մի նշանագիր, և ամեն տառ հատկացված է եղել մի որոշ հնչյունի։ Գրությունն, ուրեմն, ճշտությամբ արտահայտել է արտասանությունը. Օրինակ՝* որդի, մարդոյ, պատուել, յատակ *արտասանվել են այնպես, ինչպես գրվել են՝ իբրև* ordi, mardoy, patuel, yatak *(ռուսերեն՝* орди, мардой, патуэл, йатак)։

**7.** *Ձայնավորներն են՝* ա, ե, է, ը, ի, ո, ու: *Վերջին ձայնավորն ու երկտառով է նշանագրված ըստ հունարենի* ου *ձայնավորի։*

*Կարճ ու երկար ձայնավորներ չեն եղել։ Նույնահնչյուն* Ե *և* Է *ձայնավորներից* Ե*-ն եղել է հավանորեն բաց, իսկ* Է*-ն՝ փակ, թերևս մի փոքր երկար, քանի որ դա փոխանակում է* ե+յ *կապակցությանը։*

**8.** Յ *տառի հնչյունը եղել է միշտ անվանկային կամ բաղաձայնական* Ի (i), *ինչպես և այժմ.* յարմար, յենուլ, յիմար, յուզել, յղի (յըղի). յոգնակի *և նմանները արտասանվել են սկզբի* յ=y (i, *ռուսերեն* й) *հնչյունով։*

Ւ *տառի հնչյունը եղել է անվանկային կամ բաղաձայնական* (ՈՒ ւ ,w)։ *Այս հնչյունով ոչ մի բառ չի սկսվում։*

Յ *և* Ւ *հնչյուններով կազմվել են երկբարբառներ։*

**Ծան.**— *Միջնադարում* Ւ *տառի անունը՝ «ւիւն»՝ արտասանում էին «հիւն»։ Բանաստեղծները, այդ տառի անվան արտասանության ազդեցությամբ, հ-ով սկսվող մի քանի բառեր գրել են ւ-ով—ւիւթ, ւիւծեալ, ւիւսել, ւիւր—հատկապես այն դեպքերում, երբ տողի առաջին բառը պետք է ւ-ով սկսվեր։*

**9.** **Երկբարբառներն** *են՝*

Այ (ai, ay),—*երկայն, ծառայ.*
Ոյ (oi, oy),—*լոյս, ներքոյ.*
Աւ (aų, aw,)—*ամաւթ, աւր.*

Եւ (eų, ew),—արեւն, մեծութեւն.
Իւ (ių, iw),—իւր, գիւթ.
Եա (ea),—սենեակ, մատեան.
Իո (ųo, wo),—հոգւոց, որդւով, աստղւոց, հռոմայեցւոց։

Կան նաև **եռաբարբառներ**

Եաւ (eaų, eaw),—այգեաւ, արդեաւ.ք.
Եայ (eaļ, eay),—քրիստոնեայ, պաշտաւնեայ.
Իոյ (ųoļ, woy),—հոգւոյ, խորենացւոյ։

## ԱՎԱՆԴԱԿԱՆ ԱՐՏԱՍԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**10.** Հին հայերենը կրել է հնչափոխություն, ինչպես և ամեն լեզու։ 19-րդ դարի սկիզբներից ի վեր գրաբար գրվածքները կարդում են մեղնում սովորաբար փոխված ավանդական արտասանությամբ, որի սկիզբը շատ վաղ է եղել։ Եվրոպացի հայագետները, սակայն, պահում են հին արտասանությունը. մարդոյ բառն, օրինակ, նրանք արտասանում են ըստ գրութեան mardoy, իսկ մենք կարդում ենք մարթո:

**11.** Ձայնավորների փոփոխությունները հետևյալներն են ըստ գրաբարի ավանդական արտասանության.

Է ձայնավորը նույնացել է Ե ձայնավորի հետ, օրինակ՝ պարտէզ=պարտեզ։

Ու ձայնավորը բառամիջում հաջորդ ձայնավորից առաջ դարձել է Վ. օրինակ՝ նուաստ, պատուէր=նվաստ, պատվեր։

Ե ձայնավորը բառասկզբում արտասանվում է Յե (ïe, ye). օրինակ՝ եղէգն, եկ=յեղեգն, յեկ։

Ո ձայնավորը բառասկզբում արտասանվում է վո, օրինակ՝ որ, ոգի=վոր, վոգի։

**12.** Յ տառը բառասկզբում արտասանվում է հ, օրինակ՝ յաճախ, յուզել=հաճախ, հուզել։

**13.** Ւ տառը ԻՈ երկբարբառի մեջ, ինչպես և բառամիջում երկու ձայնավորների միջև և բառավերջում արտասանվում է վ, օրինակ՝ հաւասար, համբաւ, երեւելի, տերեւ, հիւանդ, հովիւ=հավասար, համբավ, երեվելի, տերեվ, հիվանդ, հովիվ։ Այսպես և հոգւոց, հռոմայեցւոց=հոգվոց, հռոմայեցվոց, բայց հաճախ նաև՝ հոգոց, հռոմայեցոց։

**14.** Երկբարբառները կրել են հետևյալ փոփոխությունները.

ԱՅ, ՈՅ երկբարբառները բառավերջում արտասանվում են ա, ո օրինակ՝ ծառայ, երեկոյ=ծառա, երեկո, բայց՝ ծառայն, երեկոյն։

Մի քանի միավանկ բառերի վերջում պահվում է յ-ն հայ, նայ, խոյ։

ՈՅ երկբարբառը բառամիջում բաղաձայնից առաջ արտասանվում է ույ. օրինակ՝ լոյս, քոյր=լույս, քույր։

ԱՒ երկբարբառը բաղաձայնից առաջ դարձել է օ, որ հավանորեն եղել է փակ և ավելի երկար, քան ո տառի հնչյունը. ուստի միջնադա-

րում մեր այբբենարանի մեջ մտցրել են օ տառը։ Տպագրությունների մեջ հին աւ երկբարբառի փոխանակ ընդհանրապես գնում են օ, այսպես՝ ամաւթ, աւր, արաւր=ամօթ, օր, արօր։

Հետագայում այս հնչյունը նույնացել է ո տառի հնչյունի հետ և այդ բառերն արտասանվում են՝ ամոթ, օր, արոր։

**Իւ** (իւ) երկբարբառը բաղաձայնից առաջ արտասանվում է յու(յս)։

**Եւ** երկբարբառը բաղաձայնից առաջ դարձել է իւ, օրինակ՝ առեւծ, արեւն=առիւծ, արիւն, որոնք և արտասանվում են՝ առյուծ, արյուն։

Տպագրությունների մեջ ընդունված է առիւծ, արիւն գրությունը։

**ԵԱ** երկբարբառն արտասանվում է յա օրինակ՝ սենեակ=սենյակ։

**ԵԱՒ** բաղաձայնից առաջ դարձել է եօ, որ և արտասանվում է յո, օրինակ՝ արդեաւք=արդեօք=արդյոք։

**ԵԱՅ** արտասանվում է յա, օրինակ՝ քրիստոնեայ=քրիստոնյա։ Իսկ քրիստոնեայք, քրիստոնեայն, արտասանվում են՝ քրիստոնյայք, քրիստոնյայն։

**15. Ե** տառի փոխանակ **թե**, **եթե** բառերի վերջում հետագայում գրվել է **Է**՝ թէ, եթէ։

Այսպես և բայերի անցյալ անկատարը, որ հնագույն գրությամբ եղել է՝ եի, եիր, եաք, եիք, եին. գրեի, գրեիր, գրեաք, գրեիք, գրեին, հետագայում դարձել է՝ էի, էիր, էաք և այլն։

**16.** Բաղաձայնների ավանդական արտասանությունը գրաբարում նույնն է, ինչ որ աշխարհաբարում։ Եթե աշխարհաբարում Բ, Գ, Դ, Ձ, Ջ հնչյուններին փոխանակել են Փ, Ք, Թ, Ց, Չ, իսկ Պ, Կ, Տ, Ծ, Ճ հնչյուններին՝ Բ, Գ, Դ, Ձ, Ջ, նույնը լինում է գրաբարում։ Այսպես՝ հին երգ, որբ, մարդ, դարձ արտասանվում են՝ երք, որփ, մարթ, դարց։

**17. Ղ** տառի հնչյունն սկզբնապես եղել է Լ հնչյունին մոտիկ մի հնչյուն, կատկային Լ, որ արտասանվել է լեզվի ետևի մասի և կատկի միջև։ Հետագայում այդ հնչյունին փոխանակել է այժմյան ղ հնչյունը, ինչպես լսում ենք «աղաղակել» բառի մեջ։ Դա անձայն խ հնչյունի համապատասխան ձայնեղ հնչյուն է, որ բաղաձայններից առաջ սովորաբար դարձել է խ, ինչպես՝ աղջիկ, աղբ բառերի մեջ։

Մի քանի բառի մեջ ղ հնչյունը դարձել է լ, ինչպես՝ մառախուղ, աղ, բայց՝ մառախլապատ, մառախլուտ, անալի (անլի, ալանի=անաղի)։

Ձեռագիրների մեջ Ղ տառը գրվում էր հաճախ փշիկով ղ՛։ օրինակ՝ «այղ», որ դարձել է և գրվում է այժմ «այլ»։

**18.** Հին հայերենում չի եղել երկար Ո ձայնավոր. թարգմանիչները հունարենի ω տառը հատուկ անունների մեջ նշանագրել են ով ձևով, որ հնում հավանորեն արտասանվել է իբրև ո ձայնավոր, բայց ավանդաբար արտասանվում է, ինչպես գրվում է, օրինակ՝ Սիմովն։

Հին հայերենում չի եղել Ֆ հնչյունը. այլազգի անունների ու բառերի մեջ այդ հնչյունին փոխարինում է հայերենի Փ հնչյունը։

Ֆ տառը հետագայում է մտել մեր այբբենարանի մեջ։

## ՇԵՇՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ

**19.** *Գրաբարի շեշտադրությունը նույնպիսի է, ինչ որ նոր գրական լեզվինը։ Շեշտվում են բառերի վերջին վանկերը, օրինակ՝ բարեկա՛մ. բարեկամի՛, բարեկամանա՛լ։*

*Ը ձայնավորը միշտ անշեշտ է մնում. ուստի երբ վերջին վանկի ձայնավորն է Ը, որ չի գրվում, շեշտվում է վերջընթեր վանկը, օրինակ՝ ա՛ստղ—ա՛ստըղ, բա՛րձր—բա՛րձըր, ուսո՛ւմն—ուսո՛ւմըն, դո՛ւռն—դո՛ւռըն։*

*Կցական բարդությամբ կազմված մի քանի բառեր շեշտ ունեն սովորաբար սկզբի վանկի վրա, օրինակ՝ ա՛յսպէս, ա՛յդպէս, ա՛յնպէս, նո՛յնպէս, ա՛յսպիսի, ո՛րպէս, ո՛չինչ, ահա՛ւասիկ, ահա՛ւադիկ, ահա՛ւանիկ=ահա՛ աւասիկ, ահա՛ աւադիկ, ահա՛ աւանիկ,—նույնպես շեշտվում են ա՛յսորիկ, ա՛յդորիկ, ա՛յնորիկ, յա՛յնմանէ և այլն։*

## ՁԱՅՆԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ

**20.** *Վերջին փակ վանկերի* ի, ու, է *ձայնավորները* ոյ, եա *երկբարբառները և բառավերջի* եայ *եռաբարբառը փոփոխություն են կրում, երբ բառավերջից հետո նոր վանկ է ավելանում և շեշտն անցնում է դրա վրա։ Ձայնափոխությունն այսպես է լինում.*

Ի, ու *ձայնավորները դառնում են* Ը *կամ դուրս են ընկնում, օրինակ՝ սիրտ, սրտի—սըրտի. երկին, երկնի. ջուր, ջրոյ—ջըրոյ. անուր. անրի։*

Է *ձայնավորը դառնում է* Ի, *օրինակ՝ պատուէր, պատուիրել. էջ, իջի, իջանել։*

ՈՅ *երկբարբառը դառնում է* ՈՒ, *օրինակ՝ լոյս, լուսոյ. ողջոյն, ողջունել։*

ԵԱ *երկբարբառը դառնում է* Ե, *օրինակ՝ սենեակ, սենեկի. մատեան, մատենագիր։*

ԵԱՅ *եռաբարբառը դառնում է* Է, *օրինակ՝ քրիստոնեայ, քրիստոնէի, քրիստոնէութիւն. պաշտօնեայ, պաշտօնէի։*

Ծան.—*Այս եռաբարբառի միջի* ա *ձայնավորը դուրս է ընկնում, ինչպես և նախորդ* եա *երկբարբառի վերաբերմամբ լինում է ձայնափոխությունը* քրիստոնեայ *դառնում է քրիստոնեյի, որ գրվում է* քրիստոնէի, *որովհետև* ե + յ *կապակցությանը փոխանակում է միշտ* է։

*Բառավերջի* ԻՒ *որ արտասանվում է* իվ, *դառնում է* ՈՒ, *օրինակ՝ թիւ, թուոյ, թուել, պատիւ, պատուոյ, պատուել։*

ԵՒ *երկբարբառը, որ հետագայում դարձել է* ԻՒ, *երևան է գալիս միայն վերջին վանկերի մեջ, այնպես որ պետք է ընդունել, որ դա ևս հին ժամանակներում ձայնափոխությամբ դառնում էր* ԻՒ, *օրինակ՝ առեւծ, առիւծու. հարեւր, հարիւրոյ. եւղ. իւղոյ. Թիւր, Թիւրել. հեւս, հիւսի, հիւսել։*

Ի+Ա *կապակցությունը դառնում է* ԵԱ, *օրինակ՝ *բարի-աւ դառնում է, բարեաւ, *բարի-ա-կամ, դառնում է *բարեակամ, ապա՝ բարեկամ։*

Ծան.— *Կան բառեր, որոնց վերջին վանկերի ձայնավորները տարբեր փոփոխություն են կրում, կամ անփոփոխ են մնում, օրինակ՝ եղէգն, եղեգան, եղեգնիկ. իժ, իժի և այլն։*

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

# ՁԵՎԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

## ԱՌԱՋԻՆ ԳԼՈՒԽ

## ԲԱՅ

### ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ

**21.** *Անորոշ դերբայը վերջանում է* –ալ, –ել, –իլ, –ուլ *ձևերով, օրինակ՝* խաղալ, գրել, ուսանիլ, ճեղուլ:

Լ *վերջավորությունից առաջ եղած ձայնավորները՝* ա, ե, ի, ու *կոչվում են* լծորդ ձայնավորներ: *Մեկ բայ միայն՝* գոլ՝ *ունի* ո *ձայնավորը։*

Ի *լծորդն անորոշ դերբայի մեջ սովորաբար փոխվում է* Ե *լծորդի. օրինակ՝* խօսիլ, ուսանիլ, փախչիլ *ձևերի փոխանակ գործ են ածվում՝ խոսել, ուսանել, փախչել։ Այս պատճառով՝ բայերն անվանելու համար առնվում են Սահմանական ներկայի եզակի 1-ին դեմքերը, օրինակ՝* խաղամ, գրեմ, ուսանիմ, ճեղում:

Ծան.—*Ուլ լծորդն աշխարհաբարում փոխվել է* –ել *ձևի, օրինակ՝ արգելուլ—արգելել, կիզուլ—կիզել։*

### *ՆԵՐԿԱՅԻ ԵՎ ԿԱՏԱՐՅԱԼԻ ԲՆԵՐ*

**22.** *Բայերը մեծ մասամբ նույն կազմությունն ունեն, ինչ որ աշխարհաբարում։*

Ներկայի բունը *վերջանում է՝*

*1) Սոսկ* –ամ, եմ, –իմ, –ում *ձևերով, որոնք դրվում են բայերի ներկայի բնի կամ հիմքի վրա, օրինակ՝ գն-ամ, բեր-եմ, խօս-իմ, հեղ-ում։*

Ծան.—*Հիմքը կամ ներկայի բունը լինում է կամ մի արմատ, կամ մի բառ, լինի պարզ, բարդ թե ածանցական։ Օրինակ՝* կարդ-ամ, խաղ-ամ, կառավար-եմ, լուսավոր-իմ *բայերի հիմքերն են՝* կարդ *(բայարմատ),* խաղ *(պարզ բառ),* կառավար *(բարդ բառ),* լուսաւոր *(ածանցական բառ)։*

*2) Ածանցավոր* -ան-ամ, -են-ամ, -ան-եմ, -ան-իմ, -չ-իմ, -ն-ում, -ուց-ան-եմ *ձևերով, օրինակ՝ գոհ-անամ, մերձ-ենամ, տես-անեմ, ուս-անիմ, փախ-չիմ, զարթ-նում, փախ-ուց-անեմ։*

*Վերջին ձևով կազմվում են* պատճառական բայերը՝ *փախուցանեմ, հեռացուցանիմ, մերձեցուցանեմ և այլն։*

*Վեց բայ -չ- ածանցի փոխանակ ունեն՝* -նչ-, -անչ-, -աչ- *ձևերը՝ կոր-նչ-իմ, երկ-նչ-իմ, մարտ-նչ-իմ, յար-նչ-իմ, մեղ-անչ-եմ, ճան-աչ-եմ։*

*Ծան.— Բազմապատկական բայերը կազմվում են՝ -ատ-, -ոտ-, -տ- ածանցներով՝ խած-ատ-եմ, յօշ-ոտ-եմ, կրճ-տ-եմ։ Այս կազմության բայերը խոնարհվում են ինչպես սոսկ -եմ վերջացածները։*

**23.** Կատարյալի բունը *մեծ մասամբ նույն կազմությունն ունի, ինչ որ աշխարհաբարում։*

*1) Պատճառական բայերի բնի ածանցն է* ոյց. *օրինակ՝ մատոյց, ուսոյց:*

*2)* Աց *ածանցն ունեն* -ամ, -անամ *վերջացած բայերը, օրինակ՝ խաղ-ամ, զարմ-անամ ունեն՝* խաղաց, զարմաց, *որոնցից կազմվում են պատճառական բայեր՝ խաղաց-ուց-անեմ, զարմաց-ուց-անեմ։*

*3)* Եաց *ածանցն ունեն* -եմ, -իմ, -ենամ *վերջացած բայերը, օրինակ՝ յիշ-եմ, խօս-իմ, մերձ-ենամ ունեն՝* յիշեաց, խօսեաց, մերձեաց, *որոնցից կազմվում են պատճառական բայեր, յիշեց-ուց-անեմ, խօսեց-ուց-անեմ, մերձեց-ուց-անեմ։*

*4)* Արմատն իբրև բուն *բանում է* -անեմ, -անիմ, -չիմ, -նում, -ում *վերջացած բայերի համար, օրինակ՝ հաս-անեմ, ուս-անիմ, թռ-չիմ, զարթ-նում պատճառական ունին՝ հաս-ուց-անեմ, ուս-ուց-անեմ, թռ-ուց-անեմ, զարթ-ուց-անեմ։*

Մարտնչիմ *ունի՝ մարտ-ուցանեմ,* երկնչիմ՝ *եր-կուցանեմ կամ եր-կեցուցանեմ,* յարնչիմ *կամ* յառնեմ՝ *յարուցանեմ,* մեղանչեմ՝ *մեղուցանեմ.* ճանաչեմ, *ծանուցանեմ։*

**24.** *Գրաբարում պատճառական իմաստ են ստանում բայերը, երբ անորոշ դերբայի հետ դրվում են* առնեմ, տամ *բայերը. օրինակ՝ առնեմ, մտանել=մուծանեմ, մտուցանեմ. առնեմ, աշխատել=աշխատեցուցանեմ, առնեմ տալ ևլն։ Նույնպես՝ տամ ածել=բերել տամ. տամ տանել=տանել տամ. տամ գրել=գրել տամ ևլն։* Տամ *բայի այս գործածությունը շատ սովորական է ինչպես և աշխարհաբարում. իսկ* առնեմ *բայն այս կիրառությամբ քիչ է պատահում։ Օրինակ՝ Արա՛ այսր մտանել։ Առնիցես ըմեզ աշխատել։ Արա՛ վախճան դադարման առնուլ։ Արասցես զօրանալ։*

*Երբեմն* առնեմ *բայից հետո անորոշ դերբայի տեղ դրվում է երկրորդական խոսք* զի *շաղկապով. օրինակ՝ Արարից, զի յարդարութիւնս իմ գնայցէք (=գնացուցից)։ Արարից զնոսա, զի եկեսցեն և երկիր պագցեն առաջի ոտքից քոց։ Ես արարից, զի լացցես։*

Ծան.—Աշխարհաբարի պատճառական բայերը ծագում են գրաբարի պատճառական ձևերից հնչափոխությամբ, այն է՝ պատճառականի ու և ա ձայնավորները սղվում են. օրինակ՝ թռուցանել, նստուցանել դառնում են թռցնել, հասցնել։ Աց, նաց ձևերի և ույց ածանցի երկու ց բաղաձայնները՝ ձայնավորների սղվելով՝ իրար մոտ են գալիս և դրանցից երկրորդ ց սառը դուրս է ընկնում. օրինակ՝ զարմացուցանել, բնակեցուցանել դառնում են՝ զարմացցնել, բնակեցցնել և ապա զարմացնել, բնակեցնել։ Նույն ձևով անցուցանել, լցուցանել, կացուցանել, կեցուցանել, գործուցանել դառնում են՝ անցնել, լցնել, կացնել, կեցնել, գործնել։ Աշխարհաբարի առանց սղվելու պատճառական բայերը՝ մատուցանել, ուսուցանել, զեկուցանել ևն. առնված են գրաբարից։—Այսպես և տեսանել, ելանել, մտանել, ևն. դառնում են՝ տեսնել, ելնել, մտնել։

25. *Բայերի ձևերի մեջ, հավանորեն բարբառների ազդեցությամբ և մեծ մասամբ հետագա դարերում, հաճախ փոխանցում է լինում, այնպես որ միևնույն բայը երբեմն մի քանի ձևով է կազմվում։*

*Առանձին ուշադրություն պիտի դարձնել հետևյալ փոխանցումների վրա.*

1. Եմ, իմ, *օրինակ՝ բնակեմ, բնակիմ. ապստամբեմ, ապստամբիմ. ծաղկեմ, ծաղկիմ. պատահեմ, պատահիմ. փայլեմ, փայլիմ. պակասեմ, պակասիմ. պարապեմ, պարապիմ ևն։*

2. Եմ, եամ, ամ, իմ, *օրինակ՝ ատեմ, ատեամ. խնայեմ, խնայեամ. անխայեմ, անխայեամ. փրփրեմ, փրփրիմ, փրփրամ, փրփրեամ. լողամ, լողիմ. ծփիմ, ծփամ. որոճեմ, որոճամ. տեղեմ, տեղամ. տեղեամ. նույնպես՝ քարոզեալ, արձակեալ, խզեալ, ասեալ, ծնանեալ փոխանակ՝ քարոզել, արձակել, խզել, ասել, ծնանել ձևերի։*

3. Ում, եմ, *օրինակ՝ կասում, կասեմ. առաւելում, առաւելեմ. յաւելում, յաւելեմ. կիզում, կիզեմ. յեռում, յեռեմ. քերծում, քերծեմ. յառում, յառեմ (յառիմ). կարկառում, կարկառեմ. հինում (հենում), հինեմ. արձակեմ, արձակում. կրծեմ, կրծում ևն։ (Տե՛ս ներքևում՝ 8)։ Նույն ձևով՝ արգելուլ, զենուլ, հեղուլ, զեղուլ, ցելուլ, լիզուլ, լեսուլ, թողուլ ևն, ինչպես և զարթնուլ, թռնուլ, զբօսնուլ, փախնուլ և այլն, աշխարհաբար ունին՝ արգելել, զենել, հեղել, զեղել, ցելել, լիզել, լեսել, թողել (ավելի՝ թողնել), զարթնել, թռնել, զբոսնել, փախնել ևն։*

4. Ամ, անամ, *օրինակ՝ անձկամ, անձկանամ. ցանկամ, ցանկանամ, զղջամ, զղջանամ. մուրամ, մուրանամ. խրոխտամ, խրոխտանամ. ծուլամ, ծուլանամ. յոխորտամ, յոխորտանամ. սողամ, սողանամ, այլ և սողիմ. սոսկամ, սոսկանամ. տենչամ, տենչանամ. փութամ, փութանամ. քինամ, քինանամ. երթամ, երթանամ։ Այսպես և մերկեմ, մերկանամ. մարթեմ, մարթանամ։*

5. Իմ, ենամ,—եմ, ենամ, *օրինակ՝ արբիմ, արբենամ. մերձիմ, մերձենամ. մօտիմ, մօտենամ. թշնամիմ, թշնամենամ, այլև թշնամանամ. պարծիմ, պարծենամ. յագիմ, յագենամ,—յամեմ, յամենամ։*

6. Եմ, անեմ,—իմ, անիմ, *օրինակ՝ տարածեմ, տարածանեմ. ներկեմ, ներկանեմ. զանգեմ, զանգանեմ. մերկեմ, մերկանեմ. զատեմ, զատանեմ. լքեմ, լքանեմ. բեկեմ, բեկանեմ,—ծիւրիմ, ծիւրանիմ, ևն։*

Նույն ձևով՝ ստեղծանեմ, լուծանեմ, սպանանեմ, ծնանիմ, սկսանիմ ևլն, աշխարհաբար ունին, ստեղծել, լուծել, սպանել, ծնել, սկսել։

7. Ում, անեմ,—ում, անիմ, օրինակ՝ հանում, հանանեմ. հեղձում, հեղձանեմ (այլև հեղձուցանեմ). զերծում, զերծանեմ,—գելում. գելանիմ. ղեղում, զեղանիմ. հեղում, հեղանիմ։

8. Եմ, ում, անեմ, օրինակ՝ գերծեմ, գերծում, գերծանեմ. հերձեմ, հերձում, հերձանեմ. դիզեմ, դիզում, դիզանեմ, կիզեմ, կիզում, կիզանեմ. հարեմ, հարում, հարկանեմ. հիւսեմ, հիւսում, կրավորական՝ հիւսանիմ. ստեղծեմ, ստեղծում, ստեղծանեմ։

9. Եմ, նում, անեմ,—իմ, նում, անիմ, օրինակ թքեմ, թքնում, թքանեմ. եղծեմ, եղծնում, եղծանեմ,—հեղձիմ, հեղձնում, հեղձանիմ. զերծիմ, ղերծնում, զերծանիմ։

10. Նում, անեմ,—նում, անիմ, օրինակ՝ կլնում, կլանեմ,—զբօսնում, զբօսանիմ (այլև՝ զբօսանամ). հեծնում, հեծանիմ. ջեռնում, ջեռանիմ. սկսնում, սկսանիմ. սփածնում, սփածանիմ։

11. Իմ, նում,—ում, նում, օրինակ՝ զբաղիմ, զբաղնում. զգածիմ, զգածնում.—կալում, կալնում։

12. Չիմ, նում, օրինակ՝ փախչիմ, փախնում. զարթչիմ, զարթնում. զատչիմ, ղատնում. ուռչիմ, ուռնում (ուռենամ). թռչիմ, թռնում. հարթչիմ. հարթնում (=աշխ. խրտչել, խրտնել). ցասչիմ, ցասնում, ոստչիմ, ոստնում. այտչիմ, այտնում. մատչիմ, մատնում. խափչիմ, խափնում. թագչիմ, թագնում. հանգչիմ, հանգնում. պակչիմ, պակնում. սառչիմ, սառնչիմ, սառնում։

## ԱՊԱՌՆԻ ԴԵՐԲԱՅ

**26. Ապառնի դերբայի** վերջավորությունն է -ոց, որ ավելանում է անորոշ դերբայի վրա. ի լծորդն այս դեպքում դառնում է ե, իսկ ու լծորդը ձայնափոխությամբ դուրս է ընկնում. օրինակ՝ գրել, գրելոց. խօսիլ, խօսել, խօսելոց. հեղուլ, հեղլոց. զենուլ, զենլոց=աշխ. գրելու, խոսելու, հեղելու, զենելու։

Գրաբարում ապառնի դերբայը սակավ անգամ իբրև ածական է գործածվում. սովորաբար դրվում է եմ բայի վրա և կազմում բաղադրյալ ժամանակներ, օրինակ՝ գրելոց եմ=գրելու եմ։ Երբեմն անանցողական բայերի ապառնի դերբայը իբրև գոյական էլ է բանում, ինչպես՝ լեալք և լինելոցք=եղածները և լինելիքները։ Զգալոսցն պատմեսցէ=գալիքները կը պատմի։

## ԱՆՑՅԱԼ ԴԵՐԲԱՅ

**27. Անցյալ դերբայի** վերջավորությունն է -եալ որ դրվում է.

ա) Սոսկ -եմ, -իմ վերջացած բայերի համար բայի հիմքի վրա. օրինակ՝ գրեմ, մերձիմ, լուսավորեմ ունին՝ գրեալ, մերձեալ, լուսաւորեալ։

Ծան. 1. Կան սոսկ -եմ, -իմ վերջացած բայեր, որոնք ունին և կատարյալի բնից կազմված անցյալ դերբայ -եցեալ ձևով, որ ավելի կրավորական իմաստով է գործածվում. օրինակ՝ գրեմ՝ գրեալ, գրեցեալ (=գրած, գրված). կոչեմ՝ կոչեալ, կոչեցեալ. սիրեմ՝ սիրեալ, սիրեցեալ. կարծեմ՝ կարծեալ, կարծեցեալ. խօսիմ՝ խօսեալ (նշանած աղջիկ իմաստով), խօսեցեալ. նույնպես՝ ատեցեալ, այրեցեալ, գործեցեալ, ննջեցեալ, աճեցեալ, հայեցեալ, նայեցեալ ևլն։ Կամիմ ունի միայն կամեցեալ ձևը։

բ) Սոսկ -ամ և ածանցավոր -անամ, -ենամ վերջացած բայերի համար կատարյալի բնի վրա, օրինակ՝ գնամ, գնաց-եալ, զարմանամ, զարմաց-եալ. մերձենամ, մերձեց-եալ։

գ) Պատճառական բայերի համար պատճառական բնի վրա, այսինքն ոյց ածանցից հետո. օրինակ՝ զարմացուցանեմ, զարմացուց-եալ. թռուցանեմ, թռուց-եալ։

դ) Արմատն իբրև կատարյալի բուն ունեցող -ում, -անեմ, -անիմ վերջացած բայերի համար արմատի վրա, օրինակ՝ հեղ-ում, հեղ-եալ. տես-անեմ, տես-եալ. ուս-անիմ, ուս-եալ։

ե) Չիմ, ռում վերջացած բայերը չունին առանձին անցյալ դերբայ։ Սրա իմաստով գործ է ածվում կամ կրկին ձևերից մեկի անցյալ դերբայը, օրինակ՝ թքեալ, եղծեալ, զերծեալ, զբաղեալ (§ 25. 9—11), կամ եթե ուրիշ կրկին ձև չունին (§ 25. 12), գործ է ածվում նույն բայերի հիմքից կազմված պատճառական բայերի անցյալ դերբայը (§ 27. գ). օրինակ՝ թռուցեալ, ուռուցեալ, փախուցեալ (թռուցանեմ, ուռուցանեմ, փախուցանեմ բայերից) նշանակում են թե՛ թռցրած, ուռցրած, փախցրած և թե՛ թռած, ուռած, փախած, այսինքն՝ թռչիմ—թռնում, ուռչիմ—ուռնում, փախչիմ—փախնում բայերի իմաստով։

Ծան. 2. Գրաբարի անցյալ դերբայը նայելով տեղին աշխարհաբար թարգմանվում է կամ վաղակատար (ել վերջավորությամբ) կամ հարակատար (ած վերջ.) դերբայով. օրինակ՝ Իմ տուեալ հրամանն կատարեցաւ=իմ տված հրամանը կատարվեց։ Յաւուրս սորա փոխին արքունիքն յԱրմաւիրն տնուանեալ (=տնկված) բլրոյ. քանզի էր ննջեցեալ (=ննջեցել էր) գետն Երասխ։ Ահաւասիկ թագաւոր քո գայ նստեալ ի վերայ յաւանակի իշոյ=ահա (հրես) քո թագավորը գալիս է իշի վրա նստած։ Նոքա տուեալ տանէին զնա=նրանք տուել տանում էին նրան։ Նստեալ բարբառին=նստել խոսում են։

28. Առանձին ուշադրություն պիտի դարձնել անցյալ դերբայի հետևյալ կիրառությանը։

Նույն ենթական ու ժամանակն ունեցող երկու, երեք բայերից առաջինը սովորաբար դրվում է անցյալ դերբայով, և ենթական, մանավանդ, երբ անցյալ դերբայից հետո է գալիս, դրվում է հաճախ իբրև սեռական խնդիր։ Այսպիսի անցյալ դերբայն աշխարհաբար թարգմանվում է կամ դիմավոր բայով կամ անորոշ դերբայի գործիական հոլովով։ Օրինակ՝ Եւ յանձն առեալ (=ճանձն առնելով) արքային արքայից՝ տալ ի ձեռս Սմբատայ մասն ինչ ի զօրացն Ասորեստանի... զի տարեալ զԱրտաշես նստուսցեն (=որ տանեն, նստացնեն) ի գահն հայրենի։ Եւ քաջին Սմբատայ զճետ մտեալ՝ (=հետապնդելով) սպասկա-

զոյնս վարէր զնա։ Դու յարուցեալ գնասցես=Դու պիտի վեր կենաս. գնաս։ Եւ մտեալ ի նաւ անց յայնկոյս և եկն ի քաղաք իւր=Եվ նավ մտավ (կամ մտնելով) անցավ այն կողմը և եկավ իր քաղաքը։ Եկեալ բնակեցաւ ի քաղաքին=Եկավ, բնակվեց քաղաքում։ Ահա երթեալ ասիցեմ ցնոսա=Ահա կերթամ... կասեմ։ Մատուցեալ աշակերտքն նորա՝ աղաչէին զնա։ Մատուցեալ աշակերտացն նորա՝ ասեն ցնա։ Նորա առեալ զնա՝ տարաւ։ Նոքա առեալ տանէին զնա։ Եւ հրաման առեալ (=առնելով, առած լինելով) չդառնալ անդրէն՝ ընդ այլ ճանապարհ գնացին յաշխարհն իւրեանց։

Երբեմն տարբեր ենթականեր ունեցող բայերից ևս առաջինը դըրվում է անցյալ դերբայով, որ և աշխարհ. կատարված կերպի անորոշ դերբայի գործիական հոլովով է ասվում. օրինակ՝ օգնութիւն հասեալ՝ մինչև ցայսօր կացի=օգնություն հասած լինելով՝ մինչև այսօր մընացի...

## ԵՆԹԱԿԱՅԱԿԱՆ ԴԵՐԲԱՅ

29. **Ենթակայական դերբայը**, *որի վերջավորությունն է* -ող *(հին․ աւղ=օղ, ող), նույն կազմությունն ունի, ինչ որ աշխարհաբարում. օրինակ՝ բամբասող, լսող, ասող (այլև ասացող), զրկող, պատերազմող, գիտող, հնձող,—խնդացող, որսացող, բարկացող, մոռացող, լացող,—տեսանող, սպանանող, հարկանող,—դենող, արգելող, փախչող։*

Ծան. Անեմ, անիմ *և մի քանի սոսկ* -եմ, -իմ *վերջացած բայերի համար ենթակ. դերբայ կազմվում է և կատարյալի բնից. օրինակ՝ տեսանող, տեսող. հատանող, հատող. հարկանող, հարող. ուսանող, ուսող. սպանանող, սպանող. ծնանող, ծնող. գտանող, գտող. ստեղծող, ածող. զգեցուցանող, զգեցուցող. դարձուցանող, դարձուցող.—կամեցող, պահեցող, իշխեցող, երգեցող, ատեցող։ Իսկ որսալ, յուսալ, մուրալ, հոգալ ունին և որսող, մուրող, հոգող, որոնք սովորաբար իբրև գոյական են գործ ածվում։*

30. *Ենթակայական դերբայի իմաստն արտահայտվում է նաև՝*

1. Իչ *ածանցով կազմված բայական ածականներով. օրինակ՝ տուիչ, առաքիչ, փառաւորիչ։*

2. *Անորոշ դերբայից* ի, *հոգնակի* իք *ածանցով կազմված բայական ածականներով. օրինակ՝ սիրելի, առնելի, լսելի, առեղծանելի, գործելի, կրելի, երևելի, ծորելի, ծնանելի, բերելի ևլն. Նշանակում են թե՛ ինչ որ արժանի է սիրելու, սիրվելու, կամ՝ ինչ որ պետք է սիրել ևլն, և թե՛ սիրող, անող, լսող, առեղծանող, գործող, կրող, երևացող, ծորող, ծնող, բերող։*

3. Որ *հարաբերականով երկրորդական խոսք կազմելով։ Այս դեպքում բայի վրա վերջից հաճախ դրվում է* ն *հոդը։ Օրինակ՝ փոխանակ ասելու՝ զքեզ տեսանողն, ասողն, պատմողն՝ ասվում է՝ Որ տեսանէ զքեզ, որ ասէն, որ պատմէն։ (Տե՛ս § 194)։*

# Խ Ո Ն Ա Ր Հ Ո Ւ Մ

## ՊԱՐԶ ԺԱՄԱՆԱԿՆԵՐ

**31.** Բայերն ունին երեք եղանակ.

Սահմանական, որ ունի երեք ժամանակ՝ ներկա, անցյալ անկատար, անցյալ կատարյալ։

Ստորադասական, որ ունի երկու ժամանակ՝ առաջին ապառնի և երկրորդ ապառնի։

Հրամայական, որ ունի միայն եզակի և հոգնակի երկրորդ դեմքեր և երեք ժամանակ՝ ներկա, առաջին ապառնի և երկրորդ ապառնի։

**32. Բացասական ձևերը** կազմվում են սովորաբար ոչ, երբեմն չ մակբայով։ Բացասական Հրամայական ներկան կամ Արգելականն առանձին կազմություն ունի և ստանում է մի՛ մակբայը, որը արգելական իմաստով դրվում է նաև ապառնի ժամանակների և նույնիսկ անորոշ դերբայի վրա։ Օրինակ՝ Մի՛ լինիցիս (=չլինիս) որպէս կեղծաւորքն։ Այլ ես ասեմ ձեզ. մի՛ կալ հակառակ չարին։

Ոչ, մի՛ բացասականները կարող են հաճախ բայից բաժանվել ուրիշ բառերով և նույնիսկ բայից հետո դրվել, օրինակ՝ Մի՛ այսուհետև հոգայցէք վասն վաղուի։ Որ ոչն գործիցէ և կերիցէ մի՛: Եւ ամաչէին իսկ ոչ (§ 185)։

**33. Ներկայի բնի** կամ **լծորդի ձևերն** են՝ Սահմանական ներկա և անցյալ անկատար, Ստորադասական առաջին ապառնի, Հրամայական առաջին ապառնի, Արգելական ներկա և անորոշ դերբայ։

Ներքևում դրված են այս ժամանակների վերջավորությունները լծորդ ձայնավորների հետ։

**34. Կատարյալի բնի ձևերն** են՝ Սահմ. անցյալ կատարյալ, Ստոր. երկրորդ ապառնի, Հրամ. ներկա և երկրորդ ապառնի և Անցյալ դերբայ, որոնք կազմվում են երեք տեսակ վերջավորություններով, ուստի և կա երեք խոնարհում՝ ներգործաձև, կրավորաձև և խառն: Վերջավորություններն ավելանում են՝ անեմ, անիմ, ում, չիմ-նում վերջացած բայերի արմատի վրա, իսկ ամ, անամ, եմ, իմ, ենամ, ուցանեմ վերջացած բայերի աց, եաց, ոյց բների վրա, որոնց ց տառը հաջորդ ց, ծ տառերից առաջ դառնում է ս:

Ներքևում դրված են երեք ձևերի խոնարհման վերջավորությունները կատարյալի բնի ածանցների հետ, եթե ունեն։ Դրանց հետ առնված են սկզբից և Սահմ. ներկայի ձևերը, որոնցից կիմացվի թե ո՛ր բայը ո՛ր խոնարհման տակ է գնում և ի՛նչպիսի ձևով։ Վերջից կրկնված են այն ձևերը, որոնց վրա առանձին ուշադրություն պիտի դարձնել։

## 35. Ա. Ներկայի բնի կամ լծորդի ձևեր

### Անորոշ դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| *ալ* | *ել* | *իլ* | *ուլ* |

### Սահմանական

#### Ներկա

| | | | |
|---|---|---|---|
| *ամ* | *եմ* | *իմ* | *ում* |
| *աս* | *ես* | *իս* | *ուս* |
| *այ* | *է* | *ի* | *ու* |
| *ամք* | *եմք* | *իմք* | *ումք* |
| *այք* | *էք* | *իք* | *ուք* |
| *ան* | *են* | *ին* | *ուն* |

#### Անցյալ անկատար

| | | | |
|---|---|---|---|
| *այի* | *էի* | *էի* | *ուի* |
| *այիր* | *էիր* | *էիր* | *ուիր* |
| *այր* | *էր* | *էր (ուր)* | *ոյր* |
| *այաք* | *էաք* | *էաք* | *ուաք* |
| *այիք* | *էիք* | *էիք* | *ուիք* |
| *ային* | *էին* | *էին* | *ուին* |

#### Ստորադասական ապառնի Ա

| | | | |
|---|---|---|---|
| *այցեմ* | *իցեմ* | *իցիմ* | *ուցում* |
| *այցես* | *իցես* | *իցիս* | *ուցուս* |
| *այցէ* | *իցէ* | *իցի* | *ուցու* |
| *այցեմք* | *իցեմք* | *իցիմք* | *ուցումք* |
| *այցէք, այշիք* | *իցէք, իշիք* | *իցիք, իշիք* | *ուցուք* |
| *այցեն* | *իցեն* | *իցին* | *ուցուն* |

### Հրամայական

#### Ապառնի Ա

| | | | |
|---|---|---|---|
| *այշի՛ր* | *իշի՛ր* | *իշի՛ր* | *(չունի)* |
| *այշի՛ք* | *իշի՛ք* | *իշի՛ք* | *(չունի)* |

#### Արգելական ներկա

| | | | |
|---|---|---|---|
| *ար* | *եր* | *իր* | *ուր* |
| *այք* | *էք* | *իք* | *ուք* |

### 1. ՆԵՐԳՈՐԾԱՁԵՎ ԽՈՆԱՐՀՈՒՄ

| | | | | |
|---|---|---|---|---|
| **Սահման.** | | | | |
| Ներկա | ամ | եմ | ուցանեմ | ում<br>անեմ |
| Անց. կատ. | աց-ի | եց-ի | ուց-ի | ի |
| | աց-եր | եց-եր | ուց-եր | եր |
| | աց | եաց | ոյց | (արմատը) |
| | աց-աք | եց-աք | ուց-աք | աք |
| | { աց-իք | եց-իք | ուց-իք | իք. էք |
| | { աց-էք | եց-էք | ուց-էք | |
| | աց-ին | եց-ին | ուց-ին | ին |
| **Ստորադ.** | | | | |
| Ապառնի Բ. | աց-ից | եց-ից | ուց-ից | ից |
| | աս-ցես | ես-ցես | ուս-ցես | ցես |
| | աս-ցէ | ես-ցէ | ուս-ցէ | ցէ |
| | աս-ցուք | ես-ցուք | ուս-ցուք | ցուք |
| | աս-ջիք | ես-ջիք | ուս-ջիք | ջիք |
| | աս-ցեն | ես-ցեն | ուս-ցեն | ցեն |
| **Հրամ.** | | | | |
| Ներկա | ա՛ | եա՛ | ո՛ | (արմատը) |
| | աց-էք | եց-էք | ուց-էք | էք |
| Ապառնի Բ. | աս-ջի՛ր | ես-ջի՛ր | ուս-ջի՛ր | ջի՛ր |
| | աս-ջի՛ք | ես-ջի՛ք | ուս-ջի՛ք | ջիք |
| Անց. դերբայ | աց-եալ | (եց)-եալ | ուց-եալ | եալ |
| *Սհմ. Ներկ.* | *ամ* | *եմ* | *ուցանեմ* | *ում, անեմ* |
| *Անց. կատ.* | *ացի* | *եցի* | *ուցի* | *ի* |
| *Հրամ. Ներկ.* | *ա՛* | *եա՛* | *ո՛* | (արմատը) |

### *ԳԻՏԵԼԻՔ*

**87. Ներկայի բնի կամ լծորդի ձևերի համար.**

ա) Եամ *լծորդի (§ 25. 2)* եա *երկբարբառը, երբ շեշտը հաջորդ վանկին է անցնում, դառնում է* է, ի. *օրինակ՝ ատեամ, ատեաս, ատեայ, ատեամք, ատեայք, ատեան։ Ատէի, ատէիր, ատեայր. ատէաք, ատէիք, ատէին։ Ատիցեմ, ատիցես, ատիցէ եւն։ Մի՛ ատեար, մի՛ ատեայք։*

բ) Եմ, իմ *լծորդների Ստոր. առաջին ապառնու հոգն. 1-ին դեմքի համար պատահում է և* իցուք *ձևը, օրինակ՝ խօսիցուք։*

| 2. ԿՐԱՎՈՐԱԶԵՎ ԽՈՆԱՐՀՈՒՄ | | | | 3. ԽԱՌՆ ԽՈՆԱՐՀՈՒՄ |
|---|---|---|---|---|
| անամ | ենամ | իմ | անիմ | չիմ (նում) |
| ացայ | եցայ | եցայ | այ | եայ |
| ացար | եցար | եցար | ար | եար |
| ացաւ | եցաւ | եցաւ | աւ | եաւ |
| ացաք | եցաք | եցաք | աք | եաք |
| ացայք, | եցայք, | եցայք, | այք, | եայք, |
| ացարուք | եցարուք | եցարուք | արուք | երուք |
| ացան | եցան | եցան | ան | եան |
| ացայց | եցայց | եցայց | այց | եայց |
| ասցիս | եսցիս | եսցիս | ցիս | իցես |
| ասցի | եսցի | եսցի | ցի | իցէ |
| ասցուք | եսցուք | եսցուք | ցուք | իցուք |
| ասջիք | եսջիք | եսջիք | ջիք | իջիք |
| ասցին | եսցին | եսցին | ցին | իցեն |
| ացի՛ր | եցի՛ր | եա՛ց | ի՛ր | ի՛ր |
| ացա՛յք, | եցա՛յք, | եցա՛յք, | ա՛յք, | եա՛յք, |
| ացարո՛ւք | եցարո՛ւք | եցարո՛ւք | արո՛ւք | երո՛ւք |
| ասջի՛ր | եսջի՛ր | եսջի՛ր | ջի՛ր | իջի՛ր |
| ասջի՛ք | եսջի՛ք | եսջի՛ք | ջի՛ք | իջի՛ք |
| ացեալ | եցեալ | (եց)եալ | եալ | (ուցեալ) |
| *անամ* | *ենամ* | *իմ* | *անիմ* | *չիմ(նում)* |
| *ացայ* | *եցայ* | *եցայ* | *այ* | *եայ* |
| *ացի՛ր* | *եցի՛ր* | *եա՛ց* | *ի՛ր* | *ի՛ր* |

գ) Իմ *լծորդի Անց. անկ. եզ. 3-րդ դեմքի* իւր *ձևը՝ խօսիւր, աղանիւր՝ քիչ է գործածվում։*

դ) Ում *լծորդի* ոյ *ձևը՝ բացի Անց. անկատարի եզ. 3-րդ դեմքից՝ պատահում է և ուրիշ դեմքերի մեջ՝ հեղոյի, հեղոյիր, հեղոյր ևն։*

**38. Կատարյալի բնի ձևերի համար.**

ա) Անցյալ կատարյալի *եզ. 3-րդ դեմքը, երբ միավանկ բառ է մնում, սկզբից կարող է ստանալ ձայնավորներից առաջ* է *ձայնավորը, իսկ բաղաձայններից առաջ՝* ե. *օրինակ՝* օծանեմ՝ օծի, օծեր, օծ *կամ*

էօծ: Տեսանեմ՝ տեսի, տեսեր, տես կամ ետես: Երբ բայը է կամ ե ձայնավորով է սկսվում, է-ն չի գրվում, օրինակ՝ ելանեմ՝ ելի, ելեր, ել: Իջանեմ, իջի, իջեր, էջ:

բ) Անցյալ կատարյալի եզ. 3-րդ դեմքի վերջին վանկի մեջ վերականգնվում են եա, ոյ երկբարբառները և է, ու, ի ձայնավորները, որ մյուս դեմքերի մեջ ձայնափոխությամբ դառնում են՝ ե, ու, ի, ը (որ չի գրվում)։ Նույնը լինում է և հրամայականի մեջ. օրինակ՝ սիրեցի, սիրեցեր, սիրեաց. մատուցի, մատուցեր, մատոյց: Լուծանեմ՝ լուծի, լուծեր, լոյծ: Հրամ. լո՛յծ: Իջի, իջեր, էջ. Հրամ. է՛ջ: Անիծանեմ՝ անիծի, անիծեր, անէծ. Հրամ. անէ՛ծ: Մտանեմ՝ մտի, մտեր, մուտ կամ եմուտ. Հրամ. մո՛ւտ: Թքանեմ՝ թքի, թքեր, թուք կամ եթուք: Գտանեմ՝ գտի, գտեր, գիտ կամ եգիտ:

գ) Ստոր. երկրորդ ապառնի ժամանակի եզ. և հոգն. 1-ին դեմքերի և հոգն. 2-րդ դեմքի համար պատահում են նաև ցեմ, ցիմ, իցեմ,— ցեմք, ցիմք, իցեմք,—ցէք. ցիք, իցէք վերջավորությունները։

դ) Հրամ. ներկա ժամանակի հոգն. 2-րդ դեմքի համար մի քանի բայ ունին իք վերջավորությունը, օրինակ՝ մատչիմ՝ մատի՛ք, զարթչիմ՝ զարթի՛ք: Իսկ սոսկ իմ վերջացած բայերի Հրամ. ներկայի եզ. 2-րդ դեմքը լինում է երբեմն նաև պարզ եմ վերջացած ներգործական խոնարհվող բայերի ձևով, կամ թե կատարյալի բնի կամ հիմքի վրա ավելանում է ի՛ր վերջավորությունը. օրինակ՝ ողորմիմ՝ ողորմեա՛ց, ողորմեա՛. համարիմ՝ համարեա՛ց, համարեա՛, համարի՛ր. աշխատիմ՝ աշխատեա՛ց, աշխատեա՛. ճեպիմ՝ ճեպեա՛. ջահիմ՝ ջահեա՛. երևիմ՝ երևեա՛ց, երևեցի՛ր. հետևիմ՝ հետևեա՛ց, հետևեցի՛ր։

ե) Ներգործական խոնարհման տակ դնում եմ՝ ամ, եմ. ուցանեմ, անեմ, ում և կրկնական նում –անեմ (§ 25. 9, 10) վերջացած բայերը։ Վերջինը խոնարհվում է ինչպես անեմ վերջացած բայ՝ թքնում, թքանեմ՝ թքի, թքեր ևլն։

զ) Կրավորական խոնարհման տակ դնում են՝ անամ, ենամ. իմ. անիմ և կրկնական նում–անիմ, իմ–նում (§ 25. 9, 10) վերջացած բայերը։ Վերջինները խոնարհվում են ինչպես անիմ վերջացած բայ՝ ջեռնում-ջեռանիմ՝ ջեռայ ևլն։

է) Խառն խոնարհման տակ դնում են՝ չիմ, նչիմ, չիմ –նում (§ 25. 12) վերջացած բայերը՝ կոչիմ, փախչիմ—փախնում, մարտնչիմ։ Բացի դրանցից նաև մի քանի ուրիշ բայեր՝ պշնում, ցածնում, քաղցնում (անցյալ դերբայ՝ քաղցեալ՝ քաղցեմ բայից), շրտնում։

## 39. Ներկայի բնի կամ լծորդի ժամանակներ

### Սահմանական

#### Ներկա

| | | | |
|---|---|---|---|
| աղամ | սիրեմ | խօսիմ | հեղում |
| աղաս | սիրես | խօսիս | հեղուս |
| աղայ | սիրէ | խօսի | հեղու |
| աղամք | սիրեմք | խօսիմք | հեղումք |
| աղայք | սիրէք | խօսիք | հեղուք |
| աղան | սիրեն | խօսին | հեղուն |

#### Անցյալ անկատար

| | | | |
|---|---|---|---|
| աղայի | սիրէի | խօսէի | հեղուի |
| աղայիր | սիրէիր | խօսէիր | հեղուիր |
| աղայր | սիրէր | խօսէր, խօսիւր | հեղոյր |
| աղայաք | սիրէաք | խօսէաք | հեղուաք |
| աղայիք | սիրէիք | խօսէիք | հեղուիք |
| աղային | սիրէին | խօսէին | հեղուին |

### Ստորադասական

#### Ապառնի Ա

| | | | |
|---|---|---|---|
| աղայցեմ | սիրիցեմ | խօսիցիմ | հեղուցում |
| աղայցես | սիրիցես | խօսիցիս | հեղուցուս |
| աղայցէ | սիրիցէ | խօսիցի | հեղուցու |
| աղայցեմք | սիրիցեմք | խօսիցիմք | հեղուցումք |
| աղայցէք | սիրիցէք | խօսիցիք | հեղուցուք |
| աղայցեն | սիրիցեն | խօսիցին | հեղուցուն |

### Հրամայական

#### Արգելական ներկա

| | | | |
|---|---|---|---|
| մի՛ աղար | մի՛ սիրեր | մի՛ խօսիր | մի՛ հեղուր |
| մի՛ աղայք | մի՛ սիրէք | մի՛ խօսիք | մի՛ հեղուք |

#### Ապառնի Ա

| | | | |
|---|---|---|---|
| աղայջի՛ր | սիրիջի՛ր | խօսիջի՛ր | — |
| աղայջի՛ք | սիրիջի՛ք | խօսիջի՛ք | — |

### Անորոշ դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| աղալ | սիրել | խօսիլ(խօսել) | հեղուլ |

### Ապառնի դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| աղալոց | սիրելոց | խօսելոց | հեղլոց |

## 1. ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ԽՈՆԱՐՀՈՒՄ

### Սահմանական

| | | | | |
|---|---|---|---|---|
| *աղամ* | *սիրեմ* | *մատուցանեմ* | *օծանեմ* | *հեղում* |

#### Անցյալ կատարյալ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *աղացի* | *սիրեցի* | *մատուցի* | *օծի* | *հեղի* |
| *աղացեր* | *սիրեցեր* | *մատուցեր* | *օծեր* | *հեղեր* |
| *աղաց* | *սիրեաց* | *մատոյց* | *օծ, էօծ* | *հեղ, եհեղ* |
| *աղացաք* | *սիրեցաք* | *մատուցաք* | *օծաք* | *հեղաք* |
| *աղացիք,-էք* | *սիրեցիք,-էք* | *մատուցիք,-էք* | *օծիք,-էք* | *հեղիք,-էք* |
| *աղացին* | *սիրեցին* | *մատուցին* | *օծին* | *հեղին* |

### Ստորադասական

#### Ապառնի Բ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *աղացից* | *սիրեցից* | *մատուցից* | *օծից* | *հեղից* |
| *աղասցես* | *սիրեսցես* | *մատուսցես* | *օծցես* | *հեղցես* |
| *աղասցէ* | *սիրեսցէ* | *մատուսցէ* | *օծցէ* | *հեղցէ* |
| *աղասցուք* | *սիրեսցուք* | *մատուսցուք* | *օծցուք* | *հեղցուք* |
| *աղասջիք* | *սիրեսջիք* | *մատուսջիք* | *օծջիք* | *հեղջիք* |
| *աղասցին* | *սիրեսցեն* | *մատուսցեն* | *օծցեն* | *հեղցեն* |

### Հրամայական

#### Ներկա

| | | | | |
|---|---|---|---|---|
| *աղա՛* | *սիրեա՛* | *մատո՛* | *օ՛ծ* | *հե՛ղ* |
| *աղացէ՛ք* | *սիրեցէ՛ք* | *մատուցէ՛ք* | *օծէ՛ք* | *հեղէ՛ք* |

#### Ապառնի Բ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *աղասջի՛ր* | *սիրեսջի՛ր* | *մատուսջի՛ր* | *օծջի՛ր* | *հեղջի՛ր* |
| *աղասջի՛ք* | *սիրեսջի՛ք* | *մատուսջի՛ք* | *օծջի՛ք* | *հեղջի՛ք* |

### Անցյալ դերբայ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *աղացեալ* | *սիրեցեալ* (*սիրեալ*) | *մատուցեալ* | *օծեալ* | *հեղեալ* |

## 2. ԿՐԱՎՈՐԱՁԵՎ ԽՈՆԱՐՀՈՒՄ

## 3. ԽԱՌՆ ԽՈՆԱՐՀՈՒՄ

### Սահմանական

| | | | | |
|---|---|---|---|---|
| *գոհանամ* | *մերձենամ* | *խօսիմ* | *ուսանիմ* | *փախչիմ* |

#### Անցյալ կատարյալ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *գոհացայ* | *մերձեցայ* | *խօսեցայ* | *ուսայ* | *փախեայ* |
| *գոհացար* | *մերձեցար* | *խօսեցար* | *ուսար* | *փախեար* |
| *գոհացաւ* | *մերձեցաւ* | *խօսեցաւ* | *ուսաւ* | *փախեաւ* |
| *գոհացաք* | *մերձեցաք* | *խօսեցաք* | *ուսաք* | *փախեաք* |
| *{գոհացայք, -արուք* | *{մերձեցայք, -արուք* | *{խօսեցայք, -արուք* | *{ուսայք, -արուք* | *{փախեայք, -երուք* |
| *գոհացան* | *մերձեցան* | *խօսեցան* | *ուսան* | *փախեան* |

### Ստորադասական

#### Ապառնի Բ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *գոհացայց* | *մերձեցայց* | *խօսեցայց* | *ուսայց* | *փախեայց* |
| *գոհասցիս* | *մերձեսցիս* | *խօսեսցիս* | *ուսցիս* | *փախիցես* |
| *գոհասցի* | *մերձեսցի* | *խօսեսցի* | *ուսցի* | *փախիցէ* |
| *գոհասցուք* | *մերձեսցուք* | *խօսեսցուք* | *ուսցուք* | *փախիցուք* |
| *գոհասջիք* | *մերձեսջիք* | *խօսեսջիք* | *ուսջիք* | *փախիջիք* |
| *գոհասցին* | *մերձեսցին* | *խօսեսցին* | *ուսցին* | *փախիցեն* |

### Հրամայական

#### Ներկա

| | | | | |
|---|---|---|---|---|
| *գոհացի՛ր* | *մերձեցի՛ր* | *խօսեա՛ց* | *ուսի՛ր* | *փախի՛ր* |
| *{գոհացա՛յք, -արո՛ւք* | *{մերձեցա՛յք, -արո՛ւք* | *{խօսեցա՛յք, -արո՛ւք* | *{ուսա՛յք, -արո՛ւք* | *{փախեա՛յք, -երո՛ւք* |

#### Ապառնի Բ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *գոհասջի՛ր* | *մերձեսջի՛ր* | *խօսեսջի՛ր* | *ուսջի՛ր* | *փախիջի՛ր* |
| *գոհասջի՛ք* | *մերձեսջի՛ք* | *խօսեսջի՛ք* | *ուսջի՛ք* | *փախիջի՛ք* |

### Անցյալ դերբայ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *գոհացեալ* | *մերձեցեալ* | *խօսեցեալ* (*խօսեալ*) | *ուսեալ* | *փախուցեալ* |

## 41. Ընդհանուր պատկեր խոնարհման

### Սահմանական

Ներկա

*խաղամ*
*խաղաս*
*խաղալ*
*խաղամք*
*խաղալք*
*խաղան*

Անցյալ անկատար

*խաղալի*
*խաղալիր*
*խաղալր*
*խաղալաք*
*խաղալիք*
*խաղալին*

Անցյալ կատարյալ

*խաղացի*
*խաղացեր*
*խաղաց*
*խաղացաք*
*խաղացիք, խաղացէք*
*խաղացին*

### Ստորադասական

Ապառնի Ա

*խաղալցեմ*
*խաղալցես*
*խաղալցէ*
*խաղալցեմք*
*խաղալցէք, խաղալջիք*
*խաղալցեն*

Ապառնի Բ

*խաղացից*
*խաղասցես*
*խաղասցէ*
*խաղասցաք*
*խաղասջիք*
*խաղասցեն*

### Հրամայական

Արգել. ներկա

*մի՛ խաղար*
*մի՛ խաղալք*

Ներկա

*խաղա՛*
*խաղացէ՛ք*

Ապառնի Ա

*խաղալջի՛ր*
*խաղալջի՛ք*

Ապառնի Բ

*խաղասջի՛ր*
*խաղասջի՛ք*

### Դերբայներ

Անորոշ

*խաղալ*

Անցյալ

*խաղացեալ*

Ապառնի

*խաղալոց*

## ԿՐԱՎՈՐԱԿԱՆԻ ԿԱԶՄՈՒԹՅՈՒՆ

**42.** Գրաբարում առանձին կրավորական բայեր չկան ինչպես աշխարհաբարում, այլ կա միայն կրավորական խոնարհում, որ կազմվում է լծորդի կամ կատարյալի բնի ձևերի շրջումով։

ա) Ներկայի բնի ժամանակներում՝ ե լծորդն ունեցող ներգործական բայերի այս ե լծորդը, (ե, է ձայնավորը վերջին վանկերի մեջ), փոխվում է ի լծորդի և բայն ստանում է կրավորական իմաստ. օրինակ՝ աղայցեմ, մերկանայցեմ, սիրեմ, սիրիցեմ, մի՛ սիրեր, մի՛ սիրէք, սիրել՝ կրավորական իմաստով լինում են՝ աղայցիմ, մերկանայցիմ, սիրիմ, սիրիցիմ, մի՛ սիրիր, մի՛ սիրիք, սիրիլ, (այլ և սիրել=սիրվել),—նմանապես և մյուս դեմքերը (անց. անկատ. եզ. 3-րդ դեմքի մասին տե՛ս ներքևը՝ § 43. բ)։

բ) Կատարյալի բնի ժամանակներում ներգործաձև խոնարհվող անցողական բայերը խոնարհվելով կրավորաձև՝ ստանում են կրավորական իմաստ, այսպես՝ սոսկ ամ վերջացածները խոնարհվում են ինչպես անամ վերջացածները, սոսկ եմ՝ ինչպես իմ վերջացածները, իսկ անեմ և սոսկ ում՝ ինչպես անիմ վերջացածները։ Օրինակ՝ աղացի, սիրեցի, մատուցի, օծի, հեղի կրավորական իմաստով լինում են՝ աղացայ, սիրեցայ, մատուցայ, օծայ, հեղայ,—նմանապես և մյուս դեմքերն ու ժամանակները։

գ) Կան ներգործական բայեր և ժամանակներ, որոնք խոնարհման այս շրջումը չեն կրում, այլ անփոփոխ միևնույն ձևով մնալով՝ գործ են ածվում հասարակ իմաստով (=ընդհանուր իմաստով), այսինքն թե՛ իբրև ներգործական և թե՛ իբրև կրավորական. մտքից և կիրառությունից միայն պիտի հասկացվի դրանց ներգործական կամ կրավորական լինելը։ Օրինակ՝ սկսանիմ, գողանամ, հեղում կարող են նշանակել թե՛ սկսել, գողանալ, թափել և թե՛ սկսվել, գողացվել, թափվել:

Իմ լծորդն ունեցող անցողական բայերը, օրինակ՝ խօսիմ, սկսանիմ, որովհետև թե՛ ներկայի և թե՛ անցյալի բների բոլոր ժամանակները հասարակ իմաստ ունեն, կոչվում են հասարակ բայ:

**43.** Ներկայի բնի ժամանակների համար պետք է իմանալ.

ա) Ամ լծորդի ժամանակները հասարակ են, բացի ստոր. առաջին ապառնուց, որի այցեմ, այցես, այցէ և այլն ձևերը դառնում են՝ այցիմ, այցիս, այցի:

բ) Եմ լծորդի ժամանակները փոխվում են իմ լծորդի, օրինակ՝ ճանաչեմ, ճանաչես, և այլն. դառնում են՝ ճանաչիմ, ճանաչիս, ճանաչի և այլն։ Միայն սահմ. անց. անկատարը հասարակ ձևով է մնում՝ ճանաչէի, ճանաչէիր, ճանաչէր և այլն,=ճանաչում էի, ճանաչում էիր, ճանաչում էր, կամ ճանաչվում էի, ճանաչվում էիր, ճանաչվում էր։ Այս ժամանակի եզակի 3-րդ դեմքը կարող է իւր վերջավորությամբ ևս կրավորական ունենալ՝ ճանաչիւր, ճառիւր, ասիւր, կոչիւր, գործիւր, հատանիւր, տեսանիւր=ճանաչվում էր, ճառվում էր, ասվում էր և այլն։

գ) Իմ, ում լծորդների ժամանակները հասարակ իմաստ ունին։ Միայն սոսկ իմ վերջացած բայերից մի քանիսը, ինչպես՝ համարիմ, խոստովանիմ, դատիմ՝ ունին նաև ե լծորդով ձևեր՝ համարեմ, խոստովանեմ, դատեմ։ Սրանց եմ լծորդով ձևերը միայն ներգործական իմաստով են գործածվում, իսկ իմ լծորդով ձևերը թե՛ ներգործական և թե՛ կրավորական իմաստով։ Անց. անկ. իւր ձևը միայն կրավորական է։

44. Կատարյալի բնի ժամանակների համար պետք է իմանալ.

ա) Անամ, իմ, անիմ վերջացած ներգործական բայերի բնի ժամանակները հասարակ իմաստ ունին. օրինակ՝ գողացաւ, խօսեցաւ, ծնաւ=գողացավ, խոսեց, ծնեց կամ գողացվեց, խոսվեց, ծնվեց։

բ) Ներգործաձև խոնարհվող ներգործական բայերի հրամ. երկրորդ ապառնին, սահմ. անց. կատարյալի հոգն. 1-ին դեմքը, Ստոր. երկրորդ ապառնու հոգն. 1-ին և 2-րդ դեմքերը (ցուք, ջիք վերջավորությամբ) հասարակ իմաստ ունին. բայց այս վերջին դեմքերը ներգործականի մեջ ունին նաև ցեմք, ցէք վերջավորությունները, որոնք ցիմք, ցիք ձևով կրավորականի են վերածվում։

գ) Ներգործական բայերի կրավորական ձևը երբեմն, գործածվելով անդրադարձ կամ փոխադարձ նշանակությամբ, պահում է իր ներգործական իմաստը, օրինակ՝ զօտի ընդ մեջ իւր ածաւ (փոխ. էած)։ Բաժանեցան (փոխ. բաժանեցին) զհանդերձս իմ յինքեանս։

դ) Պատճառական բայերի կրավորականն ընդհանրապես քիչ է գործածվում. նույն իմաստով բանում են, ինչպես և աշխարհաբարում, սովորաբար համապատասխան չեզոք բայերը. օրինակ՝ Մատեաւ (փոխանակ մատուցաւ) ի վերայ նորա պատարագ։

ե) Երբեմն կրավորաձև խոնարհվող հասարակ բայերը ներգործական իմաստով խոնարհվում են ներգործաձև, օրինակ՝ ծնանի=ծնում է, ծնվում է. ստոր. երկրորդ ապառնին ունի սովորաբար ծնայց, ծնցիս, ծնցի, ծնցուք, ծնջիք, ծնցին, բայց կա ներգործական իմաստով նաև՝ ծնցես, ծնցէ, ծնցեն։

զ) Դերբայները նույն ձևով կարող են և ներգործական և կրավորական իմաստ ունենալ. տեսանել=տեսնել, տեսնվել. տեսեալ=տեսած, տեսել և տեսնված. տեսանելոյ=տեսնելու, տեսնվելու։

45. Գրաբարում կա կրավորականի համար նաև բաղադրյալ խոնարհում, որ գործ է ածվում ավելի հասարակ բայերի և հասարակ ժամանակների համար։ Բաղադրյալ կրավորականը կազմվում է անցյալ դերբայով, որ անփոփոխ է մնում, և լինիմ բայով, որ խոնարհվում է։ Օրինակ՝ մոռացեալ լինիմ, մոռացեալ լինիս, մոռացեալ լինի ևլն. մոռացեալ լինէի, մոռացեալ եղէ ևլն. որ նշանակում են՝ մոռացվում եմ, մոռացվում ես, մոռացվում է ևլն. մոռացվում էի, մոռացվեցի ևլն։

Գիտեմ բայը՝ միայն բաղադրյալ ձևով կրավորական ունի՝ գիտացեալ լինել։

46. *Բաղադրյալ կրավորական խոնարհումը, որ հատուկ է և ուրիշ լեզուների, միջին դարերում հետզհետե վերացվում է, որովհետև* **լինիմ** *բայով բաղադրյալ ձևը՝ մեռացեալ լինել՝ միայն կրավորական իմաստ չունի, այլ նույնիսկ հին գրաբարում գործ է ածվում նաև ներգործական իմաստով իբրև մեռացած լինել. ուստի* **մեռացեալ լինիմ** *նշանակում է թե՛ մեռացվում եմ և թե մեռացած եմ լինում, մեռացած լինիմ, մեռացած կլինիմ։ Այս երկդիմության պատճառով հասարակ ժամանակների համար, հավանորեն բարբառներից օգտվելով, գործածության մեջ են մտցնում կրավորական խոնարհումներ, որ հատուկ չեն դասական գրաբարին։ Օրինակ՝ բանամ, բանիմ. թանամ, թանիմ. բառնամ, բառնիմ. ըուանամ, ըուանիմ. մոռանամ, մոռանիմ. ստանամ, ստացանիմ. տամ, տուիմ. լնում, լնանիմ, լնիմ. ընթեռնում, ընթերցանիմ. արգելում, արգելանիմ ևլն։*

## ԱՆԿԱՆՈՆ ԲԱՅԵՐ

47. *Բոլոր անկանոն բայերի ներկայի բնի ժամանակները կանոնավորապես այս կամ այն լծորդի ձևով են խոնարհվում. անկանոն են միայն կատարյալի բնի ժամանակները։ Անկանոն բայերը բաժանվում են մի քանի խմբի։ Ներքևում դրված են այդ բայերի ժամանակների համար մեծ մասամբ մեկ կամ մի քանի դեմքեր միայն. մյուս ձևերը դրանցով գտնելը հեշտ է։*

48. **Առաջին խումբ:** *Խոնարհվում են ինչպես չիմ-նում վերջացած բայերը։*

**Մեղանչեմ**, *մեղայ, մեղայց (մեղիցես, մեղիցէ ևլն.). մեղի՛ր, մեղիջի՛ր, մեղուցեալ։—Խոնարհվում է երբեմն և մեղանչեցի, մեղանչեցից ևլն. ձևով։*

**Ճանաչեմ**, *ծանեայ, ծանեայց (ծանիցես, ծանիցէ ևլն), ծանի՛ր, ծանիջի՛ր, ծանուցեալ։*

*Անկանոնությունը միայն ճ-ի ծ փոխվելու մեջ է։ Պատճառականն է* **ծանուցանեմ**, *որի կրավորական սահմ. անց. կատարյալն ու ստոր. երկրորդ ապառնին՝ ծանուցայ, ծանուցար ևլն., ծանուցայց ևլն., գործ են ածվում նաև կրավորական* **ճանաչիմ** *բայի իմաստով։ Բայց կան նաև ծանեայց, ծանիցիս, ծանիցի, ծանիցուք, ծանիջիք, ծանիցին ձևերը կրավորական իմաստով։*

**Սփածանիմ, պրծանիմ, զառածիմ-զառածանիմ, ծիւրիմ-ծիւրանիմ** *կանոնավոր՝ սփածայ, պրծայ, զառածայ, ծիւրեցայ ձևերի հետ ունին նաև՝ սփածեայ, պրծեայ, զառածեայ, ծիւրեայ։*

**Անկանիմ** *կանոնավոր ձևի հետ ունի ստոր.* **ապառնի Բ** *նաև՝ անկեայց. իսկ հոգն. հրամ. միայն՝ անկերո՛ւք։*

**Ագանիմ** *կանոնավոր ձևի հետ ունի հոգն.* **հրամ.** *նաև՝ ագերո՛ւք։* **Անց. դերբ.**, *ագեալ ձևի հետ և ագուցեալ։*

Յանգանեմ *խոնարհվում է ամբողջապես խառն եայ խոնարհման ձևով՝ յանցեայ, յանցեայց (յանցիցես ևն.), յանցի՛ր, յանցերո՛ւք, յանցիջի՛ր, յանցո ցեալ։*

Զանգանեմ, զառանցանեմ, ներկանեմ *կանոնավոր զանցի, զառանցի, ևն. ձևերի հետ ունին նաև զանցեայ, զանցեար ևն, զառանցեայ ևն, ներկեաւ։*

Յառնեմ (յարնչիմ) *խոնարհվում է ամբողջապես խառն եայ խոնարհման ձևով՝ յարեայ, յարեայց (յարիցէ ևն.), յարիջի՛ր, յարուցեալ։ Հրամ. կանոնավոր յարի՛ր, յարեա՛յք, յարերո՛ւք ձևերի հետ ունի և արի՛, արի՛ք։*

Յառում *խոնարհվում է կրավորաձև՝ յառայ, յառայց, յառի՛ր, ունի նաև՝ յառեայ, յառեայց կամ յառիցեմ, յառուցեալ ձևերը։ Կան և* յառեմ. *կրավոր.* յառիմ *բայերը, որ կանոնավոր են։*

Երդնում, *երդուայ, երդուար ևն. երդուայց կամ երդուիցեմ (երդուիցիմ), երդուիցես, երդուիցէ ևն։ Երդուի՛ր, երդուարո՛ւք. երդուիջի՛ր, երդուեալ։ Կա և* երդմնեմ *բայը, որից պատճառական՝ երդմնեցուցանեմ։*

Քաղցնում, *անց. դերբայ՝ քաղցեալ։*

**49. Երկրորդ խումբ։** *Խոնարհվում են ինչպես՝* անեմ, անիմ *կամ* սոսկ ում *վերջացած բայերը։*

Հանեմ, *հանի, հա՛ն։— Կա կրավորական* ճանանիմ *բայը։ Իսկ* ճառնում (ճենում, ճինում=*հինել) ունի հասարակ իմաստով անց. կատ. հանայ, հինայ ևն. Հրամ. հանի՛ր։*

Ածեմ, *ածի, ա՛ծ։— Այս բայի* ածանեմ *ձևից կազմվում են՝* տարածանեմ—տարածեմ. *անց. կատ. տարածեցի ևն. զառածանեմ, զառածեմ. անց. կատ. զառածի, ստոր. ապառնի Բ զառածից. հրամ. զառածեա՛։*

Բերեմ, *բերի, բե՛ր։—Այսպես խոնարհվում է և* ճամբերեմ, *համբերի, համբերեր, համբեր ևն,—որ սակայն ունի կանոնավոր ձևեր ևս՝ համբերեցի, համբերեցեր ևն. համբերեսցէ, համբերեա՛ ևն։*

Հեղուսեմ, *հեղուսի, հեղոյս։*

Նստիմ, *նստայ, նստար, նստաւ ևն, նստայց, նստցիս, նստցի ևն. նի՛ստ, նստարո՛ւք, նստեալ։ Այս բայից կազմված կա՝* զնստանիմ—զնստիմ *բայը. անց. կատ. զնստայ։*

Զգածիմ—զգածնում, հագածիմ *ունին՝* զգածայ, *զգածի՛ր, զգածեալ. հագածայ ևն։*

Դիպիմ, *կանոնավոր ձևերի հետ անց. կատ. ունի և* դիպայ *ձևը.*

Առնում, *առի, ա՛ռ. ենթ. դերբ. առող։*

Կալում, կայնում. *կանոնավոր կալի, կալեր, կալ կամ եկալ ևն. ձևերի հետ ունի և հետևյալ ձևերը, որ ավելի գործածական են՝ կալայ, կալար, կալաւ. կալաք, կալայք կամ կալարուք, կալան։ Կալայց, կալցիս, կալցի. կալցուք, կալջիք, կալցին (այլ և կալցես, կալցեն)։ Հրամ.*

կա՛լ կամ կա՛, կալէ՛ք կամ կալա՛յք, կալարո՛ւք։ Անց. գերբ. կալեալ։— Այսպես խոնարհվում են և ընկալում, ընկալնում բայերը. անց. կատ. ընկալայ ևլն։ Ստոր. ապ. Բ ընկալայց ևլն. հրամ. ընկա՛լ, ընկալա՛յք կամ ընկալարո՛ւք։

Հեղձնում, հեղձայ։

Ջեռնում, ջեռայ։

Կլանեմ–կլնում. կանոնավոր անց. կատ. կլի, կլեր, կուլ կամ եկուլ ևլն. ձևերի հետ ունի և կլայ, կլար, կլաւ ևլն։ Ստոր. ապ. Բ կլայց, կլցիս, կլցի ևլն. ձևերը, որ սակայն ավելի կրավորական իմաստով են գործածվում։— Այսպես խոնարհվում է և ընկլնում.—ընկլի, ընկլից, ընկլցես, ընկլցէ կամ ընկլայ, ընկլայց ևլն։ Այս բայի ձևերի տեղ գործ են ածվում ավելի պատճառական ընկլուզանեմ բայի ձևերը՝ ընկլուզի, ընկլուզից, ընկլո՛ ևլն։

Հարկանեմ, ճարում ունի միայն առանց կ բաղաձայնի՝ հարի, հարեր, հար կամ եհար ևլն. հարից, հարցես ևլն. հա՛ր, հարէ՛ք, հարեալ։

**50. Երրորդ խումբ։** Խոնարհվում են ինչպես սոսկ ամ վերջացած բայերը։

Ասեմ, ասացի, ասա՛. ասացից, ասասցես ևլն։

Գիտեմ, գիտացի, հրամ. գիտեա՛։

Կարեմ (=կարողանալ), կարացի, կարացեալ։

Մարթեմ, մարթացի, մարթացեալ։ Մարթեմ բայն ունի և մարթանամ ձևր, որից անց. կատ. մարթացայ ևլն։

Մերկեմ, մերկացի, մերկացեր, մերկաց կամ մերկեաց ևլն։ Հրամ. մերկեա՛ (կրավորական մերկեա՛ց)։ Մերկեմ բայն ունի և մերկանամ ձևը, որ ունի՝ մերկացայ, մերկացայց, մերկացի՛ր, մերկացարո՛ւք։

**51. Չորրորդ խումբ։** Վերջանում են սոսկ ամ ձևով, բայց կատարյալի բնի ժամանակներից մի քանիսը խոնարհվում են կրավորաձև, իբրև թե վերջնային անամ ձևով։ Ներքևում առնված են միայն անկանոն կազմության ժամանակները. չհիշվածները կանոնավոր են։

Յուսամ, յուսացայ, յուսացար, յուսացաւ ևլն. յուսացայց, յուսասցիս ևլն։ Հրամ. հոգն. յուսացարո՛ւք։

Լողամ, լողացայ։

Ջանամ, գթամ, սահմ. անց. կատ. կանոնավոր ջանացի, գթացի. ևլն. ձևերի հետ ունին և ջանացայ, գթացայ ևլն. ապ. Բ ջանացայց, գթացայց ևլն։ Հրմ. կանոնավոր ջանա՛, գթա՛ ձևի հետ և ջանացի՛ր, գթացի՛ր. հոգն. ջանացարո՛ւք, գթացարո՛ւք։ Ստոր. ապառնի Ա նաև գթայցիս։

Դողամ, դողացի ևլն. կանոնավոր ձևի հետ և դողացայ ևլն։ Հրամ. հոգն. դողացարո՛ւք։

Ծփամ, դլամ, գոռամ, խանդամ, ագամ, սուրամ, ջանամ, ռոհամ,

եռամ, գեռամ, սպառնամ, ցնծամ, զգամ *անց. կատ. ունին և ներգոր-ծաձև և կրավորաձև։*

Արսամ, ողբամ, ճոգամ, խոկամ *ներգործական իմաստով խո-նարհվում են թե՛ ներգործաձև և թե կրավորաձև։*

Ամ. անամ *վերջացած կրկնաձև բայերի (§ 25. 4) կատարյալի բնի ժամանակները երբեմն թե՛ ներգործաձև և թե՛ կրավորաձև են լինում, երբեմն էլ ժամանակներից մեկը կամ մյուսը միայն այս կամ այն ձե-վով են լինում. օրինակ՝* ցանկամ, ցանկանամ *ունի անց. կատ. ցան-կացայ, ստոր. ապ. Բ ցանկացայց, հրամ. ցանկա՛ կամ ցանկացի՛ր։ Նույն ձևով՝* փութամ, փութանամ, *փութացայ, փութացայց, փութա՛ կամ փութացի՛ր.* սոսկամ, սոսկանամ, *սոսկացայ, սոսկա՛ կամ սոս-կացի՛ր.* տենչամ, տենչանամ, *տենչացայ, տենչա՛ կամ տենչացի՛ր։ Իսկ* զղջամ *լինում է՝ զղջացի, զղջա՛,* զղջանամ՝ *զղջացայ, զղջացի՛ր ևլն։*

**52. Հինգերորդ խումբ։** *Խոնարհվում են ինչպես սոսկ* ամ, եմ *վեր-ջացած բայերը։*

Լուանամ, *լուացայ, լուացար ևլն. լուացայց, լուասցիս ևլն. ձևե-րի հետ ունին նաև լուացի, լուացեր, լուաց ևլն. լուացից, լուասցես ևլն։ Հրամ. լուա՛, լուացէ՛ք։*

Մոռանամ, ընթանամ, իմանամ *հրամ. ունի կանոնավոր մոռացի՛ր, ընթացի՛ր, իմացի՛ր ձևերի հետ և մոռա՛ ընթա՛ կամ ընթա՛ց, իմա՛ կամ իմա՛ց։*

Ընկենում, *ընկեցի, ընկեցեր, ընկեաց կամ ընկէց (ընկեց), ընկե-ցաք, ընկեցիք, ընկեցին. ընկեցից. ընկեսցես, ընկեսցէ ևլն։ Հրամ. ընկեա՛ կամ ընկեա՛ց, ընկեցէ՛ք, ընկեսջի՛ր։ Անց. դերբ. ընկեցեալ։*

**53. Վեցերորդ խումբ։** *Կատարյալի բնի մեջ ունին ց կամ ձ բա-ղաձայնը, որ պահվում է ապառնի ժամանակների մեջ ց, ջ տառերից առաջ և հրամայականի մեջ։*

Բանամ, թանամ, *բացի, բացեր, բաց կամ եբաց, բացաք, բացիք. բացին։ Ստոր. բացից, բասցես, բասցէ, բասցուք, բասջիք, բասցեն։ Հրամ. բա՛ց. բացէ՛ք, բասջի՛ր. բացեալ։ Նույնպես՝ թացի. թացից, թասցես, թասցէ ևլն. թա՛ց, թացէ՛ք, թացեալ։*

Կամ, *կացի, կացեր, կաց կամ եկաց, կացաք, կացիք, կացին։ Կա-ցից, կասցես, կասցէ, կասցուք, կասջիք, կասցեն։ Կա՛ց, կացէ՛ք, կաս-ջի՛ր, կացեալ։*

Կեամ, *կեցի, կեցեր, կեաց, կեցաք, կեցիք, կեցին։ Կեցից, կեց-ցես, կեցցէ, կեցցէք, կեցցուք, կեցջիք, կեցցեն։ Կեա՛ց, կեցէ՛ք, կեց-ջի՛ր, կեցեալ։ Ստոր. ապառնի Ա կեայցեմ կամ կեցեմ, կեայցես, կեայցէ ևլն։*

Լամ. *լացի, լացեր, լաց ևլն։ Լացից, լասցես, լասցէ ևլն։ Լա՛ց, լացէ՛ք, լասջի՛ր, լացեալ։*

Ընթեռնում, *ընթերցայ, ընթերցար, ընթերցաւ ևլն։ Ընթերցայց,*

ընթերցցիս (այլև ընթերցցես), ընթերցցի ևլն։ Ընթերցի՛ր, ընթերցեալ, ընթերցող։

Յենում, յեցայ, յեցար, յեցաւ ևլն. յեցայց, յեցցիս, յեցցի ևլն. յեցի՛ր, յեցեալ։

Զգենում, զգեցայ, զգեցար, զգեցաւ ևլն. զգեցայց, զգեցցիս, զգեցցի ևլն. զգեցի՛ր, զգեցեալ։

Լնում. լցի, լցեր, լից կամ ելից. լցաք, լցիք, լցին։ Լցից, լցցես, լցցէ ևլն. Հրամ. լի՛ց, լցէ՛ք, լցջի՛ր. լցող։

Խնում, խցի, խցեր, խից կամ եխից ևլն. խցից, խցցես, խցցէ ևլն։ Խի՛ց, խցէ՛ք. խցեալ։

Բառնամ, բարձի, բարձեր, բարձ կամ եբարձ. բարձաք, բարձէք, բարձին։ Բարձից, բարձցես, բարձցէ ևլն։ Բա՛րձ, բարձէ՛ք, բարձջի՛ր. բարձեալ, բարձող։ Այսպես խոնարհվում է համբառնամ (բարձրացընել), համբարձի, համբարձից, համբա՛րձ ևլն։ Կրավորականը՝ համբարձայ, համբարձայց ևլն. նշանակում է բարձրանալ:

Դառնամ, դարձայ, դարձար, դարձաւ ևլն։ Դարձայց, դարձցիս դարձցի ևլն։ Դարձի՛ր կամ դա՛րձ, դարձեալ։

**54. Յոթներորդ խումբ:** Կատարյալի բնի մեջ ունին ր բաղաձայնը։

Առնեմ, բուն՝ արար: Անց. կատ. արարի, արարեր, արար, արարաք, արարիք, արարին։ Ստոր. ապ. Բ արարից, արասցես, արասցէ, արասցուք, արասջիք. արասցեն։ Հրամ. արա՛, արարէ՛ք, արասջի՛ր։ Անց. դերբ. արարեալ։ Ենթ. դերբ. արարող։ Կրավորականը կանոնավոր կազմություն ունի՝ արարայ, արարար ևլն. արարայց, արասցիս, արասցի ևլն։ Հրամ. չունի։

Դնեմ, բուն՝ դիր: Անց. կատ. եդի, եդիր (եդեր), եդ. եդաք, եդիք (եդէք), եդին։ Ստոր. ապ. Բ եդից (դիցեմ), դիցես, դիցէ. դիցուք (դիցեմք), դիջիք (դիցէք), դիցեն։ Հրամ. դի՛ր, դի՛ք, դիջի՛ր։ Անց. դերբ. եդեալ։ Ենթ. դերբ. դնող, եդող։ Կրավորականը՝ եդայ, եդար, եդաւ, եդաք, եդայք, եդան։ Եդայց, դիցիս, դիցի, դիցուք, դիջիք, դիցին։ Հրամ. եզ. չունի. հոգն. եդարո՛ւք։

Տանիմ, բուն՝ տար: Անց. կատ. տարայ, տարար, տարաւ. տարաք. տարայք, տարան։ Ստոր. ապ. Բ տարայց, տարցիս (տարցես), տարցի (տարցէ). տարցուք, տարջիք, տարցին (տարցեն)։ Հրամ. տա՛ր, տարա՛յք։ Անց. դերբ. տարեալ։

Լսեմ, բուն՝ լու, լուր: Անց. կատ. լուայ, լուար, լուաւ. լուաք, լուայք, լուան։ Ստոր. ապ. Բ լուայց, լուիցես, լուիցէ. լուիցուք, լուիջիք, լուիցեն. Հրամ. լո՛ւր, լուարո՛ւք, լուիջի՛ր։ Անց. դերբ. լուեալ։ Կրավորական ունի միայն՝ լուիցիս, լուիցի, լուիցին ձևերը. մյուս ձևերի համար գործ է ածվում լսելի լինիմ:—Լսեմ բայի կանոնավոր ձևերը՝ լսեցի, լսեցեր ևլն. լսեցից, լսեսցես ևլն. լսեա՛, լսեցէք, և պատճառական՝ լսեցուցանեմ՝ քիչ գործածական են։

Տամ բուն՝ տու, տուր: Անց. կատ. ետու, ետուր, ետ. տուաք, ետուք,

*ետուն։ Ստոր. ապ. Բ տաց, տացես, տացէ. տացուք, տաչիք, տացեն։ Հրամ. տո՛ւր, տո՛ւք, տաչի՛ր։ Անց. դերբ. տուեալ։ Ենթ. դերբ. տուող։ Կրավոր. տուայ, տուար, տուաւ. տուաք, տուայք, տուան։ Տուայց կամ տացիմ, տացիս, տացի. տացուք, տաչիք, տացին։ Մյուս ձևերի համար գործ է ածվում* տանել լինիմ։

**55. Ութերորդ խումբ։** *Կատարյալի բունն ուրիշ արմատից է առնըվում. ինչպես երկու պակասավոր բայեր իրար լրացնում են։*

Ուտեմ, *բուն՝* կեր։ *Անց. կատ. կերայ, կերար, կերաւ. կերաք, կերայք, կերան։ Կա և քիչ գործածական՝ կերի, կերեր; եկեր. կերաք, կերիք, կերին։ Ստոր. ապ. Բ կերայց (կերիցեմ), կերիցես, կերիցէ. կերիցուք, կերիչիք, կերիցեն։ Հրամ. կե՛ր, կերա՛յք (կերէ՛ք), կերիչի՛ր. Անց. դերբ. կերեալ։ Կրավորականը գործ է ածվում բաղադրյալ ձևով՝* կերեալ լինել։ *Պատճառական իմաստով գործ է ածվում* կերակրեմ= *ուտեցնել, կերցնել։*

Գամ, *բուն՝* եկ։ *Անց. կատ. եկի, եկիր, եկն. եկաք, եկիք (եկէք), եկին։ Ստոր. ապ. Բ եկից. եկեսցես, եկեսցէ. եկեսցուք, եկեսջիք, եկեսցեն։ Հրամ. ե՛կ, եկա՛յք, եկեսջի՛ր։ Անց. դերբ. եկեալ։ Անորոշ դերբ. գալ, երբեմն՝ գոլ։*

Երթամ, *բուն՝* երթ, չոգ *(չոք)։ Անց. կատ. չոգայ, չոգար, չոգաւ. չոգաք, չոգայք, չոգան։ Ստոր. ապ. Բ երթայց (երթիցեմ), երթիցես, երթիցէ. երթիցուք, երթիջիք, երթիցեն։ Հրամ. ե՛րթ (կամ չո՛գ), երթա՛յք, երթիջի՛ր։ Անց. դերբ. երթեալ։*

Ըմպեմ, *բուն՝* արբ։ *Անց. կատ. արբի, արբեր, արբ կամ էարբ. արբաք, արբիք (արբէք), արբին։ Ստոր. ապ. Բ արբից, արբցես, արբցէ. արբցուք, արբջիք, արբցեն։ Հրամ. ա՛րբ, արբէ՛ք, արբջի՛ր։ Անց. դերբ. արբեալ, կրավորականը կանոնավոր՝ արբայ ևն. արբայց, արբցիս ևն։ Հրամ. հոգն. արբարո՛ւք, եզ. չունի. գործ է ածվում բաղադրյալ ձևը՝ արբեալ լե՛ր։—*Արբ *արմատից կազմված է* արբիմ *կամ* արբենամ *կանոնավոր բայը, որ նշանակում է հարբել, արբենալ։—* Ըմպեմ *բայի կատարյալի բնի ձևերն են կան՝ ըմպեցի, ըմցեցից ևն. ըմպեա՛, ըմպեցէ՛ք, ըմպեալ, որոնք սակայն գործածական չեն։*

## *ՊԱԿԱՍԱՎՈՐ ԲԱՅԵՐ*

**56.** Ունիմ *ունի միայն ներկայի բնի ժամանակները։ Պակասը լըրանում է սովորաբար* կալնում *ամբողջական բայով (§ 49) և ապա նայելով իմաստին՝ ըմբռնեմ, առնում, տիրեմ, իշխեմ, բռնեմ, բուռն հարկանեմ, պահեմ, արգելում, ինչպես և ստանամ, ժառանգեմ, բարձեալ բերեմ, կրեմ ևն. բայերով։ Նույն ձևով խոնարհվում է* ընդունիմ *բայը, որի պակասը լրանում է* ընկալնում *ամբողջական բայով (§ 49)։*

Պարտիմ, *Սահմ. ներկ. պարտիմ, պարտիս, պարտի. պարտիմք, պարտիք, պարտին։ Անց. անկ. պարտէի, պարտէիր, պարտէր. պար-*

տէաք, պարտէիք, պարտէին։ Ստոր. ապ. Ա պարտիցիմ, պարտիցիս, պարտիցի. պարտիցիմք, պարտիցիք, պարտիցին։ Անց. կատ. պարտեցայ, պարտեցաւ։ Ստոր. ապ. Բ պարտեցայց, պարտեսցի։ Անորոշ դերբ. պարտել։ Անց. դերբ. պարտեցեալ։—Կատարյալի բնի ժամանակները քիչ են պատահում։ Պակասը լրանում է՝ պարտ լինիմ, պարտական լինիմ, պարտաւոր լինիմ, պարտաւորիմ բայերով։ Չպիտի շըփոթել պարտեմ=յաղթեմ բայի հետ։

Պիտի, պիտէր, պիտիցի, պիտեցաւ, պիտեսցի, պիտեցեալ։ Պակասը լրանում է՝ պարտիմ, պիտոյ լինիմ բայերով։

Մարթի, մարթէր, մարթիցի։ Պակասը լրանում է՝ մարթէ, մարթանամ, մարթեմ բայերով։

Գոգցես, գոգցէ, գոգցուք, գոգջիք, գոգցեն։ Հրամ. գո՛գ, գոգէ՛ք։ Անորոշ դերբ. գոգել։ Պակասը լրանում է ասեմ բայով, որի հետ երբեմն և կրկնված գործ է ածվում. օրինակ՝ Ասացէք ցարքայ, գոգէ՛ք։ Ասիցեն և գոգցեն։

## ԵՄ, ԳՈՄ

57. Եմ, Սահմ. ներկ. եմ, ես, է, եմք, էք, են։ Անց. անկ. էի, էիր, էր, էաք, էիք, էին։ Հրամ. ե՛ր, է՛ք կամ երո՛ւք։ Ապառնի իցեմ, իցես, իցէ, իցեմք, իցէք, իցեն։ Անորոշ դերբ. ել։ Ապ. դերբ. ելոց։ Անց. դերբ. եալ։ Պակասը լրանում է լինիմ, եղանիմ, կամ, գոմ բայերի ձևերով (§§ 53, 60)։ Հրամայականը գործ է ածվում միայն ողջ բառի հետ՝ ողջ ե՛ր, ողջ է՛ք, ողջ երո՛ւք=ողջ լե՛ր, ողջ լերո՛ւք։ Դերբայներն անգործածական են։

Չիք=ոչ գոյ. ունի միայն այս ձևը, ինչպես և սրա դրականը՝ իք (=գոյ, կայ, է), որ քիչ է պատահում։

Գոմ, սահմ. ներկ. գոմ, գոս, գոյ. գոմք, գոյք, գոն։ Անց. անկ. գոյի, գոյիր, գոյր. գոյաք, գոյիք, գոյին։ Ստոր. ապ. Ա (գուցեմ, գուցես), գուցէ, (գուցեմք, գուցէք), գուցեն։ Անորոշ դերբ. գոլ։ Պակասը լրանում է եղանիմ, լինիմ, բայերով, որոնք նույնպես պակասավոր են, և եմ, կամ բայերով (§§ 60. 53)։

58. Եմ բայը, սովորաբար շեշտված, նշանակում է նաև գոմ, կամ. ուստի և սահմ. ներկան և անց. անկատարն այս դեպքում աշխարհաբար թարգմանվում են կամ բայով (մյուս ժամանակները լինիմ բայով)։ Օրինակ՝ Եւ է՛ր անդ երամակ մի։ Եւ է՛ր ի տեղւոջն յայնմիկ պարտէզ։ Եթէ գխոտն ի վայրի, որ այսօր է՛ և վաղիւն ի հնոց արկանի... Այր մի է՛ր (=կար) յԵրուսաղէմ, որոյ անուն էր (=էր) Սիմէովն։ Ոչ ոք է՛ յազգի քում (=ոչ ոք չկա)։ Բազում այրիք էին (=կային) յաւուրս Եղիայի։

Այս իմաստով գործ են ածվում՝ է ոք, են ոք=ոմն, ոմանք=աշխ. կա որ, կան որ, որը... որը. նույնպես՝ է զի, էր զի.=է երբեմն, էր երբեմն, է ուրեք, էր ուրեք=աշխ. կա որ, կա ժամանակ որ, կա տեղ որ,

կամ՝ երբեմն, մերթ։ Օրինակ՝ Իսկ որ յերկիրն բարի սերմանեցաւ, այն է՛ որ իբրև լսէ զբանն և ի միտ առնու, և տայ զպտուղ, է որ վաթսուն. և է որ երեսուն (=կա որ... կա որ... կամ որը... որը...)։ Կրակ... է զի (=երբեմն, մերթ) շիջանի, և է զի (=երբեմն, մերթ) աճեալ բորբոքի։ Է ուրեք (=տեղ կա, երբեմն), զի քաջապէս յաղթեցաք թշնամեացն, և է զի (=կա որ, երբեմն) նոքա մեզ յաղթեցին։ Պտղոց անբերութիւն եղեալ բազում ժամանակս, էր երբեմն վասն բազում անչափ թօնից անձրևաց, և էր երբեմն վասն խորշակի և խռովութեան։

**59.** Եմ, գոմ, կամ բայերի 3-րդ դեմքերը մի սեռական, երբեմն և տրական խնդրով նշանակում են ունենալ: Օրինակ՝ Են իմ անդ եղբարք հինգ (=Իմ հինգ եղբայր կա այնտեղ=ինձ հինգ եղբայր կա այնտեղ=Ես այնտեղ հինգ եղբայր ունիմ)։ Ոչ գոյր նոցա որդեակ (=Նրանց որդի չկար=Նրանք որդի չունեին)։ Չիք իմ այր: Ոչ գոյ մեր աւելի քան զհինգ նկանակ։ Ոյր եցեն երկու հանդերձք, տացէ զմին այնմ, ոյր ոչն գուցէ և ոյր կայցէ կերակուր՝ նոյնպէս արասցէ։ Ոյր գուցէ՝ տացի նմա և յաւելցի, և ոյր ոչն գուցէ՝ և զոր ունիցին, բարձցի ի նմանէ։ Ամենեքեան որոց էին հիւանդք ի պէս պէս ցաւս, բերէին զնոսա առ նա։ Երկու պարտապանք էին ուրումն փոխատուի։ Աղուեսուց որջք գոն և թռչնոց երկնից բոյնք։ Եթէ չիցէ՞ ինձ իշխանութիւն յիմս առնել զինչ և կամիմ։ Զի՞ կա մեր և քո, զի եկիր տանջել զմեզ (=ի՞նչ ունինք մենք ու դու, որ... կամ՝ ի՞նչ ունիս մեզ հետ, ի՞նչ կա մեր և քո մեջ)։

Երբ սեռական (կամ տրական) խնդիրն է շեշտվում և դրվում է. Են, էր, էին բայից առաջ, եմ բայն ստանում է հաճախ պատկանել, վերաբերել, բայերի իմաստը և համապատասխան է աշխարհաբարի նույն դարձվածին, միայն աշխարհաբարում սեռականը (ն) ը հոդն է ընդունում, իսկ գրաբարում անհոդ է մնում։ Օրինակ՝ Որ ինչ իմ է, ամենայն քո է. և որ ինչ քո է՝ այն իմ է (=Ամեն ինչ որ իմն է՝ քոնն է. և ինչ որ քոնն է, այն իմն է)։ Եւ նա ի մի նաւուցն որ էր Սիմովնի (=որ Սիմոնինն էր)։

## ԼԻՆԻՄ, ԵՂԱՆԻՄ

**60.** Լինիմ, լինիս, լինի ևլն. լինէի, լինէիր, լինէր ևլն. լինիցիմ, լինիցիս ևլն. անց. կատ. չունի։ Ստոր. ապառնի Բ լիցիմ, լիցիս, լիցի, լիցուք կամ լիցիմք, լիջիք կամ լիցիք լիցին։ Հրամ. լե՛ր, լերո՛ւք, լինիջի՛ր, լիջի՛ր, լիջի՛ք։ Անց. դերբ. լեալ կամ լինեալ։

Եղանիմ, եղանիս ևլն. եղանէի ևլն. եղանիցի ևլն։ Անց. կատ. եղէ կամ եղեայ, եղեր, եղև. եղաք կամ եղեաք, եղէք կամ եղեայք, եղեն։ Ստոր. ապ. Բ եղէց կամ եղիցիմ, եղիցուք կամ եղիցիմք, եղիջիք, եղիցին կամ եղիցեն։ Հրամ. Ներկա եզ. չունի. հոգն. եղերո՛ւք։ Ապառնի Բ եղիջի՛ք։ Անց. դերբ. եղեալ։

Եղանիմ, լինիմ *բայերի նշանակությամբ գործ են ածվում նաև* առնի, գործի *կրավորականները։*

## *ԲԱՂԱԴՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿՆԵՐ*

**61.** *Օժանդակ բայերն են՝* 1. եմ, *որի սահմ. ներկա, անց. անկատար և ապառնի ժամանակների վրա դրվում են անցյալ և ապառնի դերբայները.* 2. լինիմ, *որի դիմավոր ձևերի վրա դրվում է միայն անցյալ դերբայը։ Անց. կատարյալի համար առնվում է* եղանիմ *բայը։*

**62.** *Անցողական բայերի դերբայները թե ներգործական և թե կրավորական իմաստ ունին, ուստի* եմ, լինիմ *բայերով բաղադրված ժամանակներն էլ կարող են երկու իմաստով էլ առնվել. օրինակ՝* տեսեալ է *նշանակում է թե* տեսել է *և թե* տեսնվել է: *Թողեալ լիցին (=ներվի) մեղք քո։ Ի բարւոյ արարչէ արարեալ է (=ստեղծված է)։ Զաշխարհն յինքեանս գրաւեալ էին (=գրավել էին)։*

Եմ *բայի ներկա և անցյալ ժամանակների փոխանակ անցյալ դերբայի հետ՝ չեզոք և կրավորական իմաստով գործածված ժամանակ՝ կարող են դրվել* կամ *բայի ձևերը, օրինակ՝ հասեալ կամ, դրեալ կայ, պատրաստեալ կայ, եկեալ կայ, եդեալ կայք, ծածկեալ կան, հաստատեալ կան, դիզեալ կայ։*

**63.** *Անցյալի դերբայի հետ* եմ *և* լինիմ *բայերի բոլոր դեմքերի փոխանակ կարող է գործածվել այդ բայերի եզակի երրորդ դեմքը. այդ ժամանակ ուղղական հոլովով ենթական փոխվում է սեռական խնդրի, և կազմվում են քերականորեն անենթակա խոսքեր. օրինակ՝* տեսեալ եմ, տեսեալ ես, տեսեալք է, տեսեալ եմք, տեսեալ էք, տեսեալ են, տեսեալ է արքայ, *ձևերի տեղ կարող է ասվել՝* տեսեալ է իմ, տեսեալ է քո, տեսեալ է նորա *(կամ* իւր), տեսեալ է մեր, տեսեալ է ձեր, տեսեալ է նոցա, տեսեալ է արքայի: *Զպայն իսկ իմ՝ աչօք տեսեալ է։ Ո՞չ իցէ ընթերցեալ ձեր։ Զոր շինեալ էր առաջնոյն մեծին Գրիգորի։*

*Նույնպես* ածեալ լինէի, ածեալ լինէիր, ածեալ լինէր ևլն. *ձևերի փոխանակ կարող է ասվել,* ածեալ լինէր իմ, ածեալ լինէր քո, ածեալ լինէր նորա:

*Անցողական բայերի այս կազմության բաղադրյալ ժամանակները կրավորական իմաստ չեն կարող ունենալ. օրինակ՝* տեսեալ էր քո, ածեալ լինէր քո *կը նշանակե միայն՝* դու տեսել էիր, դու բերած կըլինեիր *կամ* դու բերած լինեիր:

Ծան.—*Այս բաղադրյալ ժամանակների կազմությունը ծագում է* եմ *բայի 3-րդ դեմքի սեռական խնդրով գործածությունից* ունենալ *բայի իմաստով.* տեսեալ է իմ, տեսեալ է քո *ևլն. բառացի նշանակում է իմ տեսած կա, քո տեսած կա=*ես տեսած ունիմ, դու տեսած ունիս, *ինչպես և երբեմն գործ է ածվում աշխարհաբարում փոխանակ* ես տեսել եմ, դու տեսել ես *ևլն. ձևերի (տե՛ս § 59)։*

**64. Եմ** *բայով բաղադրված ժամանակներն են.*

### Անցյալ դերբայով

#### Ներկա

| | |
|---|---|
| *գրեալ եմ* | *գրեալ է իմ* |
| *գրեալ ես* | *գրեալ է քո* |
| *գրեալ է* | *գրեալ է նորա (իւր)* |
| *գրեալ եմք* | *գրեալ է մեր* |
| *գրեալ էք* | *գրեալ է ձեր* |
| *գրեալ են* | *գրեալ է նոցա (իւրեանց)* |

#### Անցյալ անկատար

| | |
|---|---|
| *գրեալ էի* | *գրեալ էր իմ* |
| *գրեալ էիր* | *գրեալ էր քո* |
| *գրեալ էր* | *գրեալ էր նորա* |
| *գրեալ էաք* | *գրեալ էր մեր* |
| *գրեալ էիք* | *գրեալ էր ձեր* |
| *գրեալ էին* | *գրեալ էր նոցա* |

#### Ապառնի

| | |
|---|---|
| *գրեալ իցեմ* | *գրեալ իցէ իմ* |
| *գրեալ իցես* | *գրեալ իցէ քո* |
| *գրեալ իցէ* | *գրեալ իցէ նորա* |
| *գրեալ իցեմք* | *գրեալ իցէ մեր* |
| *գրեալ իցէք* | *գրեալ իցէ ձեր* |
| *գրեալ իցեն* | *գրեալ իցէ նոցա* |

### Ապառնի դերբայով

| Ներկա | Անցյալ անկատար | Ապառնի |
|---|---|---|
| *գրելոց եմ* | *գրելոց էի* | *գրելոց իցեմ* |
| *գրելոց ես* | *գրելոց էիր* | *գրելոց իցես* |
| *գրելոց է* | *գրելոց էր* | *գրելոց իցէ* |
| *գրելոց եմք* | *գրելոց էաք* | *գրելոց իցեմք* |
| *գրելոց էք* | *գրելոց էիք* | *գրելոց իցէք* |
| *գրելոց են* | *գրելոց էին* | *գրելոց իցեն* |

**65. Լինիմ** *բայով բաղադրյալ ձևերն ունին մի քանի տեսակ իմաստ.* գրեալ լինիմ *նշանակում է* գրվում եմ, *և ապա՝* գրած եմ լինում. գրված եմ լինում, *գրած լինիմ, գրված լինիմ և այլն: Սեռական խնդրով* գրեալ լինի իմ *նշանակում է միայն* գրած եմ լինում *(§ 63):*

### Սահմանական

#### Ներկա

| | |
|---|---|
| գրեալ լինիմ | գրեալ լինի իմ |
| գրեալ լինիս | գրեալ լինի քո |
| գրեալ լինի | գրեալ լինի նորա (իւր) |
| գրեալ լինիմք | գրեալ լինի մեր |
| գրեալ լինիք | գրեալ լինի ձեր |
| գրեալ լինին | գրեալ լինի նոցա (իւրեանց) |

#### Անցյալ անկատար

| | |
|---|---|
| գրեալ լինէի | գրեալ լինէր իմ |
| գրեալ լինէիր | գրեալ լինէր քո |
| գրեալ լինէր | գրեալ լինէր նորա (իւր) |
| գրեալ լինէաք | գրեալ լինէր մեր |
| գրեալ լինէիք | գրեալ լինէր ձեր |
| գրեալ լինէին | գրեալ լինէր նոցա (իւրեանց) |

#### Ստոր. ապառնի

| | |
|---|---|
| գրեալ լինիցիմ, լիցիմ | գրեալ լիցի իմ |
| գրեալ լինիցիս, լիցիս | գրեալ լիցի քո |
| գրեալ լինիցի, լիցի | գրեալ լիցի նորա (իւր) |
| գրեալ լինիցիմք, լիցուք | գրեալ լիցի մեր |
| գրեալ լինիցիք, լիջիք | գրեալ լիցի ձեր |
| գրեալ լինիցին, լիցին | գրեալ լիցի նոցա (իւրեանց) |

| Անց. կատարյալ | Հրամայական |
|---|---|
| գրեալ եղէ | գրեալ լե՛ր |
| գրեալ եղեր | գրեալ լինիջի՛ր |
| գրեալ եղև | գրեալ լիջի՛ր |
| գրեալ եղաք | գրեալ լերո՛ւք (եղերո՛ւք) |
| գրեալ եղէք | գրեալ լինիջի՛ք |
| գրեալ եղեն | գրեալ լիջի՛ք |

## ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻ ԳՈՐԾԱԾՈՒԹՅՈՒՆԸ

**66.** Սահմ. անց. կատարյալ, հրամ. ներկա և արգելական ներկա ժամանակները նույն նշանակությունն ու գործածությունն ունեն, ինչ որ նույն ժամանակներն աշխարհաբարում. օրինակ՝ գնացի, գնա՛, մի՛ գնար=գնացի, գնա՛, մի՛ գնար։

**67.** Սահմ. ներկան և անց. անկատարը նշանակությամբ համապատասխան են աշխարհաբարի

1. Սահմ. ներկային և անկատար անցյալին. գնամ=գնում եմ. գնայի=գնում էի։

2. Ըղձական ապառնում (որ տեղին նայելով և ներկա է) և անցյալին. գնամ=գնամ. գնայի=գնայի։

3. Ենթադրական ապառնում (որ տեղին նայելով և ներկա է) և անցյալին. գնամ=կը գնամ. գնայի=կը գնայի։

Եմ, գոմ, կամ (=կամ իմաստով և ոչ կանգնել), ունիմ, գիտեմ բայերի սահմ. ներկան նշանակում է միայն եմ. կամ. ունիմ, գիտեմ, իսկ անցյալը՝ էի, գոյի, կայի, ունէի, գիտէի=էի, կայի, ունեի, գիտեի,—լինեի, ունենայի, գիտենայի,— կլինեի, կունենայի, կգիտենայի։ Օրինակներ՝

Մտէ՛ք ընդ նեղ դուռն. քանի՜ ընդարձակ է դուռնն և համարձակ ճանապարհն, որ տանի (=տանում է) ի կորուստ, և բազումք են (=են. կան), որ մտանեն (=մտնում են) ընդ նա։ Զի՞ տեսանես (=տեսնում ես) զշիւղ յական եղբօր քոյ և ի քում ական զգերանդ ոչ նշմարես (=չես նշմարում). կամ զիա՞րդ ասես (=ասում ես) ցեղբայր քո՝ թո՛ղ հանից զշիւղդ յականէ քումմէ, և ահա՛ւադիկ ի քում ականդ գերան կայ (=կա)։

Ասէր (=ասում էր) ի միտ իւրում, թէ միայն մերձենամ (=մոտենամ) ի հանդերձս նորա, փրկիմ (=կփրկվիմ)։ Յորժամ արգելուս և փակես (=արգելես և փակես) զամենեսան ի հեռաւոր օտարութեան, կատարին (=կկատարվի) խորհուրդք կամաց քոց։ Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն իւր՝ աւերի (=կ'ավերվի) և ամենայն քաղաք կամ տուն բաժանեալ յանձն իւր՝ ոչ կացցէ։ Ոչ արկանեն (=չեն ածիլ) գինի նոր ի տիկս հինս, ապա թէ ոչ՝ տիկքն պատառին (=կպատռվին) և գինին հեղու (=կթափվի). այլ արկանեն (=կ'ածեն) գինի նոր ի տիկս նորս, և երկոքին պահին (=կպահվին)։ Եթէ կամիս (=կամենաս), կարող ես զիս սրբել։ Եթէ թողումք (=թողնենք) զնա այնպէս, ամենեքին հաւատան (=կհավատան) ի նա, և գայցեն հռոմք և բառնայցեն զազգս մեր և զտեղի։ Գոյ (=կա) աստ այր մի ի դրան քում, զի իրքդ այդ նովաւ վճարին (=գլուխ կգա)։ Վաղվաղակի յղեմ (=կ'ուղարկեմ) զքեզ ուր կամիսն (=կամենում ես) գնալ։

Եթէ զիս գիտէիք (=գիտենայիք, ճանաչեիք), և զհայր իմ թերևս գիտէիք (=կգիտենայիք, կճանաչեիք)։ Եթէ գիտէիք (=գիտենայիք) զինչ է՝ (=է) զողորմութիւն կամիմ (=կամենում եմ) և ոչ զզոհ, ապա ոչ դատապարտէիք (=չէիք դատապարտիլ) զանպարտսն։ Եթէ գիտէիր դու ով է որ ասէդ (=ասում է) ցքեզ, թէ տո՛ւր ինձ ըմպել, դու արդեօք խնդրէիր (=կը խնդրեիր) ի նմանէ, և տայր (=կտար) քեզ ջուր կենդանի։ Թէ էր (=լիներ) հաւատացեալ թագաւորի առաջի, փութայի և ոչ յապաղէի (=կշտապեի և չէի հապաղիլ)։ Եթէ աստ լեալ էիր (=եղած լինեիր), եղբայրն իմ չէր մեռեալ (=մեռած չէր լինիլ)։ Եթէ ի Սոդոմ եղեալ էին (=եղած լինեին) զօրութիւնքն, որ ի քեզ եղեն,

ապաքէն կային (=կլինեին, մնացած կլինեին)։ Պարտ էր քեզ արկանել զարծաթդ իմ ի սեղանաւորս, և ես եկեալ տոկոսեօք պահանջէի (=կպահանջեի)։

**68.** Սահմ. անց. անկատարը հաճախ գործ է ածվում և իբրև պատմական ժամանակ, որի տեղ աշխարհաբարում բանում է սահմ. ներկան կամ անց. կատարյալը. օրինակ՝ Իբրև զայն լսէր (=լսեց կամ լսում է) Պարթևն, զերդումն ուխտին յիշէր (=հիշեց կամ հիշում է), որ ընդ Պարսից արքային ուխտեալ էր։ Նաև զխոստմունսն յիշէր զպարգևացն, և փ բուն աշխարհն փափագէր որ Պալհաւն կոչէր, և վատ խորհուրդ ի միտ արկանէր, առնոյր զթագաւորն մեկուսի նա և եղբայր իւր հարազատ՝ իբրու ի պատճառս ինչ զբօսանաց, իբրու խորհուրդ ինչ խորհելոյ ընդ նմա. և զսուսերն թերաքամեալս ունէին. յանկարծ յեղակարծումն ժամանակի զէնս վերացուցեալ՝ զթագաւորն դիաթաւալ կացուցեալ՝ յերկիր կործանէին (Ագաթանգեղոս)։ Եւ իբրև հանդէպ ճակատուն Երուանդայ ելին նշանք Արտաշիսի՝ Արգամայ առեալ զբազմութիւն հետևակացն՝ ի կողմն ելանէր, եւ Սմբատ հրամայէր զփողսն պղնձիս հնչեցուցանել. և յառաջեալ զճակատն իւր՝ իբրև զարծուի յերամս կաքաւուց խոյանայր: Իսկ նախարարքն Հայոց, որ յաջ և յահեակ թևսն էին, ի նա խառնեալ միանային: Եւ զօրքն վրաց... թէպէտ և յանդուգն յարձակմամբ յառաջեալ բախէին, արագապէս դառնային ի միւս կողմն փախուցեալ։ Եւ անդ էր տեսանել կոտորած անհնարին զղնդին Երուանդայ (Մ. Խորեն.)։

**69.** Ստոր. ապառնի Ա և ապառնի Բ ժամանակներից առաջինն անկատար, տևական բնավորություն ունի (աշխարհաբարի կատարվող կերպին, սահմ. ներկային համապատասխան), իսկ երկրորդը՝ կատարյալ, ոչ-տևական (աշխարհաբարի պարզ կերպին՝ անցյալ կատարյալին, ըղձական ներկային համապատասխան)։ Օրինակ՝ Յորժամ քաղաքք և գեւղք աւերեսցին (=ավերվեն), և անդ դեւք բնակիցեն (=բնակվելիս լինեն)... Բայց ապառնի ժամանակների այս տարբեր նշանակությունները հնագույն մատենագիրների մեջ անգամ արդեն շփոթված են, և դրանք հաճախ նույն նշանակությունն ու գործածությունն ունեն։

Այդ ժամանակները տեղին նայելով՝ համապատասխան են աշխարհաբարի 1. Սահմ. ապառնի, 2. Ըղձական ապառնի, 3. Ենթադրական ապառնի և 4. Հարկադրական ապառնի ժամանակներին. գնայցեմ, գնացից=գնալու եմ, գնամ, կգնամ, պիտի գնամ։ Սահմ. ապառնի ժամանակով է թարգմանվում և գրաբարի ապառնի դերբայով բաղադրված ներկա ձևը՝ գալոց է=գալու է, որ նույն իմաստն ունի, ինչ որ ստոր. ապառնին, ինչպես կարելի է տեսնել հետևյալ օրինակից՝ Որով դատաստանաւ դատէք՝ դատելոց էք (=դատվելու եք), և որով՝ չափով չափէք՝ չափեսցի (=չափվելու է) ձեզ։

Ուրիշ օրինակներ.

Չէ՛ ինչ ի ծածուկ, որ թէ ոչ **յայտնեսցի** (=չհայտնվի), և ոչ եղև ինչ գաղտնի, եթէ ոչ ի յայտ **գայցէ** (=երևան չգա, հայտնի չլինի)։ Յոր քաղաք **մտանիցէք** (=մտնեք) կամ գեօղ, **հարցանիցէք** (=կհարցընեք), թե ո՞ է ի նմա արժանի, և անդ **լինիջիք** (=կլինիք, կմնաք), մինչև **ելանիցէք** (=ելնեք) անտի։ Եւ իբրև **մտանիցէք** (=մտնեք) ի տունն, ողջոյն **տայջիք** (=կտաք) նմա և **ասասջիք** (=կ'ասեք)՝ ողջոյն տանս այսմիկ։ Եթէ **իցէ** (=լինի) տունն արժանի, **եկեսցէ** (=կգա) ողջոյնն ձեր ի վերայ նորա. ապա թէ ոչ **իցէ** (=չլինի) արժանի, ողջոյնն ձեր առ ձեզ **դարձցի** (=կդառնա)։ Երանի է ձեզ, յորժամ **նախատիցեն** (=նախատեն, կնախատեն) զձեզ և **հալածեսցեն** (=հալածեն, կհալածեն) և **ասիցեն** (=ասեն, կ'ասեն) զամենայն բան չար զձէնջ սուտ։

**Սիրեսցես** (=սիրես, կսիրես, պիտի սիրես) զընկեր քո իբրև զանձըն քո։ Որ **սպանանիցէ** (=սպանի), պարտական **լիցի** (=կլինի, պիտի լինի) դատաստանի։ Ոչ **թողցի** (=չպիտի թողնվի, չպիտի մնա) այդր քար ի քարի վերայ, որ ոչ **քակտեսցի** (=չքակտվի)։ Ասա՛ մեզ, ե՞րբ **լինիցի** (=ե՞րբ է լինելու, պիտի լինի) այդ և զի՞նչ նշան է, յորժամ կատարելոց իցէ այդ ամենայն։ **Յարիցէ** (=պիտի վեր կենա) ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ. և **Եղիցին** (=պիտի լինին) շարժմունք ի տեղիս տեղիս, սովք և սրածութիւնք։

**70.** Բուն ըղձական իմաստով, երբ բայը **դրական** է, գործածվում է միայն ստոր. ապառնի Բ օրինակ՝ Անցեալ տեսից (=անցնե՛մ, տեսնե՛մ). զտեսիլն զայն մեծ։ Եկայք երթիցուք (=եկեք երթանք)։ Հարցից ինչ զձեզ (=ձեզ մի բան հարցնեմ)։ Կերիցուք և ուրախ լիցուք (=ուտենք և ուրախանանք)։ Թող եկեսցէ դմա ուրախութիւն։

Բայց երբ բայը բացասական է, շատ սովորական է այս իմաստով, իբրև արգելական ապառնի, նաև առաջին ապառնին, հատկապես երբ խոսքը վերաբերում է ոչ թե մի անգամ, այլ հաճախ, սովորաբար կատարված գործողության, օրինակ՝ **Մի՛ լինիցիս** (=մի՛ լիցիս=չլինի՛ս) որպէս կեղծաւորքն։ **Մի՛** այսուհետև **հոգայցէք** (=հոգասջիք=չհոգա՛ք) վասն վաղուի։ Ի ճանապարհ հեթանոսաց **մի՛ երթայցէք** (=չերթա՛ք) և ի քաղաք Սամարացւոց **մի՛ մտանիցէք** (=չմտնե՛ք)։

**71.** Ստոր. առաջին ապառնին բացի վերևում դրածներից՝ համապատասխան է նաև աշխարհաբարի սահմ. ներկային.

1. Երբ խոսքը հարցական է, օրինակ՝ **Գիտիցե՞ս** կամ **զգայցե՞ս** ինչ արդեօք ցաւս։ **Ո՞չ իցէ ընթերցեալ** ձեր՝ զոր արար Դաւիթ, յորժամ քաղցեաւն։

2. Երբ խոսքը նմանությամբ, ենթադրությամբ, երկբայությամբ է ասվում, կամ կարծեցյալ իմաստ ունի. օրինակ՝ Հրապուրեաց զհայր իւր ցասնուլ Արգամայ, որպէս թէ թագաւորել ի վերայ ամենայնի **խորհիցի**: Զի՞նչ է զոր դու **գիտիցես**, մեք ոչ **գիտիցեմք**: Ոչ լուցանեն ճրագ և դնեն ընդ գրուանաւ, այլ ի վերայ աշտանակի և լոյս տայ ամենեցուն,

*որք ի տանն իցեն: Նմանեցաւ առն, որ* սերմանիցէ *սերմն բարի յագարակի իւրում։*

*Այս կիրառությունների փոխանակ գրաբարում կարող է նաև սահմ. ներկա գործածվել, իսկ աշխարհաբարում՝ սահմ. ներկայի տեղ ենթադրական կամ ըղձական ներկա։ Ո՞ իցէ ի ձէնջ մարդ, ցոր խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տայցէ նմա։ Միթէ քաղիցե՞ն (=կքաղե՞ն) ի փշոց խաղող, կամ ի տատասկէ թուզ։ Եւ ասէր. այսպէս է, որպէս զի այր մի* արկանիցէ *զսերմանիս իւր յերկիր, և* ննջիցէ *և* յառնիցէ *զցայգ և զցերեկ, և սերմանիքն* բուսանիցին *և* աճիցին, *և նա* ոչ գիտէ, *թէ... Այլ յորժամ* տայցէ *զպտուղն, վաղվաղակի* առաքի *մանգաղ՝ զի հասեալ են հունձք։= Ինչպես որ մի մարդ սերմ է ձգում... ննջում է և վեր կենում... բուսնում են և աճում... չի իմանում... տալիս է... ուղարկվում է... Բայց կարելի է թարգմանել նաև՝ Ինչպես որ մի մարդ սերմ ձգի (ձգելու լինի), ննջի և վեր կենա... բուսնեն և աճեն, և նա չիմանա, թե... տա... ուղարկվի...*

**72.** *Հրամայական ապառնի ժամանակները միևնույն իմաստն ու գործածությունն ունին, միայն առաջին ապառնին քիչ է պատահում և սովորաբար գործ է ածվում կրավորական նշանակությամբ։ Հոգն. 2-րդ դեմքերը նույնն են, ինչ որ ստոր. ապառնի ժամանակների հոգն. երկրորդ դեմքերը։ Եզ. 2-րդ դեմքերի փոխանակ երբեմն գործ են ածվում ստոր. ապառնի ժամանակների եզ. 2-րդ դեմքերը։ Իմաստով համապատասխան են աշխարհաբարի՝*

ա) *Հրամայական ներկային. օրինակ՝ գնայջի՛ր, գնասջի՛ր=գնա՛։ Ե՛րթ նախ հաշտեա՛ց ընդ եղբօր քում և ապա եկեալ մատուսջի՛ր զպատարագն քո=Գնա՛ նախ հաշտվիր... և ապա ե՛կ զոհդ արա՛։*

բ) *Ենթադր., հարկադր. և ըղձական ապառնի ժամանակներին. օրինակ՝ գնայջի՛ր, գնասջի՛ր=կգնա՛ս, պիտի գնա՛ս։ Ի նմին տան ագանիջիք, ուտիջիք և ըմպիջիք ի նոցանէ (=Նույն տանը վեր կը գաք, կ'ուտեք և կը խմե՛ք)։*

**73.** *Գրաբարի և աշխարհաբարի ժամանակների համապատասխանությունը կարելի է տեսնել հետևյալ ցուցակից, որի մեջ առանց ժամանակներն անվանելու՝ ամեն ժամանակի համար իբրև օրինակ դրված են առաջին դեմքերը միայն, նախ* եմ, լինիմ *օժանդակները, ապա* գրեմ *բայը։*

| | |
|---|---|
| 1. *եմ* | *եմ.* |
| *էի* | *էի. կը լինեի. լինեի* |
| *իցեմ* | *եմ. կը լինիմ. լինիմ* |
| 2. *լինիմ* | *լինում եմ, կը լինիմ. լինիմ* |
| *լինէի* | *լինում էի. կը լինեի. լինեի* |
| | *այլ և պատմական՝ լինում է. եղավ* |
| *լինիցիմ* | *պիտի լինիմ. կը լինիմ. լինիմ,—լինում եմ* |
| *լիցիմ* | *պիտի լինիմ. կը լինիմ. լինիմ* |

| | |
|---|---|
| լինիշի՛ր, լիշի՛ր | պիտի լինիս. կը լինիս, լինիս,—եղի՛ր |
| եղէ | եղա |
| լե՛ր | եղի՛ր |
| 3. Գրեմ | գրում եմ. կը գրեմ. գրեմ |
| գրէի | գրում էի. կը գրեի. գրեի |
| | Այլ և պատմական՝ գրում եմ, գրեցի |
| գրիցեմ | պիտ գրեմ. կը գրեմ, գրեմ,—գրում եմ, գրելու լինիմ |
| գրեցից | պիտի գրեմ. կը գրեմ. գրեմ |
| գրիշի՛ր, գրեսշի՛ր | պիտի գրես. կը գրես. գրես, գրի՛ր |
| գրեցի | գրեցի |
| գրեա՛ | գրի՛ր |
| Գրեալ եմ | գրել եմ, գրած եմ,—գրվել եմ, գրված իմ |
| գրեալ էի | գրել էի, գրած էի,—գրվել էի, գրված էի |
| | գրած կը լինեի,—գրված կը լինեի |
| | գրած լինեի,—գրված լինեի |
| գրեալ իցեմ | գրել եմ, գրած եմ,—գրվել եմ, գրված եմ |
| | գրած կը լինիմ,—գրված կը լինիմ |
| | գրած լինիմ,—գրված լինիմ |
| Գրելոց եմ | գրելու եմ,—գրվելու եմ |
| | պիտի գրեմ,—պիտի գրվեմ |
| գրելոց էի | գրելու էի,—գրվելու էի |
| | պիտի գրեի,—պիտի գրվեի |
| | գրելու լինեի,—գրվելու լինեի |
| գրելոց իցեմ | գրելու եմ,—գրվելու եմ (գրելու կը լինիմ,—գրվելու կը լինիմ) |
| | գրելու լինիմ,—գրվելու լինիմ |
| Գրեալ լինիմ | գրվում եմ |
| | գրած եմ լինում,—գրված եմ լինում |
| | գրած կը լինիմ,—գրված կը լինիմ. գրած լինիմ,—գրված լինիմ |
| գրեալ լինէի | գրվում էի |
| | գրած էի լինում,—գրված էի լինում |
| | գրած կը լինեի,—գրված կը լինեի. գրած լինեի,—գրված լինեի |
| գրեալ լիցիմ, | պիտի գրվեմ, կը գրվեմ, գրվեմ |
| լինիցիմ, | գրած, գրված պիտի լինիմ |
| | գրած, գրված կը լինիմ |
| | գրած, գրված լինիմ |
| գրեալ եղև | գրվեց,—գրած եղավ, գրված եղավ |
| Գրեալ է իմ՝ | ես գրել եմ, գրած եմ |
| գրեալ էր իմ՝ | ես գրել էի, գրած էի |
| | ես գրած կը լինեի, ես գրած լինեի |

| | |
|---|---|
| գրեալ իցէ իմ՝ | ես գրել եմ, գրած եմ |
| | ես գրած կը լինիմ, ես գրած լինիմ, ես գրած եմ լինում |
| գրեալ լինի իմ՝ | ես գրած եմ լինում գրած լինիմ. գրած կը լինիմ. |
| գրեալ լինէր իմ՝ | ես գրած էի լինում, գրած կը լինեի, գրած լինեի |

**74.** Թե գրաբարի այս կամ այն ժամանակն աշխարհաբարի ո՞ր ձեվով պետք է թարգմանվի, այդ մեծ մասամբ խոսքի իմաստից պիտի հասկացվի։ Վերջին կարգի գրեալ է իմ, գրեալ էր իմ ևն. ձևերի համար միայն՝ առանձնապես պիտի նկատել.

1. Դրանց հետ հաճախ ենթակայական սեռական լրացումը չի դրվում. մտքից միայն պիտի հասկացվի, թե որ թիվն ու դեմքն է, այսինքն թե՝ իմ, քո, իւր, մեր, ձեր ևն, բառերից որը պիտի դրվի. օրինակ՝ Եթէ կացեալ էաք (=կացած, մնացած լինեինք) ի պատուիրանին քում, տէ՛ր, և պահեալ էր (=պահեալ էր մեր=պահած լինեինք) զպատուիրանս զոր եդիր..., շնորհեալ լինէր քո (=դու շնորհած կլինեիր) մեզ զկեանս անցաւոր... և զմեզ յետ ի դրախտին վայելից և յետ երկրաւոր կարգացս՝ յանմահութիւն փոխեալ լինէր (=փոխեալ լինէր քո=փոխած կը լինեիր) և միահաղոյն ածեալ լինէր (=ածեալ լինէր քո=բերած կը լինեիր) զարքայութիւն քո (Ագաթ.)։ Եթէ ի Տիւրոս և ի Սիդովն եղեալ էին (=եղած լինեին) զօրութիւնքն՝ որ ի քեզ եղեն, վաղու ևս արդեօք խորգով և մոխրով ապաշխարեալ էր (=ապաշխարած կլինեին)։ Զի՞նչ ունիս, զոր ոչ իցէ առեալ (=առեալ քո=որ առած չլինես, կամ որ չես առել)։ Զքաղաք պտղոմայեցւոց տուեալ լիցի պարգև (=տուեալ լիցի մեր=տված լինենք)։ Զոր ինչ խնդրեցերն, երբ, տուեալ լիցի քեզ։

2. Երբեմն զօրութեամբ պիտի հասկացվի մի անորոշ անուն (ոք, ոմն,—ուրուք, ուրումն) իբրև ենթակայական սեռական։ Այս դեպքում աշխարհաբար թարգմանվում է հոգն. 3-րդ դեմքով իբրև քերականորեն անենթակա խոսք։ Օրինակ՝ Ուր չէր բնաւ զոք եդեալ (=չէր զոք եդեալ ուրուք=ուր ոչ ոքի չէին դրել)։ Զայս գրեալ է (=գրեալ է ուրուք=գրել են) ի գիրս, զայս և մեր ընթերցեալ է։ Դէպ եղև նոցա գալ մտանել ի նեղագոյն տեղի մի՝ յառուամէջս այգեստանւոյն, ի փողոցամէջս համբարոցացն՝ առ դրունս քաղաքին, քանզի զդրունս քաղաքին աղխեալ էր (=փակել էին). զի ժամ էր հասարակ գիշերոյ։ Վասն չարչարանաց էր շինեալ զայն տեղի (=չարչարանքի համար էին շինել այն տեղը)։

3. Երբեմն ենթակայական սեռականն և օժանդակ բայը միասին զեղչվում են։ Օրինակ՝ Ասէ Սարա ցԱբրահամ. տուեալ (=տուեալ է իմ) քեզ զՀագար։

4. Պատմելիս անցյալ անկատար ժամանակի փոխանակ գործած-

վում է երբեմն լինիմ բայով բաղադրված ձևը, օրինակ՝ Արդ գտեալ լինէին նոքա ի հնձանս շինուածոցն։ Համբաւն հռչակեալ... լինէր։

Այս օժանդակ բայը, ավելի լինէր ձևով, չի դրվում հաճախ, և այդ դեպքում անցյալ դերբայով միայն կազմվում են խոսքեր, օրինակ՝ Իբրև իրքն հռչակեցան զնոցանէն, ապա աւուրս երկուս ասպարափակ արարեալ, տուեալ (=տուեալ լինէր) պահել զնոսա։ Եւ եղեալ որոտումն յերկնից սաստիկ անհնարին, զի ահարեկեալ զամենայն ամբոխն։ Եւ այնպէս յերկար որոտացեալ, մինչև թմրեալ լինէին մարդիկն յահէ անտի։ Առեալ զսուրբն Հռիփսիմէ սպասաւորացն բռնաբար, մերթ վերամբարձ, մերթ ի քարշ. և նա աղաղակէր։ Եւ բացեալ զդուրս տանն բռնաբար՝ ի դուրս ելանէր, հերձեալ զամբոխ մարդկանն. և ոչ ուր ուք կարացեալ յաղթահարել զնա (Ագ.)։ Բայց Երուանդայ շինեալ զքաղաքն իւր և փոխեալ անդր զամենայն ինչ յԱրմաւրայ, ուրոյն ի կռոցն, զոր ոչ օգուտ իւր համարեալ յիրն փոխել ի քաղաքն (Մ. Խոր.)։

## ԵՂԱՆԱԿԻՉ ԲԱՅԵՐ

**75.** Կան բայեր, որոնք առանձին գործածությամբ դրվելով անորոշ դերբայի հետ՝ տալիս են նրան որևէ եղանակի, երբեմն աշխարհաբարի որևէ բաղադրյալ ժամանակի իմաստ։ Բոլոր պակասավոր բայերը եղանակիչ բայ են. բացի դրանցից կան և ուրիշները։ Առանձին ուշադրություն պիտի դարձնել ներքևում դրվածների վրա։

**76.** Ունիմ անորոշ դերբայի հետ նշանակում է՝

ա) Կարեմ, մարթեմ, գիտեմ=կարողանալ, կարող լինել, գիտենալ, ունենալ. օրինակ՝ Նաև ոչ շնչական ունիմ անուանիլ=Շնչավոր էլ չեմ կարող կոչվել։ Ասել ոչ ունիմ=Ասել չեմ կարող։ Ոչ ունիս չարանալ, խսկութեամբ բարիդ=Չարանալ չունիս կամ չարանալ չգիտես, կամ չարանալ չես կարող...

բ) Առաջի կայ ինձ, առաջի կայ քեզ, նմա ևլն, որ բային տալիս է ապառնի ժամանակի նշանակություն։ Աշխարհաբար թարգմանվում է կամ ապառնի ժամանակով, կամ թե ապառնի դերբայով ունիմ բայի հետ։ Օրինակ՝ Ընդ մօտոյ ունիմք տեսանել (=առաջի կայ մեզ տեսանել=շուտով տեսնելու ենք, կամ՝ պիտի տեսնենք)։ Ունիմ ինչ ասել քեզ (=Քեզ բան ունիմ ասելու)։

Ծան. Ունիմ բայն անցյալ դերբայի հետ երբեմն, ինչպես աշխարհաբարում, բանում է եմ, լինիմ բայի փոխանակ։ Օրինակ՝ Զայս միայն եդեալ ունիցի՞ք ի մտի=...մտքերդ դրած եղէք, կամ՝ դրած լինիք։ Զաշխարհն հնազանդեալ ունէր ընդ իւրեաւ=...հնազանդեցրել էր, կամ հնազանդեցրած ունէր... Առեալ ունիմք=առած ունինք, առել ենք։ Բարձեալ ունի (կամ բարձեալ բերէ)=բարձրացրել է, կամ վրան ունի, վրան կրում է։

**77.** Պարտիմ անորոշ դերբայի հետ նշանակում է՝ պարտավոր լինել, պարտական լինել, պարտավորվել մի բան անելու. բայց աշխարհաբար թարգմանվում է ավելի հարկադրական եղանակով պիտի (պէտք

*է) եղանակիչով։ Օրինակ՝ Զոր պարտէաքն առնել՝ արարաք (=Ինչ որ պարտական էինք կամ պարտավոր էինք անելու՝ արինք. կամ թե՝ Ինչ որ պիտի (պետք է) անեինք՝ արինք)։ Պարտիմք զմիմեանս սիրել (=Պետք է միմյանց սիրենք)։ Ըստ օրինաց մերոց պարտի մեռանիլ (=Մեր օրենքով՝ պիտի մեռնի)։ Եւ դուք պարտիք զմիմեանց ոտս լուանալ (=Դուք էլ պիտի միմյանց ոտներ լվանաք)։ Վասն եղբարց մերոց պարտիմք դնել զանձինս։*

*Սույն իմաստն արտահայտվում է նաև* **արժան է, պարտ է ինձ**, *քեզ, նմա ևլն. ձևով։ Օրինակ՝ Ի տան հօր իմոյ պարտ ինձ լինել (=Ես պիտի իմ հոր տանը լինիմ, կամ՝ ես պարտավոր եմ իմ հոր տանը լինել)։ Ո՞չ էր պարտ ողորմել և քեզ ծառայակցին քում (=Դու էլ չպիտի՞ քո ծառայակցին ողորմեիր)։ Առն մարդոյ չէ պարտ ծածկել զգլուխ իւր (=Տղամարդը գլուխը չպիտի ծածկի)։ Ոչ է պարտ, եղբարք իմ, այսմ այսպէս լինել (=Այս այսպես չպիտի լինի, ե՛ղբայրներս)։ Ի տան քում արժան է ինձ ագանել։ Բայց քեզ արժան էր զօգուտ քո անձինդ խընդրել=Դու պիտի քո օգուտն ուզեիր (§176, 1.)։*

**Ծան. Պարտիմ** *իբրև անցողական բայ նշանակում է՝ պարտ լինել (պարտ ունենալ), պարտական լինել (մեկին մի բան)։ Օրինակ՝ Հատո՛ ինձ զոր պարտիսդ=Վճարի՛ր ինձ՝ ինչ որ պարտ ես, այսինքն պարտք ունիս։ Պարտէր նման հարիւր դահեկան (=Նրան պարտ էր հարյուր դահեկան)։ Քանի՞ ինչ պարտիս տեառն իմում (=Դու ի՞նչքան բան ես պարտ իմ տիրոջը)։ Դու զանձն քո ինձ պարտիս (=Դու քո կյանքն ինձ ես պարտական)։*

78. **Պիտի** *բայն անորոշ դերբայի հետ մի տրական խնդրով՝ պիտի ինձ, քեզ, նմա ևլն, պիտէր ինձ, քեզ, նմա ևլն. նշանակում է՝ պետք է, հարկավոր է ինձ, քեզ ևլն. մի բան անել. բայց աշխարհաբար թարգմանվում է ավելի հարկադրական եղանակով՝ պիտի (պետք է) եղանակիչով։ Օրինակ՝ Ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի=Ես պիտի նորից դառնամ այս տեղին։ Ոչ պիտի մեզ այր սպանանել (=Մենք չպիտի մարդ սպանենք կամ՝ Մեզ պետք չէ մարդ սպանել)։ Արեաց տէր որ լինի, արդար աչօք պիտի նայել (=պիտի նայի) յամենայն մարդ։*

*Սույն իմաստն արտահայտվում է նաև* **պիտոյ է կամ հարկ է ինձ**, *քեզ, նմա ևլն. ձևով. օրինակ՝ Ինձ պիտոյ է գնալ=Ես պիտի (պետք է) գնամ։ Հարկ է գալ (=պիտի գա) գայթակղութեան։ Հարկ է և նմա ունել ինչ (=Նա էլ պիտի մի բան ունենա)։*

**Ծան. Պիտի** *մենակ՝ առանց տրական խնդրի՝ նշանակում է՝ պետք է, պիտի, հարկավոր է. օրինակ՝ Պիտի պատուել (=պիտի պատվել) զնոսա, որչափ ի քէն է հրամայեալ։ Թէ պիտի և այլ ևս ինչ՝ ասա՛=Թե ուրիշ բան էլ է պետք (հարկավոր), կամ՝ թե ուրիշ բան էլ պիտի՝ ասա։*

*Այս իմաստն արտահայտվում է* **պէտք են** *ձևով, որ դրվում է մի սեռական խնդրի հետ. օրինակ՝ Հաւատոց պէտք են=Հավատք է պետք, հավատք պիտի, հավատք է հարկավոր (բառացի՝ հավատքի պետք կա)։*

*Բազում զգուշութեան են պետք=Մեծ զգուշություն է պետք կամ՝ պիտի։*

**79. Մարթի** *բայը, նույն իմաստով և* **մարթ** *է, անորոշ դերբայի հետ մի տրական խնդրով, ցույց է տալիս կարելիություն, հնարավորություն, աշխարհաբար թարգմանվում է կարելի է, կարող եմ, կարող ես ևլն. ձևերով։ Օրինակ՝ Զիա՞րդ մարթի այդմ լինել=Այդ ի՞նչպես կարող է լինել։ Չէ մարթ այդմ լինել=Այդ չի կարող լինել։ Մարդ չըմարթի զքեզ կոչել=Մարդ չի կարելի քեզ կոչել։ Եթէ նմա չմարթի գալ, յղեա զդա առ նա=Եթե նա չի կարող գալ... Վնասակարացն ընդ անվնասակարսն չմարթի բնակել=Վնասակարներն անվնասների հետ չեն կարող բնակվել։ Միթէ մա՞րթ ինչ իցէ մանկանց առագաստի սուգ ունել=Միթե կարելի՞ բան է, որ առագաստի մանուկները սուգ պահեն։*

**80. Լինիմ** *(եղանիմ,* **եմ** *բայերի եզ. 3-րդ դեմքը, անորոշ դերբայի հետ տրական խնդրով, ստանում է* դէպ լինի*=պատահել, հաջողել բայի իմաստը. բայց հաճախ այս կիրառությունը լոկ դարձված է, որ գործ է ածվում փոխանակ բայը խոնարհելու։ Օրինակ՝ Եղև նմա հիւանդանալ (=հիվանդացավ նա)։ Եղև մեռանել աղքատին (=մեռավ աղքատն)։ Եղև նմա դառնալ (=դարձավ նա)։ Այսպէս եղև ամենեցուն փրծանել յերկիր և ապրել (=այսպես հաջողվեց ամենքին պրծնել...)։ Էր ինձ... լինել (=էի ես) այսօր յերկրի անծանօթում։ Ի սաստկութենէ ծփանաց խորհրդոցն լինէր նմա ի տեսլեան երազոցն երևութանալ (=երևութանայր նմա)։— Ապառնին՝* լիցի՝ *տալիս է բային հարկադրական եղանակի իմաստ. օրինակ՝ Ինձ լիցի ամենայն հնազանդութեամբ պաշտել (=ես պաշտեցից=ես պիտի ծառայեմ)։ Ինձ լիցի պահել (=ես պահեցից=ես պիտի պահեմ) զուխտ։ Իմ յայր թագաւոր ոչ ձգեալ ձեռն (և մի՛ այլ ձգել լիցի)—... չպիտի՛ էլ ձգեմ)։ Մի՛ լիցի քեզ զայդ ասել (=մի՛ ասասցես=չասե՛ս, չլինի՛ թե ասես)։*

*Արգելական* մի՛ լիցի *ձևի փոխանակ գործ է ածվում և* Քաւ լիցի. *օրինակ՝ Քաւ լիցի ինձ ասել զայն։ Քաւ լիցի քեզ առնել զայն բան (=չլինի թե դու այդ բանն անես)։*

**81. Եմ** *բայի կիրառության համար պիտի իմանալ.*

*1. Եզ. 3-րդ դեմքը՝ անորոշ դերբայի հետ տրական խնդրով, գործ է ածվում* **պարտիմ, պարտ է, մարթ է** *եղանակիչ բայերի նշանակությամբ։ Օրինակ՝ էր նմա անցանել (=նա պիտի անցներ) ընդ Սամարիա։ Ոչ է ձեզ գիտել զժամն (=դուք չպիտի իմանաք...)։ Էին ի վայրսն՝ ընդ որ գալ էր գնդին (...գունդը պետք է գար), լերինք ինչ։ Ոչ ևս է լինել նմա հանգիստ։ Ոչ այժմ թագաւորել է նմա։ Այլ մեզ բան զայդ ոչ իմանալ ինչ է, ոչ առնել (=բայց մենք դրանից ավելի բան ոչ պիտի իմանանք, ոչ անենք)։*

*2.* **Է, էր, իցէ,** *բացասական՝* չիք, չկայ, չգոյ, *անորոշ դերբայի հետ առանց տրական խնդրի,* **պարտ է, մարթ է,** *(=կարելի է) նշանակություն են ստանում, միայն ընդհանուր իմաստով։ Օրինակ՝ Զիա՞րդ*

իցէ մեկնել դայս (=ի՞նչպէս պետք է, կամ՝ ինչպես կարելի է մեկնել այս, կամ՝ ի՞նչպես մեկնելու է այս)։ Անդ էր լսել զձայն լալոյ։ Տեսանել է յամենեցուն ընթրիս։ Եթէ էր տանել առ բժիշկ (=Եթե կարելի լիներ տանել, եթե բժշկի մոտ տանելու լիներ)։ Ոչինչ է ընդ այն զարմանալ։ Ի Յոբայ փորձանացն է տեսանել։ Զոր իմանալ է (=իմանալի է=պետք է իմանալ) առ փարաւոն և առ սատանայ։ Զի՞նչ ինչ առնել էր (=Հարկավոր էր անել, անելու էր) այգւոյ իմում, և ես ոչ արարի նմա։ Է և այլ ազգ ևս իմանալ (=ուրիշ տեսակ էլ կարելի է հասկանալ)։ Այլ ինչ չկայ տեսանել։

3. Երբեմն է բայը տրական խնդրով՝ ստանում է անկ է (=արևմտ. աշխ. կ'իյնա, կը վայլե. վայել է, պատշաճ է), գործ է. պաշտօն է, իրք են (աշխարհ. բանն է) ձևերի իմաստը. ենթական կարող է լինել մի անորոշ դերբայ կամ ուրիշ բառ։ Օրինակ՝ Դիւաց է կերպարանս կերպարանս ցուցանել։ Ճշմարիտ վարդապետի է երբեմն սաստել։ Քաջ արանց է յարձակ դաշտի և յազատ տեղւոջ կռուել, և կանանց գործ է արդելուլ, փակել զինքեանս յերկիւղէ առ հանդերձեալ կռիւսն։ Մեծի զօրութեան է առնել զայդ։ Յետին ամբարշտութեան է... Վերջին յիմարութեան է զայդ ասել։

ԵՐԿՐՈՐԴ ԳԼՈՒԽ

# ԳՈՅԱԿԱՆ ԵՎ ԱԾԱԿԱՆ

## ԱՆՎԱՆԱԿԱՆ ՀՈԼՈՎՈՒՄ

**82.** *Գրաբարում հոլովվում են ոչ միայն գոյականները (անուն և դերանուն), այլև ածականները, երբ դրվելով անվան վրա՝ թվով և հոլովով համաձայնում են դրա հետ, օրինակ՝ մեծ զօրութիւն, մեծի զօրութեան, մեծաւ զօրութեամբ։ Ածականները հոլովվում են անունների պես։*

**83.** *Հոլովները յոթն են՝ ուղղական, հայցական, սեռական, տրական, բացառական, գործիական և ներգոյական։*

*Հայցական հոլովն առանձնապես կրող առարկայի հոլովն է, գործածվում է իբրև կրող խնդիր (հայցական=խնդրական) ներգործական բայերի։ Այս հայցական խնդիրը երբ որոշ է,—այսինքն հատուկ անուն է, դերանուն է, կամ աշխարհաբարում վրան ունի որևէ հոդ և կամ* **ամենայն, իւրաքանչիւր, անցնիւր** *բառերից մեկը,— սկզբից առնում է* **զ** *նախդիրը և կոչվում է* **որոշյալ հայցական**: *Այս հոլովին աշխարհաբարում փոխանակել են ուղղական և տրական հոլովները (ուղղական-հայցական և տրական-հայցական)։ Օրինակ՝* **Եւ բացեալ զբերան** *(=բերանը) իւր ուսուցանէր* **զնոսա** *(=նրանց)։ Աղաչեցէք* **զտէր** *(=տիրոջը) հնձոցն, զի հանցէ* **մշակս** *(=մշակներ) ի հունձս իւր։ Մի՛ արկանէք* **զմարգարիտս** *(=մարգարիտները) ձեր առաջի խոզաց։*

**84. Հոգնակի թիվը** *կազմվում է* **ք, ս, ց** *բաղաձայններով.* **ք** *ունին հոգնակի ուղղականն և գործիականը (հացք, հացիւք).* **ս** *ունի հոգն. հայցականը (հացս).* *իսկ* **ց** *ունին հոգն. սեռական-տրականն ու բացառականը (հացից, ի հացից)։*

**85. Անեզական** *ասվում են այն անունները, որոնք ունին միշտ հոգնականի* **ք**-*ն և հոլովվում են միայն հոգնակի ձևով. օրինակ՝* **աչք. փառք, կեանք. կառք, դիք, տանջանք, զրկանք, հարսանիք, կոչունք, իրաւունք** *ևլն։*

*Այս բառերը նշանակությամբ՝ նայելով տեղին՝ լինում են և՛ եզակի և՛ հոգնակի, ուստի կարող են մի թվականն առնել, ինչպես և եզա-*

կի ձևով վերադիր ածական ունենալ, օրինակ՝ Մեծաւ չարչարանօք և պէսպէս տանջանօք վատթարէր։ Մեծաւ անարգանօք տանչէր զամենեսեան։ Բացաւ աչօք տեսանէին։ Բացաւ երեսօք։ Նովին կապանօք։ Ընդ նովին օրինօք։ Որ նստէր ի մեծ գահոյս յայսմ։ Կուռք մի, կառք մի, մի երկանք, վասն միոյ յանցանաց, դիւց իրիք, ի կեանսն իւրում, ի փառս իւրում (§§ 186. 3, 188. 207, գ.)։

**86.** Մի քանի բառեր՝ բացի հոգնականի սովորական կազմությունից՝ ունին նաև հետևյալ ածանցներով հոգնակի ձևերը հավաքական իմաստով.

1. **Ան, եան** օրինակ՝ ձիան, իշան կամ իշեան, խոզեան, խորդեան, նախարարեան, զօրագլխեան, աբեղեան (=աբեղայք), թղթեան, գեւղեան, բերդեան։ Երբեմն հոգնականի ք-ի հավելմամբ, օրինակ՝ նու, նուանք, գրեան, գրեանք։

2. **Անի**, օրինակ՝ ազատանի, աւագանի, կանանի, նամականի։

3. **Եար, նեար**. երբեմն և **եարք**, օրինակ՝ որեար (որեարք=մարդիկ), վանեար, իշեար, բանեար, բերդեար (բերդեարք), բարձկնեար, նաւկնեար։

4. **Որեայ** (=ուրեայ), երբեմն **որայ**, **որայք**, **արէք** ձևերով, օրինակ՝ արտորեայ, վանորեայ, վանորայ, գեղարէք։

5. **Տի**, **ոտի**, երբեմն կրկին հոգնական **տիք**, **ոտիք** ձևերով, օրինակ՝ մանկտի, ծակտի, ոսկրոտի, փորոտի(ք)։

**87. Հոգնակի ուղղականը** կազմվում է եզակի ուղղականի վրա ք ավելանալով. օրինակ՝ բան, բանք. ծառ, ծառք. այգի, այգիք. ակն, ակունք. կողմն, կողմանք. գառն, գառինք. եզր, եզերք։

**88. Եզակի հայցական** հոլովը նման է եզ. ուղղականին. **Հոգնակի** հայցականը կազմվում է հոգնակի ուղղականի ք-ն ս-ի փոխելով, օրինակ՝ բանք, բանս. ծառք, ծառս. այգիք, այգիս. ակունք, ակունս. կողմանք, կողմանս. գառինք, գառինս. եզերք, եզերս։

**Ծան.** Երբ հոգն. հայցականի վրա գրվում է ս հոդը, հոգնականի ս-ի փոխանակ գրվում է երբեմն ք. օրինակ՝ Զայս նախարարքս յական յանուանէ կոչեցին։

**88** Անունների և ածականների սեռական և տրական հոլովներն ընդհանրապես նման են միմյանց։

**Եզակի սեռական-տրականն** ունի **ի**, **ու**, **ոյ**, **այ** վերջավորությունները, որոնք կազմում են չորս ձայնավոր հոլովում անփոփոխ բներով. և **ան**, **եր**, **եղ** վերջերը, որոնք կազմում են երկու բաղաձայն հոլովում փոփոխվող բներով։

**Հոգնակի սեռական-տրականը** կազմվում է եզակի սեռական-տրականի վրա **ց** ավելանալով. եզակի տրականի **յ**-ն այս դեպքում դուրս է ընկնում. օրինակ՝ բան, բանի, բանից. հաւ, հաւու, հաւուց. ծառ, ծառոյ, ծառոց. տիտան, տիտանայ, տիտանաց. կողմն, կողման, կողմանց. համր, համեր, համերց։

Բացի այս՝ կան երեք շեղումներ, այն է՝ այ հոլովումն ունի եզ. սեռական-տրականի համար այ վերջավորության փոխանակ ի կամ ոյ, բայց հոգնակին՝ աց, օրինակ՝ ախարհ, աշխարհի, աշխարհաց. այգի, այգւոյ, այգեաց։ Իսկ ան հոլովումն ունի եզ. սեռական-տրականի համար ան վերջի փոխանակ ին, բայց հոգնակին անց. օրինակ՝ գառն, գառին, գառանց։

**89. Բացառական** հոլովն ունի սկզբից մի նախդիր, սովորաբար ի (երբեմն զ, ընդ, ըստ, առ), որ, երբ բառը ձայնավորով է սկսվում, դառնում է յ և անվանը կից է գրվում։ Եզակի բացառականը, եթե տրականն ունի այ, ոյ վերջավորությունը, կազմվում է տրականի վրա ի (յ) նախդիրն ավելանալով. մնացած դեպքերում ունի է վերջավորությունը։ Հոգնակի բացառականը կազմվում է հոգն. տրականի վրա միայն ի (յ) նախդիրն ավելանալով։ Օրինակ՝ ծառ, ծառոյ, ի ծառոյ, ի ծառոց. տիտան, տիտանայ, ի տիտանայ, ի տիտանաց։—Բան, բանի, ի բանէ, ի բանից. խրատ, խրատու, ի խրատէ, ի խրատուց. ակն, ական, յականէ, յականց. աստղ, աստեղ, յաստեղէ, յաստեղց—շեղումները՝ աշխարհ, աշխարհի, յաշխարհէ, յաշխարհաց.— այգի, այգւոյ, յայգւոյ, յայգեաց. գառն, գառին, ի գառանէ (ի գառնէ), ի գառանց։

Ծան. Բացառականի համար պատահում է երբեմն ուստ վերջավորությունը, օրինակ՝ յաստուածուստ (յաստուծուստ) կամ աստուածուստ, յարքունուստ կամ արքունուստ, յերկնուստ, յարտաքուստ կամ արտաքուստ ի ներքուստ կամ ներքուստ (=ներքևից, տակից կամ ներսից, ներքսևից), ի բացուստ կամ բացուստ, յառաջուստ (=առջևից), ի վերուստ կամ վերուստ. ի հեռուստ կամ հեռուստ. յետուստ յանկարծուստ։— Սրանք մեծ մասամբ մակբայական կազմություններ են։

**90. Եզակի գործիականը** կազմվում է բ, վ, ւ տառերով, որոնք դրվում են եզակի տրականի վրա։ Հոգնակի գործիականը կազմվում է եզակի գործիականի վրա ք ավելանալով։

Բ դրվում է, երբ տրականը բաղաձայնով է վերջանում. բ-ից առաջ ն-ն փոխվում է մ-ի, օրինակ՝ ակն, ական, ակամբ, ակամբք. աստղ, աստեղ, աստեղբ, աստեղբք։

Ի դրվում է, երբ տրականն ի, այ է վերջանում։ Այ-ի վերջի յ-ն դուրս է ընկնում. օրինակ՝ տիտան, տիտանայ, տիտանաւ, տիտանաւք. բան, բանի, բանիւ, բանիւք։

Վ դրվում է, երբ տրականը վերջանում է ոյ, որի վերջի յ-ն դուրս է ընկնում. օրինակ՝ ծառ, ծառոյ, ծառով, ծառովք։

Բացի այս՝ պիտի նկատի ունենալ, որ՝

1. Ի, ոյ, ին շեղումները վերացվում են, այսինքն գործիականն այնպես է կազմվում, որպես թե տրականը ունենար այ, ան. օրինակ՝ աշխարհ, աշխարհի, աշխարհաւ, աշխարհաւք. այգի, այգւոյ, այգեաւ, այգեաւք. գառն, գառին, գառամբ, գառամբք։

2. Երբ տրականն ունի ու, գործիականն անփոփոխ միևնույն տր-

բականն է, միայն հոգնականում f է առնում, օրինակ՝ զարդ, զարդու, գործիական՝ զարդու, զարդուք։

Ծան. 1. Գործիականի ու վերջավորությունը հոգնականի մեջ իբրև երկբարբառ դարձել է օ, աշխարհաւք, աշխարհօք, ինչպես գրում և տպում են այժմ սովորաբար։ Իսկ իւ վերջավորությունը եզակիում արտասանվում է իբրև իվ, հոգնակիում իբրև իւ երկբարբառ, օրինակ՝ բանիւ=բանիվ, իսկ բանիւք=բանյուք։

Ծան. 2. Գործիականի համար պատահում են երբեմն հնացած աւ, աւին (աւիմբ), ովին վերջավորությունները, ինչպես՝ գլխովին, երամովին, ձիովին, ազգաւիմբ, մերովի, ձերովին, իւրովի, իւրովին և այլն, որոնք իբրև մակբայ են գործ ածվում։

**91.** **Ներգոյական հոլովն** սկզբից ստանում է ի, ձայնավորներից առաջ յ նախդիրը, երբեմն նաև ուրիշ նախդիրներ, և սակավաթիվ բառերի համար միայն ունի առանձին կազմություն։

**Հոգնակի ներգոյականը** միշտ նման է հոգնակի հայցականին, օրինակ՝ ի քաղաքս=քաղաքներում։ Բայց այս ձևը կարող է նշանակել նաև **քաղաքները**, երբ գործողությունը ուղղված է դեպի քաղաքները, օրինակ՝ գնաց ի քաղաքս։

**Եզակի ներգոյականը** նման է մասամբ եզակի հայցականին, մասամբ եզակի տրականին, երբեմն նույն բառը երկուսին էլ, մասամբ էլ առանձին կազմություն ունի, օրինակ՝ ի ջուր, ի քաղաքի, յագւոջ=ջրում, քաղաքում, այգում։ Թուղթ, ի թուղթ, ի թղթի։

Այսպիսի տարբեր կազմությունների պատճառով ներգոյական հոլովն առանձին է բացատրված։ Տե՛ս §§ 102. 106. 158, 2. 207. 208. 211։

**92.** Հոլովման ժամանակ՝ շեշտի տեղափոխությամբ առաջացած ձայնափոխությունը, սակավ բացառությամբ, պահվում է, այսինքն՝ **է=ի, ու. ի=ը** (կամ սղվում են). **ոյ=ու. եա=ե. եայ=է**: Օրինակ՝ սէր, սիրոյ. ջուր, ջրոյ. միտք, մտաց. լոյս, լուսոյ. սենեակ, սենեկի. քրիստոնեայ, քրիստոնէի։ Բացի այս՝ երբեմն **ե** ձայնավորն էլ սղվում է, օրինակ՝ սանդն. սաղան. պճեղն, պճղան. թիթեղն, թիթղան. ծիծեռն, ծիծռան. իսկ **է** ձայնավորն երբեմն դառնում է **ե**, օրինակ՝ եղէգն, եղեգան. աղուէս, աղուեսու կամ աղուեսու։

## ԿԱՆՈՆԱՎՈՐ ՀՈԼՈՎՈՒՄՆԵՐ

### Անփոփոխ բնեռով

#### 1. Ի ՀՈԼՈՎՈՒՄ

**93.** Այս հոլովման սեռական-տրականը կազմվում է **ի** վերջավորությամբ, բացառականը՝ **է**: Վերջավորությունները դրվում են եզակի ուղղականի վրա։ Օրինակ՝

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *բան* | *բանք* |
| *Հայց.* | *բան* | *բանս* |
| *Սեռ. Տր.* | *բանի* | *բանից* |
| *Բաց.* | *ի բանէ* | *ի բանից* |
| *Գործ.* | *բանիւ* | *բանիւք* |

**94.** *Այսպես հոլովվում են.*

*1.* Այ, եայ, է *վերջացած բառերը, օրինակ՝ ծառայ, մարգարէ, պաշտօնեայ (պաշտօնէի, պաշտօնէից). տասնամեայ (տասնամէի, տասնամէից)։*

*2. Շատ հասարակ անուններ, օրինակ՝ բանտ, գան, հաց, նետ, տօն, սիրտ, արուեստ, օգուտ, հանդէս, ողջոյն, ատեան, վայրկեան,— անեզական՝ կրօնք, աղօթք, անէծք, ինչք, խօսք եւն։*

*3. Շատ հատուկ անուններ, ավելի* ոս, էս *վերջավորությամբ, օրինակ՝ Մովսէս, Ներսէս, Մարկոս, Եգիպտոս, Սարգիս եւն։*

էս *վերջացած հատուկ անունների մեջ* է *ձայնավորը դառնում է* ի *կամ* ե, *երբեմն և անփոփոխ* է *է մնում, օրինակ՝ Մովսէս, Մովսիսի, Մովսեսի, այլ և Մովսէսի։*

*Հունական* էս, ոս *վերջավորությունները երբեմն դուրս են ընկնում, օրինակ՝ Մատթէոս, Մատթէի կամ Մատթէոսի. Հերովդէս, Հերովդի։*

*4. Թվական անունների մեծ մասը, որ են՝*

Երեք, *երիս, երից, երիւք։*

Չորք, *(չորեք), չորս, չորից, չորիւք։*

Հինգ. *հնգի, հնգիւ, հինգք, հնգից, հնգիւք. այլև հնգօք։*

Վեց, *վեցի, վեցիւ, վեցից, վեցիւք։*

Եօթն, *եօթնի, եօթնիւ, եօթնից (տե՛ս § 112: 2)։*

Ութ, *ութի. ութիւ, ութից, ութիւք։*

Ինն, *ըննի, ըննիւ, ըննից, ըննիւք (տե՛ս § 129)։*

Տասն, *տասնից (տե՛ս § 112. 2)։*

Մետասան, *մետասանի, մետասանից։ Այսպես և՝ երկոտասան, երեքտասան, չորեքտասան, հնգետասան, վեշտասան։*

Քսան, *քսանի, քսանից։*

Երեսուն, *երեսնի, երեսնից։ Այսպես և՝ քառասուն, յիսուն, վաթսուն, եօթանասուն, ութսուն, իննսուն։*

Ամենայն, *ամենայնի, ամենայնիւ։*

### *2. ՈՒ ՀՈԼՈՎՈՒՄ*

**95.** *Այս հոլովման սեռական-տրականը կազմվում է* ու *ձայնավորով, որ դրվում է ուղղականի վրա. բացառականը՝* է *ձայնավորով, որ*

ավելանում է կամ ուղղականի կամ տրականի վրա, երբեմն երկուսի վրա ևս։ Օրինակ՝

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| Ուղ. | խրատ | խրատք |
| Հայց. | խրատ | խրատս |
| Սեռ. Տր. | խրատու | խրատուց |
| Բաց. | ի խրատէ. ի խրատուէ | ի խրատուց |
| Գործ. | խրատու | խրատուք |

**96.** Այսպես հոլովվող բառերը մեծ մասամբ և մյուս հոլովումների տակ են գնում։ Օրինակ՝

1. Բառեր, որոնց բացառականն ուղղականից է կազմվում՝ առաւօտ, արև, կով, հաւ, ուղտ, ոսկաւ, համբաւ, աղուէս, զէն, ինձ (ընձու). ցուլ, ծով, ժամ ևն,—անեզական՝ պարտք, վարք, բարք,—Յորդանան, Յովհաննէս (Յովհաննու), Սոկրատէս (Սոկրատու)։

2. Բառեր, որոնց բացառականը տրականից է կազմվում՝ զարդ, սպաս, նախանձ, այգ ևն։

3. Ծաղր, ասր, մեղր ունին՝ ծաղու, ասու, մեղու, ի ծաղուէ, յասուէ, ի մեղուէ։ Հոգն. ասք, ասս, ասուց ասուք (տե՛ս § 128)։—Ծաղր ունի տրական նաև՝ ծաղեր կամ ծաղրու. ասր՝ ասրոյ կամ ասրու, ասրոց. գործ. ասրով կամ ասերբ. իսկ մեղր՝ մեղեր, մեղերբ (տե՛ս § 113)։

4. Թվականներից՝ երկու կամ երկուք, երկուս, երկուց, յերկուց. գործ. երկուք։ Գործիականի համար սովորաբար գործածվում է երկոքումբք, որ երկոքին բառի գործիականն է։

Բիւր, բիւրու, բիւրք, բիւրուց, բիւրուք։ Այլ և՝ բիւրի, բիւրեաւ կամ՝ բիւրոյ, բիւրով, բիւրոց, բիւրովք։

### 3. ՈՅ ՀՈԼՈՎՈՒՄ

**97.** Այս հոլովման սեռական-տրականը կազմվում է ոյ վերջավորությամբ։ Բացառականը նույն տրականն է ի (յ) նախդրով։ Օրինակ՝

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| Ուղ. | ծառ | ծառք |
| Հայց. | ծառ | ծառս |
| Սեռ. Տր. | ծառոյ | ծառոց |
| Բաց. | ի ծառոյ | ի ծառոց |
| Գործ. | ծառով | ծառովք |

**98.** Այսպես հոլովվում են.

1. Շատ հասարակ և մի քանի հատուկ անուններ, օրինակ՝ գործ,

փող, դեղ, ձի, էշ, սէր, յօղ, ամօթ, ծէր, խունկ, ծուխ, սուրբ, իմաստուն, թռչուն, ծծումբ, յոյս, գոյն, թիւ (թուոյ), անիւ, պատիւ, գին, միս, մարմին, բերան, երկաթ, տղայ, տերև,—ոսկի, հոգի, որդի, ասորի, (տե՛ս ներքևը 5 կետ),—անեզական՝ տիք (տից), դժոխք, կուռք, Հայք, Հռոմք.—Աստուածատուր, Կարին ևլն,—և բոլոր ած, ին, ային, ուն ածանցներով կազմվածները՝ վերին, երկնային, գիտուն, արարած ևլն։

2. Աստուած բառը, որ քրիստոնեական իմաստով ունի՝ աստուծոյ, աստուծով, իսկ հեթանոսական աստուծու իմաստով լինում է՝ աստուածոյ, աստուածով, աստուածք, աստուածոց, աստուածովք։

3. Անորոշ դերբայները, որ հոգնակի չունին, օրինակ՝ բառնալ, բառնալոյ, բառնալով. հեղուլ, հեղլոյ, հեղլով։

4. Անցյալ դերբայները՝ առաքեալ, առաքելոյ, առաքելով, առաքեալք, առաքելոց, առաքելովք։

5. Ցի ածանցով կազմվածները, որոնք մի տեղացի լինելը, կամ մի ազգի վերաբերելն են ցույց տալիս, օրինակ՝ Փարպեցի, Խորենացի, Հռոմայեցի, կարնեցի, քաղաքացի ևլն։

Այս բառերի, ինչպես և մի քանի ի վերջացած բազմավանկների՝ հոգի, որդի, ոսկի, ասորի՝ վերջի ի ձայնավորը վերջավորության ո ձայնավորից առաջ դառնում է ւ. օրինակ՝ փարպեցի, փարպեցւոյ, փարպեցւով, փարպեցւոց, փարպեցւովք. հոգի՝ հոգւոյ, հոգւով, հոգւոց, հոգւովք։

6. Եար, նեար, երբեմն և եան ածանցներով կազմված հոգնակիները. վանեար, վաներոյ. որեար, որերոյ. բարձկնեար, բարձկներոյ. գրեան, գրենոյ։

7. Իա վերջացած աշխարհագրական անունները, որոնց վերջի ա ձայնավորը դուրս է ընկնում, օրինակ՝ Գալիլիա, Գալիլիոյ. Արաբիա, Արաբիոյ. Նիկիա, Նիկիոյ. Եդեսիա, Եդեսիոյ. Սամարիա, Սամարիոյ. Ջմիւռնիա, Ջմիւռնիոյ (տե՛ս § 105. 3)։

8. Թվականներից՝ հարիւր (հարեւր), հարիւրոյ, հարիւրով (երբեմն հարիւրիւ), հարիւրոց, հարիւրովք։ Նույնպես՝ երկերիւր, երեքհարիւր, չորեքհարիւր, հինգհարիւր, վեցհարիւր, եօթնհարիւր, ութհարիւր, իննհարիւր։

**99.** Այս հոլովման տակ գնացող մի քանի բառերի համար պիտի նկատի ունենալ, որ սեռական-տրականն ունին երբեմն նաև ոջ վերջավորությամբ, որի վրա ավելանում է բացառականի է վերջավորությունը, օրինակ՝ մարդ, մարդոյ, ի մարդոյ,—բայց երբեմն և մարդոջ, ի մարդոջէ. նույնպես ձի, ձիոյ, այլ և ձիոջ, ի ձիոջէ. ջերմ, ջերմոյ, ջերմոջ. մի, միոյ կամ միոջ, ի միոջէ։ Հնացած մի ձև է ոյր վերջավորությամբ սեռականը՝ մարդոյր, ձիոյր ևլն։

**100.** Կան որոշ թվով բառեր, որոնք տրական ունին ում. իսկ բացառականը կազմվում է սովորաբար է ավելանալով ում վերջացած

տրականի վրա, որի ու-ն սղվում է. Հոգնակի ուղղականը և հայցակա-նը երբեմն նման են եզ. ուղղականին և հայցականին. օրինակ՝

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| Ուղ. | մեր | մերք |
| Հայց. | (զ)մեր | (զ) մերս |
| Սեռ. | մերոյ | մերոց |
| Տր. | մերոյ, մերում | մերոց |
| Բաց. | ի մերոյ, ի մերմէ | ի մերոց |
| Գործ. | մերով | մերովք |

**101.** *Այսպես հոլովվում են.*

1. Մի *թվականը՝ միոյ կամ միում, ի միոյ կամ ի միոջէ (տե՛ս § 99)։*

Ծան. *1. Նույն ձևով հոլովվում է կրկնված՝* մի մի, *(զ)մի մի, միոյ միոյ. միում միում, ի միոջէ միոջէ, որ նշանակում է՝* մէն մի, իւրաքանչիւր=ամեն մի, ամեն մեկը: *Օրինակ՝ Տանէին մի մի ի նոցանէ (Նրանցից ամեն մեկը) մարս երկուս կամ երիս։ Զմի մի ի նոցանէ ի ծածուկ քաշալերէր։ Առ մի փիղ հազար սպառազէնք։ Ըստ միոյ միոյ առաքինութեան պսակըն փառաց յօրինեցան։ Միում միում ի նոցանէ շնորհէր։ Միում միում կաշառ գաղտ խրէր։ Ի միոջէ միոջէ լուիցես։*

Մի մի *մակբայորեն գործածված նշանակում է և* մի առ մի, մի ըստ միոջէ=մեկ մեկ, մեկիկ մեկիկ, ջոկ ջոկ, *օրինակ՝ Եւ զի՛ մի մի ասիցեմ, միանգամայն ասացից։ Մի մի եկին։*

2. Միւս *(մեւս), միւսոյ, միւսում, ի միւսմէ, միւսք, միւսոց։*

Ծան. *2. Երբեմն գործ է ածվում* միւս եւս *ձևով, օրինակ՝ ի միւս ևս ի գլուխ տարւոյն (=Մյուս տարեգլխին ևս, կամ* մյուս *տարեգլխին էլ)։ Միւս ևս այլ կորիւն։ Առէք զմիւս ևս (=մյուսին էլ, մեկելին էլ)։ Զառաջին պարիսպն և զմիւսն ևս։—Մի... և միւս,— մի ... և միւս ևս, մի...միւս ևս -մի ... մի, -մի ... և մի ձևերը գործ են ածվում նաև թվարկության համար իբրև մեկ (մին)...մեկ էլ (մին էլ), կամ նախ ...ապա, նախ... և երկրորդ, մի ... և երկրորդ. օրինակ՝ Մի՝ (=մեկ՝) թողուլն չար (է), և միւս՝ (=մեկ էլ՝) երդնուլ։—* Միւս եւս *մակբայորեն նշանակում է նաև՝* մեկ էլ, մի անգամ էլ, դարձյալ:

3. Այլ, *այլոյ, այլում, յայլմէ կամ յայլմանէ, այլք, այլոց։*

4. Իւրաքանչիւր, *-րոյ, -րում, -րով. իւրաքանչիւրք կամ իւրաքան-չիւր, -րոց կամ -րից, կամ իւրաքանչիւրց, -րովք։*

Ծան. Իւրաքանչիւր, *ինչպես և* մէն մի, անցնիւր *կամ* անձնիւր *(անցնիւրոյ, անց-նիւրք, անցնիւրոց կամ անձնիւրից, անցնիւրց=յուրաքանչյուր), երբեմն նաև* երկաքան-չիւր *(երկաքանչիւրոյ, երկաքանչիւրոց կամ երկաքանչիւրից=երկուսն էլ, երկսից ամեն մեկը) հոդ չեն առնում և կարող են անփոփոխ ձևով գործածվել նաև թեք հոլովների ի-մաստով։ Աշխ. թարգմանվում են՝* յուրաքանչյուրն իր, ամենքն իրենց, ամեն մեկս մեր, ամե մեկդ ձեր *ևն. ձևերով։ Օրինակ՝ Մեկնեցան իւրաքանչիւր յեղբօրէ իւրմէ (=*ամեն մեկն *իր եղբորից)։ Ժողովեցէք իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում (=*ամեն մեկդ *ձեր կարողության կամ պիտույքի չափ)։ Դնել զարծաթն իւրաքանչիւր (փոխ. իւրաքանչիւրոց*

=ամեն մեկին իր) ի քրձի իւրում։ Հատուսցէ իւրաքանչիւր (փոխ. իւրաքանչիւրում=ամեն մեկին) ըստ գործս իւր։

5. Որ, որոյ, որում, յորմէ (կա և յորմանէ), որով, որք, որոց, որովք։

Որ բառն իբրև հարաբերական և հարցական՝ հոդ չի առնում։ Որ հարաբերականի հոգնակի ուղղական և հայցական որք, (զ)որս ձևերի փոխանակ գործ է ածվում և եզակի որ, (զ)որ:

6. Ստացական ածականները՝ իմ, քո, մեր. ձեր. իւր հոլովվում են ինչպես մեր: Կարող են և իբրև գոյական գործածվել անհոդ կամ ս, դ, ն, հոդերով՝ իմս, քոյդ, մերս, ձերդ, իւրն=իմը (իմս), քոնը (քոնդ), մերը, ձերը, իրենը նշանակությամբ։

Անվան հետ գործածված ժամանակ հոգնակի ուղղականը և հայցականը անփոփոխ են մնում։ Օրինակ՝ հարքն մեր. բանք իւր, բանք իմ, զբանս իմ. բայց մենակ՝ իմքս (=իմոնքս), յիմսս, մերքն, ի մերս (=մերոնք), իւրքն, յիւրսն. զքոյսն (=քոնոնք)։

7. Քո բառը երկու ձևով է հոլովվում՝ քո, քոյոյ, քոյում, ի քոյոյ, քոյով. քոյք, (զ)քոյս, քոյոց, քոյովք.—կամ՝ քո, քոյ, քում, ի քումէ (ի քումմէ), քով, քոց, քովք։

8. Ցուցական սեռականները՝ սորա, դորա. նորա, սոցա, դոցա, նոցա. օրինակ՝ նորա, նորայոյ, նորայում, նորայով. նորայք, զնորայս, նորայոց, նորայովք։ Նոցա ունի և նոցայցն, նոցայիւք ձևերը։

Ծան. Այս բառերը սովորաբար հոդ ստանալով՝ սորայս, դորայդ, նորայն, նոցայն= =սրանը, դրանը, նրանը, նրանցը (նոցանը), իբրև գոյական են գործածվում, բայց երբեմն իբրև ածական էլ են բանում. օրինակ՝ Զի նոցայոցն տիրեսցէ իշխանութեանց։ Ծանօթութիւն նոցայցն առաջի արկելոց գործոց։

9. Մի քանի ուրիշ բառեր, ինչպես՝ վերին. վերնոյ, վերնում. յետին. յետնոյ, յետնում. առաջին, առաջնոյ, առաջնում, յառաջնմէ, յառաջմէ. վերջին, վերջնոյ, վերջնում. հին. հնոյ, հնում, ի հնմէ. նոր, նորոյ, նորում. ձախ, ձախոյ, ձախում, ի ձախմէ. աջ. աջոյ, յաջմէ ևլն։

**102. Ներգոյական հոլով.**— Ում և ոյ վերջավորություններից ոյ ձևը գործ է ածվում սովորաբար իբրև սեռական, իսկ ում ձևը՝ իբրև տրական և հաճախ ի նախդրով ստանում է ներգոյական հոլովի իմաստը իբրև պատասխան ե՞րբ, ո՞ւր հարցերի. օրինակ՝ ի միւսում շաբաթուն. ի միւսում աւուրն. ի միւսում վայրի, ի նորումս, ի վերջնում, ի յետնում, յառաջնումն, ի հնումն։ Ներգոյականի իմաստով ում վերջավորությունն ունին նաև դասական թվականները, անցյալ դերբայները և ուրիշները. օրինակ՝ յառաջնում, յերկրորդում ամի, այլ և յերկրորդի, ի հանդերձելումն, յանցելումն ամի, ի գրեցելում, ի սրբումն, յերկրի անծանօթում. ի բարձրաւանդակումն կուռ եալով ի տեղւոջ. ևլն։

*Այս Ոյ հոլովման պատկանող ոչ իշ բառերի ներգոյականը կամ նըման է հայցականին, կամ կազմվում է ի վերջավորությամբ. օրինակ՝ դետին, գետնոյ, ի գետնի. գիշեր, գիշերոյ, ի գիշերի. գուբ, գբոյ, ի գբի. ջրհոր, ջրհորոյ, ի ջրհորի. փոր, փորոյ, ի փորի. մարմին, մարմընոյ, ի մարմնի. թուղթ, թղթոյ, ի թղթի. պատիւ, պատուոյ, ի պատուի. երազ, երազոյ, յերազի. պատիժ, պատժոյ, ի պատժի, ևլն. բերան, բերանոյ, ի բերան. գնալ, գնալոյ, ի գնալ և այլն։*

*Կան բառեր, որոնց ներգոյականը երկու ձևով էլ լինում է, թե հայցականի և թե տրականի, օրինակ՝ մէջ, միջոյ, ի միջի, այլև՝ ի մէջ։*

### 4. ԱՅ ՀՈԼՈՎՈՒՄ

**103.** *Այս հոլովման տրականը կազմվում է այ վերջավորությամբ. բացառականը նույն տրականն է ի նախդրով։ Ունի երկու շեղում: Առաջին շեղման տրականը կազմվում է ի վերջավորությամբ, բացառականը՝ է. իսկ երկրորդ շեղման տրականը կազմվում է ոյ վերջավորությամբ, բացառականը նույն տրականն է։ Գործիականն ու հոգնակին բոլորն էլ ա ձայնավորով են հոլովվում։ Օրինակ՝*

**Եզակի**

| | | Ի շեղում | Ո շեղում |
|---|---|---|---|
| *Ուղ.* | *Տիտան* | *աշխարհ* | *եկեղեցի* |
| *Հայց.* | *Տիտան* | *աշխարհ* | *եկեղեցի* |
| *Ս. Տ.* | *Տիտանայ* | *աշխարհի* | *եկեղեցւոյ* |
| *Բաց.* | *ի Տիտանայ* | *յաշխարհէ* | *յեկեղեցւոյ* |
| *Գործ.* | *Տիտանաւ* | *աշխարհաւ* | *եկեղեցեաւ* |

**Հոգնակի**

| | | | |
|---|---|---|---|
| *Ուղ.* | *Տիտանք* | *աշխարհք* | *եկեղեցիք* |
| *Հայց.* | *Տիտանս* | *աշխարհս* | *եկեղեցիս* |
| *Ս. Տ.* | *Տիտանաց* | *աշխարհաց* | *եկեղեցեաց* |
| *Բաց.* | *ի Տիտանաց* | *յաշխարհաց* | *յեկեղեցեաց* |
| *Գործ.* | *Տիտանաւք(-օք)* | *աշխարհաւք(-օք)* | *եկեղեցեաւք(-օք)* |

**104.** *Այս հոլովման համար պիտի իմանալ՝*

1. *Անխառն ա ձայնավորով հոլովվում են հատուկ անունների մեծ մասը, որոնք սովորաբար եզակի են հոլովվում. բայց իբրև հասարակ անուն առնված ժամանակ կարող են և հոգնակի ունենալ. օրինակ՝ Հայկ, Արամ, Տիգրան, Տրդատ, Սահակ, Մեսրոպ ևլն.—և մի քանի ուհի (ուհի) ածանցով կազմվածները՝ Տիգրանուհի (-ուհեայ), աստվածուհի, քրմուհի, վկայուհի, իշխուհի ևլն։*

2. Ի շեղման ձևով հոլովվում են շատ հասարակ անուններ և ածականներ, օրինակ՝ աշակերտ, բարեկամ, ընկեր, զինուոր, հովիւ, աւազան, մեղու, մրրիկ, պարտէզ, բազուկ, որդեակ, պատանեակ, սննեակ, նաւակ, ահեակ, հողեղէն, ոսկեղէն, հնդիկ, պարսիկ, եւն. անեղական, աչք, միտք, կամք, կառք, փառք, կեանք, տանջանք, զրկանք եւն.— և թվականներից՝ հազար, հազարի, ի հազարէ, հազարաւ, հազարաց, և բոլոր դասականները՝ բացի առաջին բառից, օրինակ՝ երկրորդ, երկրորդի, երկրորդէ, երկրորդաւ, երկրորդաց, նույնպես՝ երրորդ, չորրորդ, հինգերորդ եւն (տե՛ս § 102)։

Ո շեղման ձևով հոլովվում են ի վերջացած բազմավանկ բառերը սակավ բացառությամբ (§ 98. 5). օրինակ՝ այգի, կղզի, պատասխանի, մատանի, ծերունի, բարի, նմանի (=նման), սիրելի եւն. Նույնպես տի, անի ածանցներով կազմված հոգնականները՝ մանկտի, նամականի եւն. և անեզականները՝ կարծիք, ընթրիք, հարսանիք եւն։

Ծան. Կան ի վերջացած բազմավանկ բառեր, որոնք սովորաբար ո ձայնավորով են հոլովվում (§ 98. 1, 5), բայց երբեմն դրանց համար ևս պատահում են ա հոլովման ձևեր. օրինակ՝ քաղաքացի, քաղաքացւոց և քաղաքացեաց. հոգի, հոգւոց և հոգեաց. գօտի, գօտւոց և գօտեաց (գործիական նաև՝ գոտեամբ). եղբօրորդի, եղբօրորդւոց և եղբօրորդեաց. գործի, գործւով, գործւոց, գործւովք և գործեաւ, գործեաց, գործեօք։

**105.** Այս հոլովման համար ընդհանրապես պիտի նկատի ունենալ։

1. Բառավերջի է, ի ձայնավորները հոլովական ա ձայնավորից առաջ դառնում են ե, որ հաջորդ ա-ի հետ կազմում է եա, եաւ(f)=եօ(f) երկբարբառ. օրինակ՝ Գայիանէ, Գայիանեայ, Գայիանեաւ. Հռիփսիմէ, Հռիփսիմեայ. Հեղինէ, Հեղինեայ. Կրետէ, Կրետեայ. Տիգրանուհի, Տիգրանուհեայ. քրմուհի, քրմուհեայ. աստուածուհի, աստուածուհեայ. Եսայի, Եսայեայ,—նույնպես անեզականները՝ կարծիք, կարծեաց, կարծեաւք =կարծեօք. հարսանիք, հարսանեաց, հարսանեօք. չրօրհնէք, չրօրհնեաց:

2. Հատուկ անունների հունական իոս, էոս, էս վերջերի ոս, ս մասերը թեք հոլովների մեջ դուրս են ընկնում, իսկ ի, է ձայնավորները հոլովական ա-ի հետ կազմում են երկբարբառ. օրինակ՝ Տիբերիոս, Տիբերեայ. Տիմոթէոս, Տիմոթեայ. Հերակլէս, Հերակլեայ. Հողոփեռնէս, Հողոփեռնեայ. Ոստակէս, Ոստակեայ։ Երբեմն այս ձևով սեռ.-տր. ունին և պարզ ոս վերջացածները, օրինակ՝ Կադմոս, Կադմեայ. Դամասկոս, Դամասկեայ. Փիլիպպոս, Փիլիպպեայ։ Հաճախ այս անունների վերջավորությունը դուրս է ընկնում. օրինակ՝ Հերակլ, Տիբեր, ավելի թեք հոլովների մեջ, օրինակ՝ Արիստակէս, Արիստակայ. Վրթանէս, Վրթանայ. Հիպողիտէս, Հիպողիտայ. Կեկրոփս, Կեկրոպայ. Ղուկաս, Ղուկայ։

Ծան. Այս կարգի անուններից մի քանիսի համար գործ է ածվում առանձին կոչական ձև՝ հունարենի ազդեցությամբ, օրինակ՝ Ո՛վ Պետրէ (Պետրոս). Պաւղէ՛, (Պօղոս). Փիլիպպէ՛, Տիմոթէէ՛, Իգնատիէ՛ եւն։

3. Իա, ա(յ) վերջացած հատուկ անունների սեռական-տրականը կազմվում է յ ավելանալով, իսկ գործիականը ւ ավելանալով։ Այս դեպքում իա դառնում է եա. օրինակ՝ Գալիլիա, Գալիլեայ, Գալիլեաւ. Յովսիա, Յովսեայ. Եղեսիա, Եղեսեայ. Յուդա, Յուդայ. Աննա, Աննայ։

Ծան. Այս անունները գնում են և ի հոլովման տակ։ Իա վերջն իբրև եայ երկբարբառ դառնում է է. օրինակ՝ Յուդայ, Յուդայի, Աննա, Աննայի. Գալիլիա, ի Գալիլէէ։

4. Ո շեղման բառերի (§ 104. 3) վերջի ի ձայնավորը ո-ից առաջ դառնում է ւ, իսկ ա-ից առաջ ե. օրինակ՝ այգի, այգւոյ, այգեաւ, այգեաց, այգեաւք, այգեօք (տե՛ս և § 98. 5)։— Ծառաւի, ծաւի, կտաւի. արծուի, աստւի և նման բառերի մեջ վերջի ի-ն դուրս է ընկնում՝ ծառաւոյ, արծուոյ ևն։

**106. Ներգոյական հոլով:** Ո շեղման բառերը երբեմն սեռական-տրականի համար ունին և ոջ կամ ում ձևը որ ի նախդրով սովորաբար գործ է ածվում իբրև ներգոյական. օրինակ՝ ի կղզւոջ, ի ջրւոջ, ի տեղւոջ, ի տարւոջ, յայգւոջ, յեկեղեցւոջ. ի վայրի դալարւոջ.—այսպիսում, այնպիսում։ Նոյնպիսում շնորհի արժանաւորեալ (տե՛ս և §§ 99, 102)։ Զօրավարն Հայոց Մեծաց... հարեալ անդէն ի տեղւոջն զախոռապետն արքային պարսից գլխատէր... յայլոց ի տեղի և ի նոցուն հրապարակի։

Երբեմն սրանց բացառականը կազմվում է ոջ վերջավորության վրա է ավելանալով, ի տեղւոյ կամ ի տեղւոջէ, ի տարւոյ կամ ի տարւոջէ։ Ոջ վերջավորությամբ կազմվում է երբեմն և ուրիշ բառերի ներգոյական՝ դիպահ, ի դիպահոջ. դիւր, ի դիւրի կամ ի դիւրոջ։

## ԿԱՆՈՆԱՎՈՐ ՀՈԼՈՎՈՒՄՆԵՐ

### Փոփոխվող բնեռով

### 5. ԱՆ ՀՈԼՈՎՈՒՄ

**107.** Այս հոլովման սեռական-տրականը, որ ունի ան կամ եան վերջը, կազմվում է երկու ձևով. կամ ուղղականի վերջի ն հնչյունից առաջ մտնում է ա, իսկ շեղման մեջ ի, կամ ուղղականի վրա ավելանում է ան կամ եան վերջը։ Բացառականի է և գործիական բ վերջավորությունները դրվում են տրականի վրա։ Բ-ից առաջ վերջի ն դառնում է մ: Հոգնակի ք-ն ավելանում է եզակի ուղղականի վրա, միայն վերջի ն-ից առաջ մտնում է ու, ա, շեղման մեջ և ի: Օրինակ.

Եզակի

| | | |
|---|---|---|
| Ուղ. | դուռն | անձն |
| Հայց. | դուռն | անձն |
| Սեռ. Տր. | դրան | անձին |
| Բաց. | ի դրանէ | յանձնէ |
| Գործ. | դրամբ | անձամբ |

Հոգնակի

| | | |
|---|---|---|
| Ուղ. | գրունք | անձինք |
| Հայց. | գրունս | անձինս |
| Սեռ. Տր. | գրանց | անձանց |
| Բաց. | ի գրանց | յանձանց |
| Գործ. | գրամբք | անձամբք |

**108. Ան** ձևով հոլովվում են.

1. Ն(Ն) վերջացած շատ բառեր, որոնց վերջի Ն հնչյունն աշխարհաբարում դուրս է ընկել, օրինակ՝ ակն, արեգակն, փայլակն, կայծակն, հիմն (հիման), ջերմն, որդն, շուրթն, պորտն. հիւսն, դիակն, երկն, բիրտն, սկիզբն, ձուկն, մուկն, խուռն (խռան), գագաթն, արմուկն, կըռուկն, թէկն (թիկան), այծեամն, եղեամն, աղեղն, եղէգն (եղեգան), ծիծառն (ծիծառան, ծիծեռն, ծիծռան), նուռն (նռան). ասեղն (ասղան, ասեղան). փայծաղն (փայծղան կամ փայծաղան), խլուրդն (այլ և՝ խլուրդ) ևլն։ Գեղարդն, գեղարդան, գեղարդանց ձևերի հետ ունի և գեղարդեան, գեղարդեանց։

Այսպես և բոլոր ումն ածանցով կազմվածները՝ շարժումն, շարժման, ի շարժմանէ, շարժմունք ևլն։

Դուռն, ամառն, ձմեռն, լեառն բառերի մեջ ռ բաղաձայնը Ն-ից հեռանալով դառնում է ր. օրինակ՝ դրան, ամարան, ձմերան, ձմերունք, լերին։—Ամառն, ձմեռն երբեմն պահում էլ են իրենց ռ հնչյունը։

Դուռն հոգնակին ունի և դուրք, դրաց, դրօք ձևերը։

Ունկն բառի համար՝ մարդու ականջի իմաստով՝ իբրև հոգնակի գործ է ածվում ականջք բառը, իսկ ունկունք նշանակում է կանթ կժի, կաթսայի ևլն։

Ակն իբրև աղբյուրի ակ և թանկագին քար՝ հոգնակին ունի ակունք և ականք. իսկ իբրև աչք՝ միայն ակունք, որի փոխանակ, սակայն, սովորաբար աչք բառն է գործածվում։

Սերմն, կողմն հոգնակի ունին սերմունք, կողմունք կամ սերմանք, կողմանք: Կա և սերմանիք (սերմանեաց) ևլն։

2. Ութիւն ածանցով կազմված բառերը՝ սրբութիւն ևլն. նաև արիւն, անկիւն, կորիւն, հերիւն, արդիւն, քրթմնջիւն, ձիւն, սիւն, որքին (որքիւն), ստին, որ ունին սեռ.-տր. սրբութեան, արեան, անկեան, կորեան, արդեան, հերեան (այլ և հերիւնոյ կամ հիրնոյ, հերիւնի). քըրթմընջեան, ձեան, սեան, որքեան, ստեան։ Բացառականի մեջ եա-ն դառնում է ե,—ի սրբութենէ, յարենէ ևլն։ Հոգն. ուղղականը կազմվում է ք ավելանալով՝ սրբութիւնք, արիւնք, սիւնք։—Քրթմնջիւն բացառական ի քրթմնջենէ ձևի հետ ունի և ի քրթմնջանէ։ Ձիւն, սիւն ունին՝ ի ձեանէ (կամ ի ձիւնէ), ի սեանէ (կամ ի սիւնէ)։

3. Ստին, ստեան, ի ստենէ, ստինք, ստեանց։

4. Տուն, շուն բառերը, հոլովվում են՝ տան, տամբ, ի տանէ. տունք, տանց, տամբք. շուն, շան, ի շանէ ևլն։

5. Անուն, ձեղուն հոլովվում են՝ անուան, յանուանէ, անուամբ, անուանք, անուանց. ձեղուն, ձեղուան ևլն։ Հոգն. ուղղ. ձեղունք:

6. Պաշտօն (պաշտաւն) հոլովվում է՝ պաշտաման, ի պաշտամանէ, պաշտամամբ, պաշտամունք, պաշտամանց, պաշտամամբք։

**109. Ան վերջավորությունն** ավելանում է հետևյալ բառերին.

1. Գարուն, աշուն—գարնան, ի գարնանէ, գարնամբ, գարունք, գարնանց, գարնամբք,—աշնան, յաշնանէ, աշունք ևլն։

Ծան. Գարուն, աշուն, ամառն, ձմեռն բառերի փոխանակ գործ են ածվում և ածականները՝ աշնային, աշնայնի, աշնանի. գարնային, գարնայնի, գարնանի. ամարայնի, ամարանի. ձմերային, ձմերայնի, ձմերանի, որոնք հոլովվում են աշնայնոյ կամ աշնանւոյ, ձմերայնոյ, գարնայնոյ, ամարայնոյ ևլն։

Ամարանի, ամարային, ձմերանի, ձմերայնի, գարնայնի կամ գարնանի, աշնանի ձևերը նաև ներգոյականի իմաստ ունին՝ իբրև ամառը, ձմեռը, աշնանը, գարնանը։ Յամարայինսն=ամառները (ներգոյական իմաստով)։

2. Խուրձ, աղջիկ, մանուկ, ծաղիկ, կորեակ և շատ՝ նվազական իկ ածանցով կազմվածներ՝ Յուսիկ, Աստղիկ, Սաթենիկ, Ջուիկ (Ջուկան=Ջըկան), շնիկ, խցիկ, ընչիկ, փոքրիկ, կարճիկ ևլն. որոնք ունին՝ խըրձան, խրձունք. աղջկան, աղջկունք. մանկան, մանկունք ևլն։ Ծաղիկ՝ ծաղկան, ծաղկամբ, ծաղկունք, ծաղկանց ձևերի հետ ունի և՝ ծաղկի, ծաղկաւ, ծաղիկք, ծաղկաց կամ ծաղկոյ, ծաղկոց ձևերը։ Իսկ կորեակ ունի և կորեկոյ ձևը։

3. Մարդիկ, մարդկան, ի մարդկանէ, մարդկամբ կամ մարդկաւ,—եզակի ձևով հոգնական իմաստ ունի։ Մարդ եզակին հոլովվում է՝ մարդոյ, մարդով, որ ունի և կանոնավոր հոգնակի՝ մարդք, մարդոց, մարդովք։

**110. Եան վերջավորությունն** ավելանում է հետևյալ բառերին.—տեսիլ, տեսլեան, ի տեսլենէ, տեսլեամբ, տեսիլք, տեսլեանց, տեսլեամբք։—Հանգիստ, հանգստեան,—այլև հանգստի, հանգստիւ. հոգն. հանգիստք. հանգստից։—Գովեստ, գովեստեամբ, այլև, գովեստի, գովեստք, գովեստից։—Փախուստ, փախստեան, ի փախստենէ, փախըստեամբ,—այլև փախստի, փախստիւ,—հոգն. փախուստք։—Կորուստ, կորստեան, ի կորստենէ, կորստեամբ, կորուստք։—Գալուստ գալըստեան, գալստեանց։—Թաքուստ, թաքստեան, թաքստեամբ, այլև թաքըստի։—Պահուստ, պահստեամբ։—Ծնունդ, ծննդեան, ի ծննդենէ, ծնընդեամբ, ծնունդք, ծննդեանց, ծննդեամբք, սովորաբար՝ ծննդոց, ծնընդովք։—Սնունդ, սննդեան, սննդեանց, այլև սննդի, սննդոց։—Խորհուրդ, խորհրդեան, խորհրդեամբ, այլև խորհրդոյ, խորհրդոց, խորհրդի, խորհըրդիւ. հոգն. խորհուրդք։—Ժողովուրդ, ժողովրդեան, ի ժողովրդենէ,

ժողովրդեամբ. ժողովուրդք, ժողովրդեանց. այլև ժողովրդի, ի ժողովըրդէ, ժողովրդոյ, ժողովրդովք։—Ամիս, ամսեան, յամսենէ, ներգոյական՝ յամսեան, այլև ամսոյ, ամսով, հոգն. ամիսք, ամսոց, ամսովք։— Շաբաթ, շաբաթեան, սովորականն է շաբաթու։—Ժամանակ, ժամանակեան սովորաբար՝ ժամանակի, ժամանակաւ. ժամանակք, ժամանակաց։—Սերկ (այսօր), սերկեան։—Վաղիւ, վաղուեան, վաղուենէ, այլև վաղուի, ի վաղուէ կամ ի վաղնջենէ։ Այսպես նջ հավելմամբ նաև՝

Տիւ, տունջեան, ի տունջենէ, տունջեամբ (արտասանվում է՝ տուընջեան), տուով. ներգոյական՝ ի տուէ, ի տունջեան, հոգն. տիւք, տիւս։ Այսպես և միշտ, մշտնջեան (=մշտական)։

**111.** Մահ հոլովվում է ուան վերջավորությամբ. մահուան, ի մահուանէ, մահուամբ, մահուանք կամ մահունք, մահուանց, այլև ու հոլովման ձևով մահու, մահք, մահուց, մահուք։

**112.** Ին շեղման ձևով հոլովվում են՝

1. Որոշ թվով երկավանկ (ը)ն վերջացած բառեր, որ են Ողն. ողին, ողունք։—Մասն, մասին, մասունք։—Մատն, մատին, ի մատանէ, մատունք։— Կամն, կամին, կամունք։— Ափն, ափին կամ ափան, ափունք։ — Բուռն, բռին կամ բռան, բռունք։—Թոռն, թոռին, ի թոռանէ, թոռունք կամ թոռանք։— Անձն. անձին, անձինք կամ անձունք։ Բարդ բառերը՝ միանձն, դատարկանձն, վեհանձն, մեծանձն ունին հոգն. միանձունք, դատարկանձունք, վեհանձունք, մեծանձունք։— Ազն, ազին, ազինք կամ ազունք (վերջինս ազնիվ, այսինքն ազնվական մարդիկ իմաստով)։ Բարդ բառերը՝ դիւցազն (դիցազն), դիւցազին կամ դիւցազան, դիւցազունք. վեհազն. վեհազին, վեհազունք կամ վեհազինք. Հայկազն, հայկազին, հայկազունք։— Հարսն, հարսին, ի հարսանէ, կամ ի հարսնէ, հարսինք կամ հարսունք։ Յաւերժահարսն, յաւերժահարսունք։— Գառն. գառին, ի գառանէ կամ ի գառնէ, գառինք։— Բեռն, բեռին, ի բեռանէ կամ ի բեռնէ, բեռինք։ Մեծաբեռն, մեծաբեռունք. ծանրաբեռն, ծանրաբեռինք։— Եզն. եզին, յեզանէ, եզինք։— Եղն. եղին, յեղանէ, եղինք։— Դաշն, դաշին, դաշինք։— Խաշն, խաշին, ի խաշանէ կամ ի խաշնէ, խաշինք։— Նեռն, նեռին, ի նեռանէ, նեռինք։— Դառն, դառին, դառինք, այլ և դառնի, դառինց։— Սառն, սառին, սառանց։— Կայթն, կայթին, կայթամբ, կայթանց։— Դոխն, դոխին, դոխամբ։— Լեառն. լերին, ի լեռնէ, լերամբ, լերինք, լերանց, լերամբք (տե՛ս § 103. 1)։

2. Թվականներից՝ Եօթն. եօթին կամ եօթան, եօթամբ, եօթանց, եօթամբք, այլ և եօթեան, եօթեանք, եօթեամբք. նույնպես՝ եօթնի, եօթնիւ, եօթնից։— Տասն, տասին, տասունք, տասանց. այլ և տասնից։ Այսպես և եօթնետասն, ութետասն, իննետասն ունին՝ եօթնևտասին, եօթնևտասամբ, եօթնևտասանք, եօթնևտասանց ևլն։

3. Ձեռն. ձեռին, ձեռամբ, ի ձեռանէ։ Հոգնակին հազվադեպ՝ ձեռինք, ձեռանց. սովորաբար՝ ձեռք, ձեռաց, ձեռօք։ Առատաձեռն լինում

*է՝ առատաձեռնի, առատաձեռնից։* Ոտն, *ոտին (երբեմն՝ ոտան), ոտամբ, յոտանէ։ Հոգն.* ոտք, *ոտից, ոտիւք, երբեմն՝ ոտաց։*

### *6. ԵՐ, ԵՂ ՀՈԼՈՎՈՒՄ*

**113.** *Այս հոլովման սեռական-տրականը կազմվում է ուղղականի (բնի) վերջի* r, ղ *բաղաձայններից առաջ* ե *մտնելով։ Բացառականի է. գործիականի բ վերջավորությունները, ինչպես և հոգնականի* f-*ն ավելանում են տրականի վրա։ Օրինակ՝*

| | Եզակի | | Հոգնակի | |
|---|---|---|---|---|
| *Ուղ.* | *տարր* | *աստղ* | *տարերք* | *աստեղք* |
| *Հայց.* | *տարր* | *աստղ* | *տարերս* | *աստեղս* |
| *Սեռ. Տր.* | *տարեր* | *աստեղ* | *տարերց* | *աստեղց* |
| *Բաց.* | *ի տարերէ* | *յաստեղէ* | *ի տարերց* | *յաստեղց* |
| *Գործ.* | *տարերբ* | *աստեղբ* | *տարերբք* | *աստեղբք* |

**114.** *Այսպես հոլովվում են սակավաթիվ* r. ղ *վերջացած բառեր, որոնք մեծ մասամբ ուրիշ հոլովումների տակն են գնում, կամ թե՝ հոգն. սեռ.-տր. ունին* աց, *գործիականն՝* աւf *(-օք) ձևը։ Օրինակ՝*

Տարր *ունի նաև տարրոյ, տարրի, տարրից. հոգն. տարերաց, տարերօք ձևերը։—*Աստղ *ունի հոգն. նաև աստեղունս, աստեղաց, աստեղօք։—*Կայսր, *կայսեր, կայսերբ, կայսերք,—կայսերաց, կայսերօք։—* Ոսկր, *ոսկեր, ոսկերք, ոսկերաց, ոսկերօք։—* Դուստր, *դստեր, ի դստերէ, դստերբ, դստերք, դստերց,—այլ և դստերաւ, դստերաց, դըստերօք։—*Ուստր, *ուստեր, ուստերաց։—*Տայգր, *տայգեր, տայգերաց։—* Համր, *համեր, համերք, համերց։—*Եզր, *եզեր, եզերբ, եզերք, եզերբք, —եզերաց, եզերօք, եզերովք։—*Ծովեզր, *նաև ծովեզերի, ծովեզերաւ։—* Ազդր, *ազդեր, ազդերք, ազդերաց։—*Լիտր, *լտեր, լտերք, լտերց։—*Կողր, *կողեր, կողերք, կողերց, կողերաց։—*Ետղ, *ետեղ։—*Կուպր, *կպեր, կպերբ կամ կպրոյ, կպրով։—*Անգղ, *անգեղ, անգեղք, անգեղց,—անգեղաց։—*Կոճղ, *կոճեղ, կոճեղք։—*Արկղ, *արկեղ, արկեղաց։—*Սկուտեղ *կամ սկտեղ, սեռ.-տր. նույնպես՝ սկուտեղ կամ սկտեղ, գործ. սկտեղբ, սկտեղբք, այլ և սկուտեղի (սկտեղի), սկուտեղաց, սկուտեղօք։*

Աղբիւր *(աղբեւր), աղբեր, յաղբերէ, աղբերբ. աղբերք, աղբերց, աղբերբք, այլ և աղբերաւ, աղբիւրք, (աղբեւրք), աղբիւրաց կամ աղբերաց, աղբերօք։—*Եղջիւր, *(եղջեւր), եղջեր, եղջերբ, եղջերք, եղջերց, եղջերբք, այլև և եղջիւրիւ կամ եղջերիւ, եղջիւրք, եղջերաց, եղջերօք կամ եղջերովք։—*Ալիւր *(ալեւր), ալեր, այլ և ալիւրոյ. հոգն. ալիւրք։—*Բլուր, *բլեր, բլերբ. սովորական՝ բլրոյ կամ բլրի, բլրով. բլուրք, բլրոց։* Աղտիւր *կամ եղտիւր (աղտեւր, եղտեւր), եղտեր։*

# ԱՆԿԱՆՈՆ ՀՈԼՈՎՈՒՄՆԵՐ

## Փոփոխվող բներով

**115. Այր, տէր։**

| | Եզակի | | Հոգնակի | |
|---|---|---|---|---|
| *Ուղ.* | *այր* | *տէր(*տի-այր)* | *արք* | *տեարք* |
| *Հայց.* | *այր* | *տէր* | *արս* | *տեարս* |
| *Սեռ. Տր.* | *առն.* | *տեառն* | *արանց* | *տերանց, տեարց* |
| *Բաց.* | *յառնէ* | *ի տեառնէ* | *յարանց* | *ի տերանց, ի տեարց* |
| *Գործ.* | *արամբ* | *տերամբ* | *արամբք* | *տերամբք* |

**116.** Այր *բառի պես հոլովվում են և* ճեռայր. սկեսրայր *(այլև սկեսրայրի, ի սկեսրայրէ)։* Տէր *բառի պես՝* տանուտէր *(նաև տանուտերաց, տանուտերօք), պարտատէր (նաև պարտատիրի, պարտատիրաց)։*

**117. Հայր, մայր, եղբայր։**

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *մայր* | *մարք* |
| *Հայց.* | *մայր* | *մարս* |
| *Սեռ. Տր.* | *մօր* | *մարց* |
| *Բաց.* | *ի մօրէ* | *ի մարց* |
| *Գործ.* | *մարբ* | *մարբք* |

**118.** *Այսպես հոլովվում են՝ հայր, եղբայր, այլ և բարդ բառերը՝* նախամայր, նախահայր, վանահայր *և այլն. Հայր հոգն. սեռական-տրական և բացառ. ունի նաև՝* հարանց, *ի հարանց, իսկ գործ. նաև հարամբ, հարամբք։*

**119.** Քոյր *(հօրաքոյր, մօրաքոյր և այլն.)։*

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *քոյր* | *քորք (քոյրք, քուերք)* |
| *Հայց* | *քոյր* | *քորս (քեռս)* |
| *Սեռ. Տր.* | *քեռ(քոր, քուեր)* | *քերց* |
| *Բաց.* | *ի քեռէ* | *ի քերց* |
| *Գործ.* | *քերբ* | *քերբք* |

**120. Օր (աւր)**

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *աւր (օր)* | *աւուրք* |
| *Հայց.* | *աւր (օր)* | *աւուրս* |
| *Սեռ. Տր.* | *աւուր* | *աւուրց* |
| *Բաց.* | *յաւրէ (յօրէ)* | *յաւուրց* |
| *Գործ.* | *աւուրբ* | *աւուրբք* |

**121.** *Այսպես և* հասարակօր: Օր *ունի և* ի *հոլովման պես* օրի *ձևը՝ առ օրին, նոյն օրին, սոյն օրին։*

**122.** *Մի քանի* ր *վերջացած բառեր ևս կանոնավոր ձևերի հետ ունեին նաև* մայր, քոյր, օր *բառերի պես կազմված անկանոն ձևեր, այն է՝ գործիականի* բ *և հոգն. տրականի* ց *վերջավորությունները ավելանում են անմիջապես ուղղականի վրա. այսպես* հուր *ունի գործ.* հրով *և* հուրբ, *հոգն.* հուրբք. ջուր, հանուր, ընդհանուր *ունին* ջուրբ, ջուրբք, ջուրց. հանուրբ, հանուրբք, հանուրց. ընդհանուրբ, ընդհանուրբք, ընդհանուրց,— *սովորական՝ ջրով, ջրոց. ընդհանրով, ընդհանրոց կամ ընդհանրից։ Նույնպես՝ իւրաքանչիւրից. անձնիւրց (§ 101. 4. ծան.)։* Ձեռն *բառի* ձեռ *բնից գործ.* ձեռբ *կամ* ձեռք *(=ձեռամբ), որից ձեռբակալ, ձեռբազատ, ձեռբասուն ևլն։*

*Այսպես և ներքևում (§§ 123, 124) դրվածների հոգն. սեռական-տրականը կազմվում է միայն* ց *տառով, որ ավելանում է* ան, եան, այ, եայ, ոյ *ածանցների վրա։*

**123. Կին, տիկին։**

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *կին* | *կանայք* |
| *Հայց.* | *կին* | *կանայս* |
| *Սեռ. Տր.* | *կնոջ* | *կանանց, կանաց* |
| *Բաց.* | *ի կնոջէ* | *ի կանանց, ի կանաց* |
| *Գործ.* | *կանամբ, կնաւ* | *կանամբք* |

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *տիկին* | *տիկնայք* |
| *Հայց.* | *տիկին* | *տիկնայս* |
| *Սեռ. Տր.* | *տիկնոջ* | *տիկնանց, տիկնայց, տիկնաց* |
| *Բաց.* | *ի տիկնոջէ* | *ի տիկնանց, ի տիկնայց, ի տիկնաց* |
| *Գործ.* | *տիկնամբ, տիկնաւ* | *տիկնամբք, տիկնաւք (-օք)* |

**124. Կին, տիկին** բառերի հոգնականի պես հոլովվում են.

1. Այք, եայք, անք հոգնականածանցով կազմվածները՝ աղախին (եզ. սեռ. տր. աղախնոյ), հոգն. ուղղ. աղախնայք, աղախնեայք. հայց. աղախնայս, աղախնեայս. սեռ. տր. աղախնանց, աղախնայց, աղախնեայց, աղախնաց։ Պառն, միայն հոգն. ուղղ. պառնայք:—Նու, նուոյ, նուով կամ նուաւ. նուք, նուոց, այլ և նուանք, նուանց։

2. Եայք, այք ածանցներով կազմվածները, որ ցույց են տալիս մի անձի հետևողներ կամ մի երկրի ազգեր, բնակիչներ, տեղացիներ, համապատասխան ցի ածանցին, օրինակ՝ հայաստանեայք (հայաստանցիք), ասորեստանեայք, արևելեայք, միջերկրեայք կամ միջերկրայք, ծովեզերայք, հայկազնեայք, բահաղիմայք, որ ունին սեռ.-տր. հայաստանեայց կամ հայաստանեաց, գործ. հայաստանեօք։ Ապագա, ակամա, դուզնաքեայ բառերն ևս այս կարգի ածանցվածների նման հոգն. սեռ.-տրականն ունեն՝ սովորական ապագայից, ակամայից, դուզնաքէից ձևի հետ նաև ապագայց, ակամայց, դուզնաքեայց, դուզնաքեօք (եզ. դուզնաքէի, դուզնաքէիւ)։

3. Եանք, անք ածանցներով կազմվածները, որ հոգնակի հավաքական իմաստով ցույց են տալիս մի տոհմի կամ անձի վերաբերյալ մարդիկ կամ հետևողներ. օրինակ՝ Ղևոնդեանք, Ղևոնդեանց. Ատոմեանք, Ատոմեանց. Վարդանանք, Վարդանանց. Մարեմանք, Մարեմանց. Եպիկուրեանք, Եպիկուրեանց։ Ամենայն բառի հոգն. սեռ.-տրականը սովորական ամենայնից ձևի հետ լինում է նաև՝ ամենայնց։

4. Գահոյք, բարոյք, պարտոյք (եզակի՝ պարտոյ), սարոյք (եզակի՝ սարոյ) սովորական գահոյից, բարոյից, պարտոյից, սարոյից ձևերի հետ ունին երբեմն և գահոյց, բարոյց, պարտոյց, սարոյց։

**125. Եան և եայ (այ)** ածանցները հաճախ փոխանակում են իրար, իսկապես նույն ածանցն են տարբեր ձևերով. օրինակ՝ արևելեայ, արևելեան. հայկազնեայ, հայկազնեան. գունեայ, գունեան. տասնամեայ, տասնամեան ևլն։

Եան=եայ նույն հոլովական ածանցն է, որ տեսնում ենք եան հոլովական ձևի մեջ (§ 110). ուստի և դրանցով կազմված բառերը եզակիում սովորաբար անփոփոխ են մնում. մի քանի բառեր միայն հոլովվում են ի կամ ոյ հոլովման ձևով (§ 94. 1) օրինակ՝ մամիկոնեան, մամիկոնենի կամ մամիկոնենոյ, մամիկոնենիւ. հոգն. մամիկոնեանք, մամիկոնեանց կամ մամիկոնենից. բայց և մամիկոնէի, մամիկոնէիւ, մամիկոնէից (մամիկոնեայ ուղղականից. ինչպես՝ միջօրեայ, միջօրէի. պաշտօնեայ, պաշտօնէի, քրիստոնեայ, քրիստոնէի բառերը)։ Տասնամեան, տասնամենի, տասնամենից կամ տասնամեայ, տասնամէի. տասնամէից,—տասնամսեայ, տասնամսէի, տասնամսէից։ Նույնպես՝ երկեմեան (երկամեայ), երեմեան (եռամեայ), եօթնամեան (եօթնամեայ), քսանամեան, հարիւրամեան ևլն։

*Այսպես հոլովվում են նաև* որեայ. որայ *հոգնական ածանցով կազմվածները (§ 86. 4). վանորայ կամ վանորեայ (=վանքեր, վանքցիներ), վանորայոյ, վանորայով, վանորայք կամ վանորեայք, վանորայց, վանորեայց, վանորեաց կամ վանորէից։ Արտորայ, արտորայի կամ արտորայոյ, արտորայք, արտորայից, արտորայոց,—այլև արտորեայ, արտորէի, արտորեայք, արտորէից։*

**126.** Դիք *(անեզական=աստված, աստուածներ), հոլովվում է՝ դիք, զդիս, դից, դիօք։*

**127.** Գիւղ *(գեաւղ, գեօղ, դեւղ, գեղ), սեռ.-տրական՝ գեղջ, (գեաւղջ, դեւղջ), բացառ. ի գեղջէ։ Գործիականն և հոգնակին ի հոլովման ձևով՝ գիւղիւ, գիւղք (գեաւղք, գեւղք), գիւղից (գեաւղից), գիւղիւք։*

**128.** *Առանձին ձևով հոգնակի ունին և ներքևում գրած մի քանի* (ը)ր, (ը)ն *վերջացած բառեր, որոնց եզականի մեջ* ր *տառը դուրս է ընկնում, ինչպես* ծաղր, ասր, մեղր *բառերի մեջ (§ 96. 3), իսկ հոգնականի մեջ առնում են* ունք. *օրինակ՝*

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *փոքր* | *փոքունք* |
| *Հայց.* | *փոքր* | *փոքունս* |
| *Սեռ. Տր.* | *փոքու* | *փոքունց* |
| *Բաց.* | *ի փոքուէ* | *ի փոքունց* |
| *Գործ.* | *փոքու* | *փոքումբք* |

**129.** *Այսպես հոլովվում են նաև՝*

Ծունր, *ծնու, ծունունք, ծնունց, ծնումբք։—* Քաղցր, *քաղցու (կա և քաղցուի, քաղցրի), քաղցունք, քաղցունց, գործ. քաղցուք։—* Մանր, *մանու, մանունք, մանունց։—* Թանձր, թանձու *(կա և թանձրու, թանձրոյ), թանձունք (կա և թանձրունք, թանձրոյք)։—* Նուր, *անօսր, անօսրի, անօսրից, բայց և նօսուք, անօսունք (նաև անօսրունք)։*

Յոգն, *յոգնակի՝ յոգունք, յոգունց, յոգումբք։*

Ինն, ընճի, ընճիւ, ընճից, ընճիւք. *բայց և* ինունք. *ինունց, ինումբք (§ 94. 4)։*

## *ՓՈԽԱՆՑՈՒՄ ՀՈԼՈՎՈՒՄՆԵՐԻ ՄԵՋ*

**130.** *Կան բառեր, որոնց եզակին մի հոլովման տակ է գնում, իսկ հոգնակին՝ մի ուրիշ. կամ մի հոլովը մի ձևով է կազմվում, մյուսներն՝ ուրիշ։ Կան բառեր էլ, որոնք հոլովվում են երկու, երբեմն և երեք հոլովման ձևով, կամ թե այս ու այն հոլովները միայն ունին մի քանի տեսակ ձևեր։ Այսպիսի փոխանցումները հոլովումների խմբերի մեջ՝ մեծ մասամբ հետագա ժամանակներում են երևան գալիս և տարբեր բարբառների ազդեցության արդյունք են։ Այդպիսի մի քանի բառեր դրված են վերևում. կարևոր է նկատի ունենալ և հետևյալները.*

**131. Ձայնավոր և բաղաձայն հոլովումների փոխանցում.**— Ծունգն կամ ծունգ, *ծնգան, ծնգամբ,— ծունգք, ծնգաց, ծնգօք*։ Բարձր, *բարձու, ի բարձուէ, բարձունք, բարձանց, բարձամբք*։ Երէց, *երիցու կամ երիցոյ, յերիցուէ. գործ. երիցու կամ երիցամբ,— երիցունք, երիցանց, երիցամբք*։— Պառաւ, *պառաւոյ,— պառաւունք, պառաւանց*։ Քար, *քարի, քարիւ կամ քարամբ,—քարինք, քարանց, քարամբք*։ Արտևան, *արտևանի, արտևանաց,—արտևանունք, արտևանանց (եզակին նշանակում է և սարի գլուխ)*։— Սրուն, *սրունք, սրունից, այլ և սրանց, սրուանց, կամ սրունկ(ն), սրնկունք, սրնկանց*։ Ճիրան, *ճիրանի, ճիրանաց. —ճիրանունք, ճիրանանց, ճիրանամբք*։ Խոնջան, *խոնջանի կամ խոնջանոյ,—խոնջանունք, խոնջանանց*։— Կանթեղ, *կանթեղի, կանթեղաց,— այլև կանթեղամբ, կանթեղամբք*։—Ողջ, *ողջոյ, ողջոց կամ ողջի, ողջաց, այլ և ողջամբ*։—Անդրանիկ, *անդրանկան, յանդրանկանէ—այլ և անդրանկի, յանդրանկէ, անդրանկաւ, անդրանկաց*։—Հողմ, *հողմն, հողմոյ, հողմով,—հողմունք, հողմոց*։ Որմ, *որմն, որմոյ, որմք կամ որմունք, որմոց*։—Գորտ, *գորտոյ, գորտի, գորտու,—գորտունք, գորտոց, գորտից, գորտուց*։—Աղուէս, *աղուեսու (աղուիսու), կամ աղուեսոյ, աղուէսք կամ աղուեսունք*։—Առիւծ, *առիւծու կամ առիւծոյ, առիւծք կամ առիւծունք*։ *Նոյնպես*՝ եպիսկոպոս, սարկաւագ, քուրմ, ճրագ, պարիսպ, ձագ, անոյշ, նուազ, նապաստակ, *ունին եպիսկոպոսք, սարկաւագք, քուրմք, ճրագք, պարիսպք, ձագք, անոյշք, նուազք, նապաստակք, այլ և եպիսկոպոսունք, սարկաւագունք, քրմունք, ճրագունք, պարսպունք, ձագունք, անուշունք, նապաստակունք. իսկ* պատերազմ, սան, երագ *ունին պատերազմունք, սանունք, երագունք*։

**132. Ձայնավոր հոլովումների փոխանցում.**

1. Զգեստ, *զգեստու,—զգեստի, զգեստիւ, այլև գործ. զգեստով*։—Զարդ, *զարդու, զարդուք,—այլև գործ. զարդիւք*։—Դրօշ, *դրօշու, դրօշուց,—դրօշի, դրօշից*։—Զօր, *զօրու, ի զօրուէ, ի զօրէ. գործ. զօրու, զօրաւ, զօրով. զօրք, զօրաց, զօրօք*։—Գանձ, *գանձու,—գանձի, գանձից, գանձիւք*։— Դաս, *դասու, ի դասուէ,—դասի, ի դասէ, դասիւ, այլև դասով*։—Զէնք, *զինուց,—զինից*։—Ցուլ, *ցլու, ցլուց,—ցլի*։—Բարք, *բարուց, բարուք,—բարիւք*։—Վարք, *վարուց, վարուք,—վարիւք, վարովք*։—Նաւ, *նաւու,—նաւի, նաւաւ*։—Հաւ, *հաւու, հաւուց,—հաւաց*։ Արեւ, *արեւու,—յարեւէ*։—Ժամ, *ժամու,—ժամաւ, ժամօք*։—Ծակ, *ծակու, ծակուց,—ծակի, ծակաց*։—Համբաւ, *համբաւու, համբաւուց, համբաւուք,—համբաւի, համբաւաւ, համբաւաց. համբաւօք, կամ համբաւոյ, համբաւով, համբաւոց, համբաւովք*։—Խրատ, *խրատու,—խրատոյ, խրատով. խրատոց, խրատովք,—գործ. նաև խրատիւք, խրատօք*։—Պարտ, *պարտոյ,—պարտք, պարտուց (կա և պարտիք, պարտեաց)*։

2. Կացին, *կացնոյ, կացնով,—կացնի, կացնաւ, այլև կացնեաւ*։—Պատիւ, *պատուոյ,—պատուի*։—Լուսին, *լուսնոյ—լուսնի*։—Գոյն, *գունոյ, գունոց,—գունի, գունից, այլ և գունաց*։ Շփոթ, *շփոթոյ, շփոթոց,—*

շփոթի, շփոթից։—Լեզու, լեզուոյ, լեզուով, լեզուոց, լեզուովք,—լեզուի, լեզուաւ, լեզուաց, լեզուօք։—Ամուր, ամրոյ, ամրոց. ներգոյական՝ յամրոջ,—ամրից կամ ամրաց։—Գիշեր, գիշերոյ,—գիշերի։ Մարմին, մարմնոյ,—մարմնի։— Երազ, երազոյ,—երազի։— Քիստ, քստոյ, քստի։—Կսկիծ, կսկծոյ,—կսկծի, կսկծից։— Քաղց, քաղցոյ,—քաղցի։— Սով, սովոյ,—սովի։—Պատիժ, պատժոյ,—պատժի։—Գիր, գրոյ,—գրի։—Թեւ, թեւոյ,—թեւի։—Թուղթ, թղթոյ,—թղթի։—Հանդերձ, հանդերձով, հանդերձիւ։—Մէգ, միգի, միգով։

3. Երկրորդ, երկրորդի, երկրորդաւ, երկրորդաց, երկրորդօք,—երկրորդիւ, երկրորդից, երկրորդիւք։ Նոյնպես երրորդ: Հայկ, Հայկայ,—Հայկի,—Դաւիթ, Դաւթայ,—Դաւթի։— Հռոմ, ի Հռոմայ,— ի Հռոմէ։ Ղուկաս, Ղուկայ, Ղուկասու։ Յակոբ, Յակոբայ,—Յակոբու։—Յովսէփ. Յովսէփայ, Յովսէփու եւն։—Շնորհ, շնորհի, շնորհիւ,—շնորհք, շնորհաց, շնորհօք։

133. Բաղադրյալ բառերի հոլովման ժամանակ երկրորդ բաղադրիչի սովորական ձևի փոխանակ հաճախ վերցվում է ուրիշ ձև։ Օրինակ՝ գիր, սէր, աստուած սովորաբար հոլովվում են գրոյ, գրով. սիրոյ, սիրով. աստուծոյ, աստուծով. բայց մատենագիր, մարդասէր, անաստուած հոլովվում են՝ մատենագրի, մատենագրաւ, մատենագրաց. մարդասիրի, մարդասիրաւ, մարդասիրաց. անաստուածի, անաստուածից։

134. Համանուն բառերը՝ մեծ մասամբ տարբեր արմատներից ծագած լինելով՝ տարբեր ձևով էլ հոլովվում են. օրինակ՝ Այր, այրի, այրիւ (=քարայր). —այր, առն, արամբ (=տղամարդ)։—Մայր, մայրի, մայրիւ (=մայր ծառ),—մայր, մօր, մարբ (=ծնող մայր)։—Հայր, հայրի (=մարդպետ),—հայր, հօր (=ծնող հայր)։—Կոյս, կուսի, կուսից (=աղջիկ),—կոյս, կուսի, կուսաց (=կողմ)։ Կա նաև՝ կուսան, կուսանի, կուսանք, կուսանաց (=կուսակրոն կին)։—Որթ, որթոյ (=խաղողի որթ),—որթ, որթու (=հորթ)։—Փող, փողոյ (=խողովակ, զուռնա. դրամ),—փող, փողի, փողից (=փողոց. վիզ)։—Խաղ, խաղոյ կամ խաղու (=խաղալ), խաղ, խաղի, խաղիւ (=գետի խաղ).—Դի, դիոյ, դիք, դիոց (=դիակ)։—դիք, դից, դիօք (=աստվածներ)։—Սան, սանի, սանից (=կաթսա),—սան, սանու, սանունք, սանուց (=սանիկ)։—Գեղ, գեղոյ (=գեղեցկություն),—գեղ, գեղջ (=գիւղ) եւն։

## ՉՀՈԼՈՎՎՈՂ ԲԱՌԵՐ

135. Կան որոշ թվով անուններ և ածականներ, որոնք չեն հոլովվում։ Այսպես են՝

1. Իւն ածանցով կազմված անունները, որոնք ցույց են տալիս ձայն, ճնչյուն. օրինակ՝ հնչիւն, գոչիւն, շառաչիւն, սօսաւիւն, թնդիւն, գանգիւն, դղրդիւն, լալիւն, կանչիւն եւն։ Սրանց թեք հոլովների, ինչպես և հոգնականի համար վերցվում են կամ ումն ածանցով կազմված ձե-

վերը՝ հնչումն, հնչման, հնչմունք ևլն. գոչումն, շառաչումն ևլն, կամ թե անորոշ դերբայը՝ լալ, դղրդել ևլն։

Ծան. Մրջիւն, մրջիմն, մրջման, մրջմունք, այլ և՝ մրջեան, մրջեանց, մրջիմք։

2. Կրկին նվազական ածանցներով կազմվածները, օրինակ՝ պա-
տանեկիկ, Նաւակիկ, ևլն. նույնպես մանկիկ, որոնց համար գործ են
ածվում պատանեակ, նաւակ, մանուկ բառերի ձևերը։

3. Բազմաթիվ ուրիշ բառեր, ինչպես՝ ծունր, արտօսր, պէտք, պի-
տոյ, հաճոյ, կազմ, նախ, դոյզն, գոհ, հաշտ ևլն, որոնց փոխանակ՝
թեք հոլովներով գործ են ածվում կամ նույնանիշ բառեր, օրինակ՝ ծունդ
=ծունր, կամ նույն բառերի հոգնակին. ինչպես՝ արտօսր, հոգն. ար-
տասուք, արտասուաց, արտասուօք, կամ համանիշ և կամ նույն ար-
մատից կազմված ուրիշ բառեր, օրինակ՝ պիտոյք (պէտք), պիտոյական
(պիտոյ), հաճոյական (հաճոյ), պատրաստ (կազմ), առաջին (նախ),
դուզնաքեայ (դոյզն) և այլն։

**186.** Մի քանի տեղի անունների հոլովների փոխանակ վերցվում
և հոլովվում են տեղացիների, ժողովրդի անունները՝ քաղաք, աշխարհ
բառերով կամ առանց այդ բառերի. օրինակ՝ Աթէնք (Աթէնս), կամ Աթե-
նացիք, Աթենացւոց քաղաք. Գալիլիա կամ Գալիլիացիք. Կեսարիա կամ
Կեսարացւոց քաղաք։ Այսպես և Հայք կամ Հայոց աշխարհ, Հնդիկք
կամ Հնդկաց աշխարհ. Պարսք կամ Պարսից աշխարհ. Վիրք կամ Վր-
րաց աշխարհ ևլն. նշանակում են՝ Հայաստան, Հնդկաստան, Պարսկաս-
տան, Վրաստան։

## ԴԵՐԱՆՎԱՆԱԿԱՆ ՀՈԼՈՎՈՒՄ

**187.** Դերանվանական հոլովման տակ գնում են դերանունների մեծ
մասը։ Այս տեսակի հոլովման համար ընդհանրապես պիտի նկատի ու-
նենալ.

1. Հայցական հոլովը միշտ որևէ նախդրով է գործածվում, իբրև
կրող առարկա՝ զ նախդրով, բացի իմն, ինչ անորոշներից։ Իսկ ումն անո-
րոշը, եթե մի որոշ խնդիր ունի, զ է ստանում, թե չէ՝ առանց զ-ի է մը-
նում։ Օրինակ՝ Տեսին արս ոմանս։ Տեսին զոմանս ի նոցանէ։

2. Սեռական և տրական հոլովները տարբեր կազմություն ունին։
Սեռականի համար իբրև հոլովակերտ երևում են ր(ա). իսկ տրականի
համար՝ մ(ա) բաղաձայնները կամ վանկերը։

3. Բացառականը կազմվում է սովորաբար տրականից՝ է(ն) վեր-
ջավորությամբ։

4. Գործիականի ք(ւ) հոլովակերտը երբեմն կրկնվում է։

**188. Հարցական և անորոշ դերանուններ**

| | Եզակի | | Հոգնակի |
|---|---|---|---|
| Ուղ. | ո, ով | — | ոյք |

| | | | |
|---|---|---|---|
| Հայց. | զո, զով | յո, յով | զոյս |
| Սեռ. | ոյր | ուր | ոյց |
| Տր. | ում | — | ոյց |
| Բաց. | յումէ | ուստի | յոյց |
| Գործ. | — | — | — |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ուղ. | ոք | — | ոմն | ոմանք |
| Հայց. | զոք | — | զոմն | զոմանս |
| Սեռ. | ուրուք | ուրեք | ուրումն | ոմանց |
| Տր. | ումեք | — | ումեմն | ոմանց |
| Բաց. | յումեքէ | ուստեք | յումեմնէ | յոմանց |
| Գործ. | — | — | ոմամբ | ոմամբք |

Եզակի

| | | | |
|---|---|---|---|
| Ուղ. | զի, զինչ | ինչ | իմն |
| Հայց. | զի, զինչ | ինչ | իմն |
| Սեռ. | էր | իրիք | իրեմն |
| Տր. | իմ, հիմ, էրում | իմիք | իմեմն |
| Բաց. | առիմէ, զմէ | յիմեքէ | յիմեմնէ |
| Գործ. | իւ | իւիք | — |

**139. Ո՞, ո՞վ**=ո՞վ հարցականի համար պետք է իմանալ.

1. Պակասած գործիականի, երբեմն և մյուս հոլովների համար գործ են ածվում **ո՞ր** հարցականի հոլովները. որո՞վ, որո՞վք,—ո՞րք, որո՞ց (=ո՞յք, ո՞յց)։

2. Գործ են ածվում և **ոք** անորոշի հետ՝ **ո՞վ ոք** կամ **ո՞ ոք**=ի՞նչ մարդ, ո՞ր մարդը, որ հոլովվում է՝ զո՞ ոք, ո՞յր ուրուք, ո՞ւմ ումեք, յումէ՞ (յումմէ) ումեքէ։

3. Հոգնակին՝ **ոյք** գործածվում է իբրև հարաբերական, օրինակ՝ Նըման նոցա եղիցին՝ **ոյք** (=ովքեր որ) արարին զնոսա, և ամենեքեան՝ **ոյք** (=ովքեր) յուսացեալ են ի նոսա։

**140. Զի՞, զի՞նչ**=ի՞նչ հարցականի համար պետք է իմանալ.

1. Ուղղականի սկզբի զ-ն նախդիր է, ուստի և հայցականը մյուս նախդիրներով լինում է՝ յի՞նչ, առ ի՞նչ։ **Զի՞** ձևն ուրիշ նախդրով չի բանում։

2. Տրականի **իմ** ձևը գործ է ածվում սովորաբար նախդրով՝ յի՞մ, առի՞մ։

3. Բացառականը **յ(ի)** նախդրով ձև չունի։

4. **Զի՞, զի՞նչ, է՞ր, ընդ է՞ր, վասն է՞ր, է՞ր աղագաւ, զիա՞րդ**=ի՞նչ, ինչո՞ւ, ինչո՞ւ համար, ինչի՞ց, է՞ր (գավառական՝ հե՞ր, խի՞), ի՞նչպես։ Ք... 

5. **Զի՞նչ** գործ է ածվում և **ինչ** անորոշի հետ՝ **զի՞նչ ինչ**=ի՞նչ բան, որ հոլովվում է՝ է՞ր իրիք, ի՞մ իմիք, ի՞ւ իւիք։

*Գործ է ածվում և ուրիշ անունների հետ իբրև վերադիր ածական՝* ո՛ր, որպիսի *բառերի իմաստով. օրինակ՝ Զի՞նչ օգուտ է մարդոյ։ Զի՞նչ շահ եղև։ Զի՞նչ գործ գործեալ է քո։ Աւ իս զի՞նչ պատգամ յղեն։ Վասն զի՞նչ պատճառի։ Ցի՞նչ օրէնս, յի՞նչ կամս, յի՞նչ խորհուրդս։ Զի՞նչ ոք (=ի՞նչ մարդ, ի՞նչ ոքմին=ո՞րպիսի ոք)։*

**141. Յո՞, ո՞ւր, ուստի՞** *հարցականների համար պետք է իմանալ.*

*1.* Յո՞, յո՞վ *ձևերը, որ* ո՞, ո՞վ *հարցականի հայցական հոլովն են յ նախդրով, գործ են ածվում սովորաբար իբրև մակբայ, երբ գործողության դեպի մի կողմ ուղղված լինելն է հարցվում, իբրև* յո՞ր կողմ, յո՞ր տեղի, յո՞ր վայր, ընդ ո՞ր *կամ* ընդ ո՞ր կողմ*=դեպի ո՞ւր։ Օրինակ՝ Յո՞ երթաս։ Յերեսաց քոց ես յո՞վ փախեայց։ Ոչ գիտեմք՝ յո՞վ երթաս։ Յո՞ թափեցից զդառնութիւն թիւնից։ Արդ յո՞ դէմ եդեալ փախիցուք։ Գնացեն յով և կամեսցին։ Զմեր վատթարութիւնս յո՞ տարայց։*

*2.* Ո՞ւր *(նույն իմաստով և* ուրանոր*) ձևը, որ* ո՞, ո՞վ *բառի սեռական հոլովն է, գործ է ածվում իբրև մակբայ, երբ մի տեղ լինելը կամ գործողության մի տեղում կատարվելն է հարցվում՝ իբրև ներգոյական* յորո՞ւմ տեղւոջ, յորո՞ւմ վայրի*=ո՞ւր, ո՞ր տեղ, ո՞ր տեղում։ Օրինակ՝ Ո՞ւր են օթևանք քո։ Ո՞ւր կամիս, զի պատրաստեցուք։ Ո՞ւր եդիք զնա։*

Ուստի՞*=ո՞րտեղից. ումնի՞ց, ինչի՞ց բացառականի համար կա և* ո՞ւստ *ձևը։*

*4. Գործ են ածվում և իբրև հարաբերական, օրինակ՝ Վաղվաղակի յղեմ զքեզ՝* ուր *կամիցն երթալ։*

**142. Ոմն, ոք** *անորոշների, համար պետք է իմանալ.*

*1. Իբրև գոյական նշանակում են՝* մարդ, մի մարդ, մեկը (ոքմին), որը... որը. *հոգնակին՝* ոմանք, մի քանիսը, մի քանի հոգի: *Օրինակ՝ Ասէ ոմն ցնա։ Ոմն պահէ օր ըստ օրէ, և ոմն պահէ զօրհապանազ։ Ումեմն ետ հինգ քանքար, և ումեմն երկուս, և ումեմն մի։ Ոմանք ի դպրացն։ Մեծ ոմն։ Ոմն մեծատուն։ Ո՞րպիսի ոք։ Այս ոք, այն ոք, իւրաքանչիւր ոք, ամենայն ոք։ Պարզամիտ ոք էին։*

Մի ոմն, մի ոք *հոլովվում են՝ միոյ ուրումն, միում ումեմն ևն. միոյ ուրուք, միում ումեք ևն։ Մի ոմն ի ձէնջ։ Ընթանալ ամենեքին ընթանան յասպարիզին, այլ* մի ոք *առնու զյաղթութեանն։ Ըստ տօնի արձակէր նոցա դատաւորն* զմի ոք *կապեալ։*

*2. Իբրև ածական նշանակում են՝* մի (մը), *հոգնակի անվան հետ՝* մի քանի, *և սովորաբար համաձայնում են իրենց անվանը։ Օրինակ՝ այր ոմն։ Առն ուրումն մեծատան։ Կանայք ոմանք (=մի քանի կանայք)։ Ի կնոջէ ումեմնէ։*

*3. Բացասական, հարցական, թեական, ենթադրական խոսքերի մեջ գործ է ածվում* ոք *բառը, ուստի և ասվում է՝* ոչ ոք, *որ հոլովվում*

է՝ ոչ զոք, ոչ ուրուք, ոչ ումեք, ոչ յումեքէ. արգելական խոսքերի մեջ՝ մի՛ ոք, մի՛ ուրուք, մի՛ ումեք ևլն։ Հաճախ ոչ և մի՛ բացասականները բաժանվում են ոք բառից։ Օրինակ՝ Եթէ ուրուք եղբայր մեռանիցի։ Ոչ գուզնաքեայ ոք էին նոքա։ Ոչ ոք ծառայ (=ոչ մի ծառա) կարէ երկուց տերանց ծառայել։ Իցէ՞ ոք աստ։ Եթէ ոք ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։ Թերևս ոք գտցի, որ...

4. Ոք եզակի ձևով երբեմն հոգնակի իմաստ ունի. օրինակ՝ Ուր երկու ոք (=երկու հոգի) ի միասին իցեն։ Եթէ այնպիսիք ոչ ոք գտանիցին։

**148. Իմն, ինչ անորոշների համար պետք է իմանալ.**

1. Իբրև գոյական նշանակում են՝ բան, մի բան: Օրինակ՝ Միթէ կարօտացա՞յք իմիք,—և ոչ իմիք։ Լեալ յումեքէ և յիմեքէ։ Ունիմ ինչ ասել քեզ։ Ակն ունէր առնուլ ինչ ի նոցանէ։ Մա՞րթ ինչ իցէ բարւոյ իմիք լինել (=կարելի՞ բան է, որ լավ բան լինի)։ Բարւոյ իրիք լինին պատճառ։ Չար ինչ։ Սակաւ ինչ։ Այլք այլ իմն աղաղակէին։ Այլ ինչ, ամենայն ինչ, քանի՞ ինչ, ո՞ր ինչ։ Մի ինչ (մի իրիք կամ միոյ իրիք, միով իւիք ևլն.), ինչ մի։ Այս ինչ, այն ինչ։

2. Իբրև ածական նշանակում են՝ մի, որևէ, մի որևէ ինչ որ, (մը). հոգնակի անվան հետ՝ մի քանի: Կարող են անունից և՛ առաջ և՛ հետո դրվել և հաճախ ուրիշ բառերով բաժանվել նրանից։ Հոգնակի անվան հետ անհամաձայն են մնում, իսկ եզակի անվան հետ սովորաբար համաձայնում են։ Օրինակ՝ Բան ինչ է ինձ ընդ քեզ։ Բանք ինչ գոյին նոցա ընդ սոսրիս։ Ունի՞ք ինչ կերակուր։ Եկն ի ջուր ինչ, ի տեղի ինչ։ Անցին աւուրք ինչ։ Յետ աւուրց ինչ։ Սակայն են և այլ ինչ պատճառք (=ուրիշ մի քանի պատճառներ էլ կան)։ Շնորհս ինչ հոգևորս։ Գործ ինչ ոչ գործեն։ Վասն խռովութեան իրիք եղելոյ։ Առանց իրիք յանցանաց (=առանց մի որևէ հանցանքի։ Տե՛ս § 85)։ Ջուրն՝ ցօղ իմն է զովական։ Իբր ի պարարտութենէ իմեքէ։ Իբր խթանաւ իմն ընդոստուցեալ բանիւ։ Ընդ պատենիւք իմն։ Ի նիւթոյ ինչ։ Ի սահմանելոյ ինչ հրամանէ։ Օտարոտի իմն դից թուի պատմիչ լինել։ Յանմահից իմն կարգի դնէր զինքն։

3. Բացասական, հարցական, թեական, ենթադրական խոսքերի մեջ սովորաբար գործ է ածվում ինչ անորոշը. ուստի և ասվում է ոչ ինչ (=ոչինչ, ոչ մի), որ հոլովվում է՝ ոչ իրիք, ոչ իմիք ևլն։ Արգելական խոսքերի մեջ՝ մի՛ ինչ:—Ոչ, մի՛ բառերը միշտ կարող են ինչ բառից բաժանվել, լինի վերջինս իբրև գոյական թե ածական գործածված։ Ոչ երբեմն կրկնվում է և բայի վրա։ Աշխարհաբարում ոչ ոք, ոչինչ, ոչ մի բառերի հետ բայը բացասական է դրվում։ Օրինակ՝ Եթէ իցէ ինչ ուրուք։ Եկն թէ գտանիցէ ինչ և ոչինչ եգիտ։ Ոչ բերաք ինչ յաշխարհ և ոչ տանել կարասցուք։ Է՞ ինչ այդր։ Մի՛ ինչ ասիցէք։ Եղև նմա չար և ոչինչ։ Ոչինչ վնաս է։ Ոչինչ է խտիր։ Եթէ հնար ինչ էր (=եթե մի

որևէ հնար լինէր)։ Եւ ոչ մերով իւիք հանգիստ գտաւ ի մորմնոյ և ոչ յայլ իմեքէ։ Եւ ոչ նշմարանս ինչ զոր լսէինն՝ ոչ կարէին ունել ի մտի։ Եթէ իցէ ինչ յառնն վնաս (=վնաս ինչ)։ Եթէ ունիցին ինչ ընդ ումեք բանս՝ (Բանս ինչ) յատեան երթայցեն։

4. Իմն, ինչ հոգնակի չունին. եզակի ձևով նաև հոգնակի իմաստով են բանում։ Օրինակ՝ Երկու ինչ են, որ բաղում առնեն զմեզ։ Երիս ինչ (=երեք բան) առեայ անձն իմ։

5. Այս անորոշները երբեմն կրկնված՝ իմն իմն, ինչ ինչ՝ գործ են ածվում թե գոյականաբար և թե ածականաբար՝ ստանալով բաներ, մի քանի բաներ, զանազան բաներ, կամ թե զանազան, մի քանի բառերի իմաստը։ Հոլովվում են՝ իրիք իրիք, իմիք իմիք, յիմեքէ իմեքէ, իւիք իւիք։ Օրինակ՝ Այլոց իմն իմն (=բաներ) խոստանան տալ որ չիցէ ի ձեռս։ Ոչ գարշի զայնոսիկ անուանս առնուլ զինքեամբ վասն իրիք իրիք (=մի քանի, զանազան) տեսչութեանց։ Ինչ ինչ և յասորւոց ընկալան տեղեկութիւնս կարգաց։

6. Ինչ անորոշը հաճախ գործ է ածվում իբրև թարմատար, ավելի հարցական, թեական և բացասական խոսքերի մեջ, և խոսքին տալիս է տարտամություն, կամ թե չէ՝ սաստկացնում կամ մեղմում է խոսքի իմաստը՝ ստանալով իւիք գործիականի նշանակությունը։ Աշխարհաբար երբեմն թարգմանվում է բնավ, երբեք, սկի, ինչ որ բառերով։ Օրինակ՝ Զարիքն որ լինին անձի՞նք ինչ իցեն (=ինչ որ անձե՞ր են, թե՞...), թէ՞ արգասիք անձանց։ Եւ ոչ ի կայսր ինչ վնասակար եմ։ Տես դու, ոչ ի տանջանաց երկեայ ինչ (=իւիք=բնաւ) ես։ Ոչինչ (=բնավ չը...) զանգիտեաց։ Այրն նորա չէ ինչ (=սկի) ծեր։ Ոչ եթէ յանձնէ ինչ եկի։ Ոչ եթէ զհողմս ինչ կոծելով։ Ինքեանք յոգիս ինչ (=բնավ, սկի) ոչ վնասին։

7. Իմն անորոշը հաճախ մի մակբայի կամ գործիական հոլովի հետ, երբեմն և մենակ, բայի վրա դրվելով՝ անորոշ տարտամություն է ցույց տալիս՝ ստանալով մի տեսակ, մի կերպ, կարծես, արևմտյան աշխ. մը բառերի իմաստը. օրինակ՝ Բարկութեամբ իմն (=բարկությամբ մը) հասեալ ի տեղի անդր։ Ծոխութեամբ իմն հրաման տայր Նաբուգոդոնոսոր։ Մտադիւր իմն անսայիք անմտաց։ Գեղեցիկ իմն (=գեղեցիկ մը) պատմէ և Արիստոն Փեղղացի յաղագս մահուանն Արտաշիսի։ Լռիկ իմն ծածկեցաւ յամբոխին։ Փոքու իմն, այսու իմն, այնու իմն։ Ահեղ իմն է տեղիս այս։ Յայտ իմն այսպէս առնէր։ Կամէին իմն. թէ փոխեսցուք զնա ի գործոց անտի։ Շփոթի իմն թագաւորութիւնն։ Եւ մեծամեծս իմն խօսէին։

**144.** Իմն, ինչ անորոշների իմաստով գործ է ածվում և իր, սովորաբար հոգն. իրք (իրի, իրաց, իրօք.=մի բան, բան), երբեմն և մի, ինչ բառերի հետ՝ իր մի, ինչ իրք, ինչ իրաց, շատ ինչ իրք. այլ և կրկնված՝ իրք իրք, իրս իրս, յիրս յիրս, իրաց իրաց (=բաներ, մի քանի կամ այլ և այլ բաներ)։

Ծան. *Չպիտի շփոթել ինչ և ոչ ինչ անորոշ դերանունները* ինչ, ոչինչ *հասարակ անունների հետ, որ հոլովվում են՝ ընչի, ընչիւ, ինչք, ընչից, ընչիւք (=բան. ինչք, ստացվածք). ոչինչ, ոչնչի ևն. (=ոչնչություն, անգո, ոչինչ բան)։ Օրինակ՝ Ընչի իմիք յոչընչի չէ հնար գնալ։ Եցոյց յոչնչէ յինչ զչէսն։ Զարարածս յորժամ կամեցաւ՝ սկիզբն արար լինել՝ ոչ յընչէ, այլ յոչնչէ, զի ինչ նա միայն է (Եզնիկ)։*

*Ոչինչ երբեմն իբրև ածական է գործածվում և նշանակում է ոչինչ, չնչին։*

**145. Ուրեք,—ուստեք** *անորոշների համար պիտի իմանալ.*

*1. Մենակ գործածված ժամանակ նշանակում են իբրև մակբայ՝* մի տեղ, որևէ տեղ,—մի որևէ տեղից։ *Օրինակ՝ Վկայեաց ոք ուրեք։ Ոչ ուրեք։ Ոչ ուրեք առաքեցայ։ Ոչ ուրեք գտանեմք ասացեալ նորա ի նորումս։ Է ուրեք (=կա տեղ, երբեմն), զի քաջապէս յաղթեցաք թշնամեացն, և է ուրեք, զի նոքա մեզ յաղթեցին։—Միթէ կասկա՞ծ ինչ ուստեք էր նմա։ Յորժամ հայր սիրելի ուստեք գայցէ, արժանի որդիքն կառօք ընդ առաջ ելանեն։*

*2. Կրկնված* **ուրեք ուրեք, ուստեք ուստեք** *նշանակում են* ի կողմանս կողմանս, ի կողմանց կողմանց=*տեղ տեղ, զանազան տեղեր,—զանազան տեղերից, կողմերից, դեսից-դենից։ Օրինակ՝ Զմեծամեծս և զզարմանալոյ արժանաւորս յարուեստից ուրեք ուրեք գտեալ աշխատութեամբ՝ հաւաքեալ փոխեցին ի յոյն լեզու։ Ոմանք ուստեք ուստեք նկեալ ժողովեալ։ Եւ որ ուստեք ուստեք եկեալ էին ի թիկունս օգնականութեան։*

*3. Երբեմն վերադիր ածականներով էլ են գործածվում. օրինակ՝ ամենայն ուրեք (=ամեն տեղ), ի մօտ ուրեք (=մոտ տեղ), հեռի ուրեք, հեռագոյն ևս ուրեք (=հեռու տեղ), յո՞ ուրեք, ո՞ւր ուրեք (=ո՞ւր տեղ, ո՞ր տեղ), դուն ուրեք (=քիչ տեղ, քիչ անգամ). այլ ուրեք կամ այլ ուր (=ուրիշ տեղ), այլ ուստեք կամ այլուստ, յայլուստ, կամ յայլուստ ուստեք (=ուրիշ տեղից), բազում և այլ ուստեք (=ուրիշ շատ տեղից էլ), արտաքուստ ուստեք (=դրսից մի տեղից), ամենայն ուստեք կամ ամենուստ, յամենուստ (=ամեն տեղից, ամեն կողմից). բազում ուստեք, յոլով ուստեք (=շատ տեղից), ոչ ուստեք (=ոչ մի տեղից). այլև կրկնված՝ ո՞ւստ ուստեք (=ո՞ւր տեղից, ո՞ր տեղից)։*

4. **Ուստեք** *ձևի իմաստով կա և* **ուստեմն**, *որ շատ քիչ է գործածվում, իսկ* **ուրեք** *ձևի իմաստով՝* **ուրեմն**, *որ հաճախ միանում է տեղ կամ ժամանակ ցույց տվող ուրիշ բառերի հետ՝ տարտամացնելով նրանց իմաստը, օրինակ՝ Որպէս* **անդ ուրեմն** *(=երբեմն, ժամանակով) ի հինսն։ Զոր աստ ուրեմն (=վերջերս) յետոյ ոմանք բարձին։ Իսկ աստ ուրեմն յարուցեալ գոնդս։ Յետոյ ուրեմն արժանաւորեցան առնուլ։ Այսպես և՝ անդր ուրեմն, ուր ուրեմն (=վերջապես), վաղ ուրեմն, անագան ուրեմն, երբեմն ուրեմն. այլ ուստեմն (=որևէ ուրիշ տեղից)։*

*5. Իբրև ածական* **ուրեմն, ուրեք, ուստեք** *նշանակում են* մի, մի որևէ *և դրվում են սովորաբար տեղի անվան վրա։ Օրինակ՝ Դատաւոր մի էր ի քաղաքի ուրեմն։ Ընդ գաղտնի դուռն ուրեմն մեքենավորու-*

*թեամբ ի բերդն մտանէին։ Ի կողմն մի ուրեք։ Յանկեան ուրեք։ Կարծէր ի տեղիսն ուրեք անյայտս գետառուին թագչել։ Ի տեղւոջ ուրեք։ Ի տեղւոջէ ուստեք (=մի որևէ տեղից)։*

## 146. Անձնական դերանուններ

### Եզակի

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Ուղ.* | *ես* | *դու* | *ինքն* | — |
| *Հայց.* | *զիս* | *զքեզ* | *զինքն* | — |
| *Սեռ.* | *իմ* | *քո* | *ինքեան* | *իւր* |
| *Տր.* | *ինձ* | *քեզ* | *ինքեան* | *իւր (իւրեան)* |
| *Բաց.* | *յինէն* | *ի քէն* | *յինքենէ* | *յիւրմէ* |
| *Գործ.* | *ինև* | *քև* | *ինքեամբ* | *իւրեաւ, իւրև, իւրեամբ* |

### Հոգնակի

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Ուղ.* | *մեք* | *դուք* | *ինքեանք* | *իւրեանք* |
| *Հայց.* | *զմեզ* | *զձեզ* | *զինքեանս* | *զիւրեանս* |
| *Սեռ.* | *մեր* | *ձեր* | *ինքեանց* | *իւրեանց* |
| *Տր.* | *մեզ* | *ձեզ* | *ինքեանց* | *իւրեանց* |
| *Բաց.* | *ի մէնջ* | *ի ձէնջ* | *յինքեանց* | *յիւրեանց* |
| *Գործ.* | *մեւք, մեօք* | *ձեւք, ձեօք* | *ինքեամբք* | *իւրեամբք* |

Ծան. *Դու դերանունը դրվում է անուններից հետո իբրև վերջահար բառ և անվանը տալիս է* կոչականի *նշանակություն, օրինակ՝ Ա՛յր դու, կի՛ն դու, աղջի՛կ դու։*

**147. Ինքն** *դերանվան համար պիտի իմանալ.*

*1. Իբրև զորացման դերանուն դրվում է մյուս դերանունների և անունների հետ՝ իբրև բացահայտիչ թվով և հոլովով համաձայնելով նրանց, երբեմն և համապատասխան դեմքի հոդ ստանալով, օրինակ՝ ես ինքն, դու ինքն, նա ինքն. ինքն տէրն,—զիս ինքն, յիս ինքն, զքեզ ինքն, քեզ ինքեան, ի մէնջ յինքեանց ևլն։ Զքեզ ինքնդ։*

*2. Մենակ՝ առանց դիմորոշ հոդի և ուրիշ դերանվան ևս կարող է առաջին և երկրորդ դեմքերի իմաստով գործածվել. օրինակ՝ ինքեանք (=մեք ինքեանք=ինքներս) ի նմին կաւոյ եմք։ Մի՛, աղաչեմ, մի՛ այսպէս չարաչար յաղագս ինքեանց (=մեր ինքեանց) խորհեսցուք և մի՛ ի մեզ ինքեանս մխեսցուք սուր։*

**148. Ինքն** *բառի փոխանակ զորացման իմաստով գործ են ածվում նաև՝* **ինքնին, ինքնին իսկ, ինքն գլխովին, ինքնին գլխովին,** *կամ լոկ՝* **գլխովին.** *օրինակ՝ Մոգպետն ինքնին մոգօքն հանդերձ հասանէր։ Թագաւորն ինքնին իսկ զարմացեալ լինէր։ Զինքնին թագաւորն զԽոսրով։ Զթագաւորն Տիրան ինքնին գլխովին։ Դու ինքնին, նա ինքնին, դա ինք-*

*նին։—* **Ինքնին** *նշանակում է նաև՝* **անձամբ անձին, ինքն իւրեւ, ին-քեամբ, իւրովի**=*ինքն իրեն, իրան իրան։ Օրինակ՝ Իբրև զհաւկ ինքնին անկեալ ի ցօղնոյ։ Դուռնն ինքնին բացաւ։*

149. **Ինքն** *բառի իմաստով 1-ին և 2-րդ դեմքերի համար, մենակ կամ նույն դեմքերի դերանունների հետ, գործ են ածվում՝* **ինձէն** *(=ինքս),* **մեզէն** *(երբեմն* **մեզոյն**=*ինքներս),* **քեզէն** *(երբեմն՝* **քեզոյն**=*ինքդ),* **ձեզէն** *(երբեմն* **ձեզոյն**=*ինքներդ), որոնք բացառական հոլով-ներ են և նշանակում են՝* **ես ինքնին, յինէն, ինեւ անձամբ** *ևլն։ Օրի-նակ՝ Ողջ լիջիք, և ես ինձէն իսկ (=ես ինքս հենց) անձամբ ողջ եմ ամենայն իրօք։ Ես ինձէն աչօք տեսի։ Ինձէն (=ինքս) զիս քեզ մա-տուցի։ Զիա՞րդ անձամբ ինձէն զստութիւն իմ ծանակեցից։ Մեք մե-զէն իսկ (=մենք ինքներս հենց) շինեսցուք։ Մեզէն իսկ լուաք ի դմա-նէ։ Մեզէն իսկ ընթեռնուլ արժանաւորեցաք։ Մեզէն իսկ ականատես ե-ղաք այն դիւանին։ Մեք մեզոյն լինիմք քակիչ օրինացս մերոց։ Արի՛ և քեզէն թօթափեա՛ զանկողինս քո։ Արի՛ և դու քեզէն պատահեա՛ մեզ։ Քեզէն վարես զքեզ յանդարձ օտարութիւն։ Դու քեզէն իսկ (=դու ինքդ հենց) վկայ ես ինձ։ Դու քեզէն զպատիժսն յանձն առեր, և ես թողում զպատուհասսն։ Դուք ձեզէն երթայք ժողովեցէք ձեզ յարդ։ Դուք ձեզէն իսկ գիտէք։ Որպէս և դուք իսկ ձեզէն (=դուք ինքներդ հենց) վկայեցէք։*

150. **Իւր** *դերանունը, որ եզ. ուղղական և հայցական չունի, գործ է ածվում, ինչպես աշխարհաբարում, սովորաբար անդրադարձ իմաս-տով, այսինքն դրվում է ենթակայի անվան տեղ։ Հաճախ սակայն* **իւր** *դերանվան փոխանակ գործ են ածվում* **ինքն** *և նույնիսկ ցուցական* **նա** *դերանունների ձևերը, կամ ընդհակառակն. օրինակ՝ Սկսաւ խօսել զանձնէ իւրմէ զանօրէնութիւնս, զոր* **իւր** *(=ինքեան) չէր գործեալ (=որ* **ինքը** *չէր գործել)։*

151. *Անձնական դերանունների բոլոր դեմքերի փոխանակ հաճախ գործ են ածվում* **անձն** *բառի եզակի և հոգնակի հոլովները մենակ կամ* **իմ, քո, իւր, մեր, ձեր, իւրեանց** *բառերի հետ։ Օրինակ՝ Յանձն իմ (=յիս, յիս ինքն) երդուայ։ Եւ ոչ զանձն (=զիս, զիս ինքն) արժանի հա-մարեցայ առ քեզ գալոյ։ Փրկեա զանձն քո և զմեզ։ Դու վասն անձին քո վկայես։ Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն իւր՝ (=յինքն =ինքն իր մեջ) կործանի։ Լացէք ի վերայ անձանց ձերոց (=դուք ձեր վրա...)։—Ոչ կարեմ ես յանձնէ առնել և ոչինչ (=ես ինքս ինձնից...)։ —Անձամբ անձին (=ինքն իրեն) առնէ վնաս։ Անձամբ զանձն իւր (=ինքն իրեն, ինքն զինքն) խայտառակեաց։—Նոքա անձին (փոխանակ՝ անձանց=իրենց, իրենք իրենց) ինչ օգնել ոչ կարեն։ Անձամբ անձին (=իրենք իրենց) փակեցին զդրունս։*

**Ծան. Անձն** *բառը բարդությունների մեջ նշանակում է* **ինքն**, *օրինակ՝ անձնասպա-նութիւն=ինքնասպանություն, անձնասէր=ինքնասեր։*

**152. Նա**, սա, դա.

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| *Ուղ.* | *նա* | *նոքա* |
| *Հայց.* | *զնա* | *զնոսա* |
| *Սեռ.* | *նորա* | *նոցա* |
| *Տր.* | *նմա* | *նոցա* |
| *Բաց.* | *ի նմանէ* | *ի նոցանէ* |
| *Գործ.* | *նովաւ* | *նոքօք* |

**153. Նա** *դերանվան պես հոլովվում են՝* սա, *զսա, սորա, սմա, ի սմանէ, սովաւ. սոքա, զսոսա, սոցա, ի սոցանէ, սոքօք.*—դա, *զդա, դորա, դմա ևլն։ Այս ցուցականների բացառական հոլովը երբեմն լինում է՝ ի նմանէն, ի սմանէն, ի դմանէն, ի սոցանէն ևլն։*

**154. Այս**, այդ, այն.

| | Եզակի | | Հոգնակի |
|---|---|---|---|
| *Ուղ.* | *այս* | — | *այսոքիկ* |
| *Հայց.* | *զայս* | — | *զայսոսիկ* |
| *Սեռ.* | *այսր, այսորիկ,* | *այսր* | *այսց, այսոցիկ* |
| *Տր.* | *այսմ, այսմիկ,* | *աստ* | *այսց, այսոցիկ* |
| *Բաց.* | *յայսմ, յայսմանէ,* | *աստի* | *յայսց, յայսցանէ* |
| *Գործ.* | *այսու, այսուիկ* | — | *այսոքիւք, այսոքիմբք* |

**155. Այս** *դերանվան պես հոլովվում են՝* այդ, *զայդ, այդր, այդորիկ. այդմ, այդմիկ. յայդմ, յայդմանէ. այդու, այդուիկ ևլն.* այն, *զայն, այնր, այնորիկ ևլն։* Այն *հոգն. ուղղականի և հայցականի համար ունի նաև* այնք, զայնս *ձևերը։ Հոգն. բացառականի և գործիականի համար կան նաև՝ յայսոցիկ, յայդոցիկ, յայնոցիկ,—այսուք, այդուք. այնուք ձևերը։*

Այսր, աստ, աստի *ձևերին համապատասխան կան՝* այդր. այդի. անդր, անդ, անտի:

**156. Այս,** այդ, այն *ցուցականների համար պիտի իմանալ.*

*1. Գոյական են, երբ մենակ են գործածվում և նույն նշանակությունն ունեն, ինչ որ* սա, դա, նա: *Երբ ցուցականն իր իմաստն ստանում է մի հարաբերական խոսքից, ավելի* այս, այդ, այն *են գործածվում, քան սա, դա, նա։ Օրինակ՝ Երանի այնոցիկ, որ սուրբ են սրտիւք։*

*2. Ածական են, երբ իբրև վերադիր դրվում են մի անվան վրա, որի հետ թվով և հոլովով սովորաբար համաձայնում են։*

*Երբ ցուցականն իր անունից նախադաս է, սովորաբար կարճ ձևն է գործածվում և անունը ոչ մի հոդ չի առնում։ Իսկ երբ ետադաս է, սովորաբար երկար ձևն է բանում, նախդիրը կրկնվում է ցուցականի վրա և անունն առնում է համապատասխան* **ս, դ, ն** *ցուցական հոդերից մեկը. օրինակ՝ այս տուն, այդ տուն, այն տուն. զայս տուն, այսր տան, այսմ տան, յայսմ տանէ, այսու տամբ, այս տունք, այսց տանց, յայնմ աւուր ևլն. բայց՝ տունս այս, տունդ այդ, տունն այն, զտունս զայս, տանս այսորիկ, տանս այսմիկ, տունքս այսոքիկ, տանցս այսոցիկ, յաւուրն յայնմիկ ևլն. բայց և՝ գործքս այս։ Զինչ հատուցուք փոխարէնս այս (փոխ. այսր) մեծի յաղթութեան։ Զբանս (փոխ. զբանսս) զայսոսիկ կատարեա՛։ Տարերքս այս։*

*3. Բացառական* **յայսմ, յայդմ, յայնմ** *ձևերը միայն իբրև վերադիր ածական են բանում՝ յայսմ հետէ, յայդմ վայրէ, զայնմ ամենայնէ ևլն. իսկ* **այնմ, զայնս** *միայն իբրև գոյական միշտ մենակ են գործածվում։*

*4. Այս, այդ, այն, զայս, զայդ, զայն եզակի ձևերը երբեմն և հոգնակի իմաստ ունին. օրինակ՝ Զկունս սակաւ ունէին, և զայն ևս (=այն էլ) օրհնեաց։*

**157. Այսր, այդր, անդր** *նշանակում են.*

*1.* **Այստեղ, այդտեղ, այնտեղ,** *երբ մենակ են գործածվում իբրև մակբայ և գործողության դեպի 1-ին, 2-րդ կամ 3-րդ դեմքն ուղղված լինելն է ցույց տրվում. օրինակ՝ Մի՛ մերձենայր այսր։ Ե՛կ այսր։ Այսր անդր (դես ու դեն, այս ու այն կողմ) վառեալք ընթանային։ Ի քէն և յայլոց սկսեալ անդր ի վեր հանիցեմ ի սկիզբնն։ Յղէին անդր նախարար զոմն։*

*2.* **Այս, այդ, այն,** *երբ իբրև ածական դրվում են* **ի** *նախդիրն ունեցող հայցական հոլովով մի անվան վրա. օրինակ՝ Եւ ոչ ի տար աշխարհ այսր զհետ նոցա գնացաք։ Եթէ ո՞չ գայցէ ի տօն այսր։ Ի դաշտ անդր։ Ելանէ ի ջուր անդր։*

**158. Աստ, այդր, անդ** *նշանակում են.*

*1.* **Այստեղ, այդտեղ, այնտեղ,** *երբ մենակ են գործածվում իբրև մակբայ և գործողության մի տեղում կատարվելն է ցույց տրվում. օրինակ՝ Գոյ աստ այր մի։ Զնոսա եթող անդ։ Է՞ ոք այդր այր։ Նստարուք դուք այդր։ Եւ անդ էր մինչև ցվախճան նորա։—*

*Այս իմաստով կան և* **աստանօր, այդանօր, անդանօր** *բառերը։*

*2.* **Այս, այդ, այն,** *երբ իբրև ածական դրվում են ի նախդիրն ունեցող տրական հոլովով մի անվան վրա* (**ներգոյականի** *իմաստով), օրինակ՝ Ի դրախտի աստ։ Ի տօնի աստ։ Ի ժամանակի աստ յայսմիկ։ Գրեցի ձեզ ի թղթի այդր։ Ահաւասիկ ի խորանի անդ է։ Ի պարտիզի անդ։ Յանապատի անդ։ Եւ խնդրէին զնա ի տօնի անդ։*

**159. Աստի, այդի, (այտի), անտի** նշանակում են.

1. **Այստեղից, այդտեղից, այնտեղից** կամ **սրանից, դրանից, նրանից**, երբ մենակ են գործածվում. օրինակ՝ Գնացին նոքա անտի։ Արի՛ք երթիցուք աստի։— Եւ ոչ վրիպեսցի այտի (=դրանից) բան, մինչև կատարեսցի ամենայն։ Յորմէ պատուիրեցի քեզ անտի ևեթ չուտել։ Անտի իսկ (=նրանից=յայնմ իւղոյ) օծանէին։ Զչարեաց սկիզբն անտի (=նրանից=ի նիւթոյ) կարծեցին։—Այս իմաստով կան և **աստուստ (աստուստին), անդուստ (անդստին)** ձևերը։

2. **Այս, այդ, այն**, երբ իբրև ածական դրվում են մի բացառական հոլովով անվան վրա. օրինակ՝ Եկ ի տապանէ այտի։ Բազումք ի մանկտւոյ այտի։ Ի յունականաց այտի։ Ի տեղւոջէ անտի։ Ի հեթանոսական ուսմանց անտի։ Յիշխանութենէ աստի։ Ի նեղութենէ անտի։ Անդստին յօրինացն (=հենց այն օրենքից)։

**160.** Կան և **այսրէն, այդրէն, անդրէն, աստէն, անդէն** մակբայները, որ նշանակում են՝ վերստին այսր, վերստին այդր, վերստին անդր, յետս այսր, յետս այդր, յետս անդր=նորից, ետ, կրկին այստեղ կամ հենց այստեղ, հենց այդտեղ, հենց այնտեղ։ Օրինակ՝ Եւ ինքն ողջանդամ այսրէն դառնայր։ Այդրէն ի քեզ խորտակեսցին ալիք քո։ Եկ և անդրէն ոչ դարձաւ։ Դարձ անդրէն յերկիր։ Այսրէն (=այստեղ, այս աշխարհում) այլք վաստակին և այլք հանգչին։ Անդէն (=այնտեղ, այն աշխարհում)։ Այդրէն յաշխարհիդ ձերում գտանին գիրք դորա։—Ես աստէն պահեցի։ Աստէն (=այստեղ ,այս աշխարհում) ընկալեալ զհատուցումն մեղաց իւրոց։ Էին անդէն ի կարաւանին։

Անդէն, անդէն իսկ, անդէն և անդ, անդէն վաղվաղակի նշանակում են նաև՝ իսկույն, տեղն ու տեղը։ Օրինակ՝ Անդէն և անդ ծանեան։ Եւ ահա անդէն երեք արք եկին։

**161. Նոյն, սոյն, դոյն։—Ամենեքին։**

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| Ուղ. | նոյն | նոքին |
| Հայց. | զնոյն | զնոսին |
| Սեռ. | նորին, նորուն | նոցին, նոցուն, նոցունց |
| Տր. | նմին | նոցին, նոցուն, նոցունց |
| Բաց. | ի նմին | ի նոցունց |
| Գործ. | նովին, նովիմբ | նոքիմբք, նովիմբք, նոքումբք |

| | |
|---|---|
| Ուղ. | ամենեքին, ամենեքեան |
| Հայց. | զամենեսին, զամենեսեան |
| Սեռ. | ամենեցուն, ամենեցունց |
| Տր. | ամենեցուն, ամենեցունց |
| Բաց. | յամենեցունց |
| Գործ. | ամենեքումբք |

**162. Նոյն** *դերանվան պես հոլովվում են՝* սոյն, *դսոյն, սորին, սմին և այլն.* դոյն, *զդոյն, դորին, դմին և այլն։ Սոյն, դոյն՝ չունին նոքումբք ձևի համապատասխան հոգն. գործիական։*

Նոյն նշանակում է նաև մի եւ նոյն: *Այս իմաստով սովորաբար անփոփոխ է մնում և հոգնակին լինում է՝ նոյնք, զնոյնս օրինակ՝ Ի նոյն (=միևնույն, և ոչ թե՝ այն) ջուրս պիղծ ճճիքն ընդ սուրբ ձկունսն սնանին։ Եւ նոքա զնոյնս (=միևնույն բաները) բարբանջեն։*

**163. Սոյն, դոյն, նոյն** *ցուցականների համար պիտի իմանալ.*

*1. Գոյական են, երբ մենակ են բանում, և հաճախ նույն իմաստունին, ինչ որ սա, դա, նա կամ այս, այդ, այն, որոնց հետ և փոխեփոխ գործածվում են կրկնություն չանելու համար, կամ իբրև ավելադրություն կրկնվում են՝ իմաստի զորեղ արտահայտության համար։ Օրինակ՝ Ես յայդ իսկ ծնեալ եմ և ի դոյն իսկ եկեալ եմ։ Նորա իշխանութեամբ և նորին հրամանաւ։ Նորին (=նորա) մեծութիւն։ Սոյն այս, սորին այսորիկ, սմին այսմիկ, սոքին այսոքիկ, դոյն այդ (այսպես և՝ սա այս, դա այդ և այլն)։*

*2. Ածական են, երբ իբրև վերադիր դրվում են մի անվան վրա, որի հետ թվով և հոլովով սովորաբար համաձայնում են. օրինակ՝ նոյն բան, նորին բանի, նմին բանի, ի նմին բանէ, նովին բանիւ և այլն։—Բացառականները՝* ի սմին, ի դմին, ի նմին *միայն իբրև վերադիր ածական են գործածվում, օրինակ՝ ի նմին քաղաքէ=նույն քաղաքից։*

**164. Ամենեքին** *կամ* **ամենեքեան** *բառի պես միայն հոգնակի հոլովվում են նաև բոլորեքին կամ բոլորեքեան, երկոքին կամ երկոքեան, երեքին կամ երեքեան, չորեքին կամ չորեքեան, հնգեքին, վեցեքին կամ վեցեքեան, եօթանեքին կամ եօթանեքեան, տասնեքին կամ տասնեքեան, երկոտասանեքին կամ երկոտասանեքեան, որ նշանակում են՝ ամենքը, ամենքն էլ, երկուսն էլ, երեքն էլ, չորսն էլ և այլն։*

*Այս բառերն էլ թե մենակ իբրև գոյական են գործածվում և թե իբրև ածական վերադիր դրվում են մի հոգնակի անվան վրա, որի հետ հոլովով միշտ համաձայնում են։ Օրինակ՝ ամենեցուն (=ամեն, բոլոր) արարածոց ցուցանէր։ Բացան աչք երկոցունց (=*երկսի *աչքերն էլ բացվեցին)։ Յերկոցունց կողմանցն (=երկու կողմից էլ)։ Ի վերայ ձեր երկոցուն (=ձեր երկսի վրա)։ Աշակերտքն ամենեքին։*

Ծան. Ամէն *բառի եզ. գործիականը երբեմն լինում է* ամենեիւն *(ամենևիմբ)=ամենայնիւ, ըստ ամենայնի, բոլորովին, իսկ* բոլոր *ունի* բոլորով, բոլորիւ *ձևերի հետ և* բոլորովին *(բոլորովիմբ), որոնք հաճախ իբրև մակբայ են գործածվում։*

**165. Փոխադարձ դերանուններ**

| | | |
|---|---|---|
| *Ուղ.* | — | — |
| *Հայց.* | *զմիմեանս* | *զիրեարս* |
| *Սեռ. Տր.* | *միմեանց* | *իրերաց* |

| | | |
|---|---|---|
| *Բաց.* | *ի միմեանց* | *յիրերաց* |
| *Գործ.* | *միմեամբք* | *իրերօք* |

**166.** *Փոխադարձ դերանունների իմաստով գործ են ածվում նաև՝* Մի զմի *(մի առ մի, մի ցմի, մի միոյ, մի միոջ ևլն=մեկմեկու, մեկմեկուց).* Այր զընկեր իւր *(այր ցընկեր իւր, այր ընդ ընկերի ևլն)։—Քանզի չփոթ իմն ամբոխից լեալ՝* այր զարամբ *(=զմիմեամբք) ելանէին տիրել աշխարհիս։*

# ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

## ՇԱՐԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆ

### ԽՈՍՔԻ ԿԱԶՄՈՒԹՅՈՒՆԸ

**167.** *Խոսքի կամ նախադասության կազմությունը գրաբարում ընդհանրապես նույնն է, ինչ որ աշխարհաբարում։ Նախադասության միջուկն է բայը, որի դեմքը, ինչպես աշխարհաբարում, միշտ որոշ է։ Նախադասությունը կարող է կազմված լինել մեկ բայից, օրինակ՝* գա՛մ = *գալիս եմ, մի բայական նախադասություն է։ Բայց դա կարող է ունենալ ամեն տեսակի լրացումներ և լրացման լրացումներ՝ ենթակա, ստորոգյալ ու ստորոգելիական վերադիր, խնդիրներ ու պարագաներ. օրինակ՝ Յայնմ ժամանակի ապստամբեաց յարքայէն Հայոց մի ոմն ի նախարարաց մեծամեծացն։*

**168.** *Բայի դեմքի լրացումը, ենթական, մեր հին քերականները կոչում են «անուն բայի» կամ «տէր բայի», իսկ բայիմաստի լրացումները՝ խնդիր։*

*Խնդիրները լինում են՝ 1.* Ներգործական *բայերի* սեռի խնդիր *կամ հայցական սեռի խնդիր, որ է* կրող խնդիրը (ուղիղ խնդիրը) *կամ կրող առարկան, որ ազդվում կամ առաջ է գալիս ենթակայի գործողությունից (§ 171)։*

*2.* Կրավորական *բայերի* սեռի խնդիր, *կամ բացառական սեռի խնդիր,—կրավորական բայերի ներգործող խնդիրը, որից ծագում է գործողությունը, որ և խոսքը ներգործական բայով ասելիս՝ դառնում է ենթակա (տե՛ս ներքևում § 171)։*

*3.* Բնության խնդիր,— *մնացած բոլոր խնդիրները որևէ հոլովով միայնակ կամ հոլովների հետ նաև նախդիրներով (կապերով)։*

**169.** *Գրաբարի հոլովները, սակավ բացառությամբ, նույն գործածությունն ունեն, ինչ որ նույն հոլովներն աշխարհաբարում։ Կարևոր են հետևյալ կիրառությունները։*

**170. Ուղղական հոլովով** *դրվում են.*

1. Ենթական *(անուն-բային), օրինակ՝ գնաց Արշակ։ Ասացին աշակերտքն։*

2. Կոչական անունը. *օրինակ՝ Ընդե՞ր,* արքա՛յ, *ցայդ վայր միայն ետուր ընթեռնուլ։*

3. Ստորոգյալը, *ըստ հին քերականների՝* եմ, լինիմ *«էական բայի բնության խնդիրը», որ կարող է և մի ածական լինել. օրինակ՝ Աշխարհս նիւթեղէն է և նիւթքս՝ որիշ որիշ և ընդ միմեանս հակառակ։*

**171. Հայցական հոլովով** *դրվում է կրող առարկան կամ ներգործական բայերի սեռի խնդիրը, որ, երբ բայը կրավորականի է վերածվում, դառնում է կրող ենթակա, իսկ ներգործական բայի ենթական այդ դեպքում դառնում է կրավորական բայի սեռի խնդիր, սովորաբար բացառական հոլովով (§ 168)։ Օրինակ՝ Բացին զդուռնն=բացաւ դուռնն։ Հերովդէս կալաւ զՅովհաննէս, կապեաց զնա և եդ ի բանտի=ի Հերովդեայ կալաւ Յովհաննէս, կապեցաւ նա և եդաւ ի բանտի։*

**172.** *Հայցական հոլովով դրվում են և այն բոլոր պարագայական խնդիրները, որոնք աշխարհաբարում դրվում են ուղղական հոլովով իբրև հայցական (հայցական-ուղղական)։*

*ա)* Ժամանակի տևողության հայցական՝ *իբրև պատասխան* ո՞րքան ժամանակ *հարցի. օրինակ՝ Եղև անձրև զքառասուն* տիւ *և զքառասուն* գիշեր: *Ետ ցնա զթագաւորութիւնն հազար* ամ: Զտիւ *և* զգիշեր *փութային հասանել յաշխարհս Հայոց։ Վառեցան կազմեցան* զգիշերն *ամենայն։* Զերկեամ *մի կռուեալ՝ ոչինչ կարաց ազդել նոցա։ Թող զդա այս ամ ևս։ Այսօր, վաղիւ և յերիր աւուր։*

*բ)* Քանակի հայցական, *իբրև պատասխան* ո՞րքան *հարցի. օրինակ՝ Եւ որ տարապարհակ վարիցէ զքեզ* մղոն *մի,* երթ *ընդ նմա և* երկուս: *Բարձին զնշխարս կոտորոցն եօթն* գամբիւղ *լի։* Բաժակ *մի ջուր ցուրտ (§ 176. 5)։*

*գ)* Որակի հայցական, *իբրև պատասխան* ի՞նչպես *հարցի։ Այս խնդիրն անանցողական (կրավորական և չեզոք) բայերի հետ կարող է դրվել և* ուղղական *հոլովով։ Օրինակ՝ Եւ ամս տասն ստէպ ստէպ* զայս օրինակ *աւար առեալ աւերէին զամենայն երկիր սահմանացն։ Եւ հրամայեաց նոցա բազմել* երախանս երախանս *ի վերայ դալար խոտոյ. և բազմեցան* դասք դասք: *Արջք օրհասականք ընդ վախճանել շնչոյն* հզօրագոյնս *կռուին։ Ետես այլս, զի կային* դատարկք:

**173. Հայցական հոլովով** է դրվում փոխանակ գործիականի և այն որակական խնդիրը, որ կազմված է խնդրառու բայի հիմքից (բնից) կամ նրա համանիշն է, կամ թե նրա հետ որևէ մերձավոր առնչություն ունի։ Այս խնդրի փոխանակ դրվող դերանունն ես կարող է հայցական հոլովով դրվել։ Օրինակ՝ Շինէին... և զնոյն զարդ զարդարէին։ Առ հասարակ զմի զինուորութիւն զինուորեցան։ Զնոյն նահատակութիւն նահատակեցան։ Զմահ աղուխու սպանից զքեզ։ Երկեան երկիւղ մեծ։ Կոծեսցեն ի վերայ նորա կոծ։ Զմահ մեռանել։ Ախտանալ զախտ հպարտութեան։ Զմարտ մարտնչել։ Որոց ոչ էին օրէնք երթալ զնոյն ճանապարհ։ Առաջնորդէր նոցա զերկայնութիւն ճանապարհին յերկիրն Հայոց։ Եսաւ պահէր ոխս Յակոբայ վասն օրհնութեանցն, զոր օրհնեաց զնա Իսահակ հայր իւր։ Մշակքն գան հարին զնա։

**174. Ստորոգելիական վերադիր։—** Մի շարք ներգործական բայեր՝ անուանել, կոչել, ասել, առնել, դնել, կարծել, յարդարել, խոստովանել, կարդալ, պահել, կացուցանել, կարգել, ընտրել և այլն. առնում են մի երկրորդ հայցական խնդիր իբրև ստորոգելիական վերադիր։ Այս կրկին հայցական խնդիրը կարող է հոլովով և թվով համաձայնել կրող առարկային կամ հայցական սեռի խնդրին։ Անանցողական (կրավորական և չեզոք) բայերի համար այս խնդիրը դրվում է ուղղական հոլովով և կարող է համաձայնել ենթակային, քանի որ կրող առարկան ևս, երբ ներգործական բայը կրավորականի է վերածվում, դառնում է ենթակա։ Օրինակ՝ Երևեցան ամենեքեան զինեալք եւ սաղաւարտեալք: Սիրելիս և բարեկամս կարդայր զնոսա: Արարից զձեզ որսորդս մարդկան։ Դոքա յետինքդ մի ժամ գործեցին և հաւասարակորդս մեզ արարեր զդոսա: Արձակեմ զդոսա նօթիս։— Այսոս մեծարոյ երեվին առաջնորդք քեշին։ Զմեծ ումն իշխան մոգպետ կացուցանէր։ Մեծ ումն զինքն կարծէր։ Թագաւոր եթէ ոչ ունի զիմաստութիւն իւր աթոռակից։ Դաստակերտ մեծ և սիրելի զՀայոց աշխարհս անուանէր։ Ստոյիկեանքն... զամենայն ինչ մարմին կարծեցին։

Այս երկրորդ հայցական խնդիրն առանց զ նախդրի է դրվում. դերանունները միայն՝ զ-ով են գործածվում, օրինակ՝ Թագաւոր զմեն ասեն զնա։ Դու զո՞ առնես զքեզ։

Ստորոգելիական վերադրի կարգին են պատկանում և այսպիսի խնդիրները, օրինակ՝ Ես աւասիկ ախոյեան ելանեմ քեզ։

**175.** Առանձնապես պետք է նկատի ունենալ հետևյալ կրկին հայցական խնդիրները։

1. Հարցանել, ուսուցանել, ագուցանել բայերն առնում են երբեմն երկու հայցական խնդիր, որոնցից մեկը (անձի անուն) հայցական է դրվում փոխանակ սովորական ձևով տրական կամ բացառական դրվելու. իսկ մյուսը (իրի անուն) կրող առարկան է. օրինակ՝ Ուսուցանէր զնոսա (փոխանակ՝ նոցա) առակօք բազում ինչ։ Հարցից զձեզ (փոխանակ՝ ձեզ, ի ձէնջ) բան մի։ Ագուցի զքեզ (փոխանակ՝ քեզ) հիր և կարմիր։

2. Լսեմ, տեսանեմ, թողում. կամիմ. նշանակեմ, ասեմ, համարիմ առնում են երկու հայցական խնդիր, մեկը մի անորոշ կամ անցյալ դերբայ, իսկ մյուսը մի անձի կամ իրի անուն: Բայը կրավորական սեռի փոխած ժամանակ՝ անձի կամ իրի անունը դառնում է ուղղական ենթակա: Օրինակ՝ Եւ ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւնս Մանաւազեան և զԲզնունեաց և Որդունին անուանեալ, որք աստ ուրեմն յետ սրբոյն Տրդատայ բարձեալ ասին ի միմեանց: Ի նմանէ ասէ պատմագիրն լինել զԱրծրունիս և զԳնունիս: Յորոյ անուն և զգաւառն ասին անուանեալ Շիրակ:

Այս կիրառության փոխանակ սովորաբար գործածվում է երկրորդական նախադասություն դիմավոր բայով: Այսպես լինում է գրեթե միշտ աշխարհաբարում: Օրինակ՝ Առ սովաւ ասեն կեցեալ զՆաբուգոդոնոսոր (=Ասեն, եթէ առ սովաւ կեցեալ է Նաբուգոդոնոսոր=Ասում են, թե սրա օրով է ապրել Նաբուգոդոնոսորը): Ասէին որոտումն լինել (=Ասէին, եթէ որոտումն է=Ասում էին, թե որոտումն է): Ասացեր մի՛ ևս լինել բնակիչ ի տեղւոջս յայսմիկ (=Ասացեր, զի մի՛ ևս լիցի բնակիչ=Ասացիր, որ այլևս բնակիչ չլինի այս տեղում): Տեսին զնա յարձակեալ ի վերայ նոցա (=Տեսան, որ նա հարձակվել է): Տեսի իջանել անօթ ինչ (=Տեսա, որ մի անոթ էր իջնում): Զթշնամիսն իմ զայնոսիկ, որք ոչն կամէին զիս թագաւորել (=որոնք չէին կամենում, որ ես թագավորեմ), ածէք այսր և սպանէք: Ասէին զոգցես յերկրին Հայկազանց զայս լինել (=Ասում էին, թե կարծես Հայկազանց երկրում լիներ այս): Ոչ եթող զնա հանապազ խառն ի խուռն վարել (=Չթողեց, որ նա միշտ խառն ի խուռն վարվի): Թող զմեռեալսն թաղել զմեռեալս իւրեանց (=Թող, որ մեռելները թաղեն իրենց մեռելները): Ի նմանէ ձգեալ ասի մեծ նախարարութիւն ազգին Խորխոռունեաց (=Ասվում է, թե նրանից է առաջ եկել...): Ասէին զնա այր ընտիր լինել: Ոմանք ասեն և ի ծնանելն զսա դիպեալ պատահարաց իմն, զոր համարեցան կախարդել զսա կանանց զարմիցն Աժդահակայ (=Ոմանք ասում են, թե սա ծնվելու ժամանակ էլ հանդիպել է ինչ որ պատահարքի, որ համարեցին, թե Աժդահակի զարմերի կանայք կախարդել են նրան): Ասի ի ժամանակս Արտաշիսի ոչ գտանել երկիր անգործ յաշխարհին Հայոց (=Ասի, եթէ... ոչ գտանէր): Կամիմ զձեզ իմաստունս լինել (=Կամիմ, զի դուք իմաստուն լիջիք):

**176.** Սեռական և տրական հոլովներն ընդհանրապես նույն գործածությունն ունեն, ինչ որ աշխարհաբարում: Պետք է նկատել հետևյալ առանձնությունները:

1. Տրամաբանական ենթական անորոշ դերբայի հետ՝ դրվում է տրական հոլովով. ըստ այսմ, ուրեմն, նախորդ պրակում (§ 175. 2) բացատրված խնդիրները դրվում են սովորաբար տրական. օրինակ՝ Զկնի այսորիկ դառնալ ասէ Հայկին (=ասէ, եթէ դառնայ Հայկ): Ոչ

կամիմք Թագաւորել դմա (=ոչ կամիմք, զի թագաւորեսցէ դա)։ Աղաչեցաք չելանել նմա յԵրուսաղէմ (=աղաչեցաք, զի չելցէ նա յԵրուսաղէմ)։ Եկեսցեն աւուրք ցանկանալոյ ձեզ (=...աւուրք, զի ցանկասջիք դուք)։ Չկայր յոյս այլում զաւակի ելանելոյ (...յոյս, զի այլ զաւակ ելցէ)։ Ակն ունէին նմա այտնելոյ կամ մեռանելոյ։ Գրեցեր դու առ իս գալ ինձ առ քեզ։ Վասն ունելոյ ինձ զձեզ ի սրտի։— Ցանցանել ՟եզ ընդ անապատն (=յանցանել քում...)։

Տրականն անորոշ դերբայի հետ՝ կարելի է որոշ դեպքերում նաև գլխավոր նախադասության մեջ մի բառից կախված համարել իբրև խնդիր. օրինակ՝ Պարտ է ինձ գնալ։ Եղև անցանել նմա ընդ արտորայսն։ Զիա՞րդ մարթ է այդմ լինել։ Լաւ է առն միում մեռանել ի վերայ ժողովրդեանն (§ 77. 80)։

2. Շիջուցանել կամին զկայծակն որ մնայ իմ (փոխ. ինձ)։ Արծաթն որ կորեաւ ՟ո: Մանուկ ծնաւ մեր: Դոքա զի՞նչ են ՟ո (փոխ. քեզ Ընկեր հաւասար նորին։

3. Ցաւիմ բայի եզակի 3-րդ դեմքի հետ՝ ցաւի կամ ցաւէ, ցաւէր, ցաւիցէ կամ ցաւիցի, ցաւեաց, ցաւեսցէ կամ ցաւեսցի ինձ, ՟եզ, նմա, մեզ, ձեզ, նոցա ևլն=ցավում եմ, ցավում ես, ցաւում է ևլն. կամ սիրտս (դ, ը), մի տեղս (դ, ը) ցավում է։ Օրինակ՝ Հարկանէին զիս և ինձ ոչ ցաւէր (=և ոչ մի տեղս չէր ցավում)։ Տանջեցեր զնոսա և նոցա ոչ ցաւեաց։ Ցաւեաց ձեզ վասն իմ (=ցավեցիք, ձեր սիրտը ցավեց...)։ Չիք ոք ի ձէնջ, որում ցաւէր վասն իմ (=որ ցավեր, որի սիրտը ցավեր...)։ Ցաւեաց նմա վասն անկելոցն ի հուր։

4. Բացառականի կամ գործիականի փոխանակ տրական։ Օրինակ՝ Վառումն նորա յայտնի իմացաւ Երկիւղածացն: Նա խուլ է և կոյր և դիւաց Հարամանոյ խաբեալ (=աշխարհաբար՝ դևերի խաբած է)։

5. Քանակի կամ մասնական սեռական։ Օրինակ՝ Բեռն մի փայտի =Բեռն մի փայտ (տե՛ս § 172. բ. Բաժակ մի ջուր)։ Հինգ նկանակ հացի։ Հարիւր մար ձիթոյ։ Գրիւք երեք ալեր։ Լիտր մի իւղոյ։ Տիկ մի գինւոյ։ Ափ մի գարւոյ։ Հինգ հազար սիկղ պղնձոյ և երկաթոյ։ Կաթ մի ջրոյ։

Այս կապակցությունները հոլովվում են՝ ափոյ միոյ գարւոյ (=աշխ. մի ափ գարու). տկաւ միով գինւոյ (=աշխ. մի տիկ գինով). բայց երբեմն սեռականն էլ՝ առնվելով իբրև ածական՝ հոլովվում է անվան հետ միասին. օրինակ՝ Պատառով միով հացիւ. բեռամբ միով փայտիւ։ Այսպես նաև՝ յօրէ ծննդենէ. ի ծագաց երկրէ. յորդւոց ի մարդկանէ. յամբոխէն բազմութենէ. միամտութեամբ սրտիւ. ընկալցուք խնդութեամբ սրտիւ. հեզմամբ արեամբ արդարացաւ։ Ի մարդկանէ հընարողութենէ։ Փոխանակ՝ պատառով միով հացի. բեռամբ միով փայտի. յօրէ ծննդեան. ի ծագաց երկրի. յորդւոց մարդկան։ Յամբոխին բազմութենէ կամ յամբոխէն բազմութեան. միամտութեամբ սրտի կամ

սրտիւ միամտութեան. խնդութեամբ սրտի. հեզմամբ արեանն։ Ի մարդկան հնարողութենէ (§ 189. ծան. 2)։

Այս կարգին պատկանում են նաև՝ բիւրս ամաց, հազար մի հեծելոց, բազումս ամաց ևն. փոխանակ՝ բիւր ամս, հազար մի հեծեալք, բազում ամս։ Նոյնպես՝ զվնասակարս խոտոց, զմեծամեծս հրամանացն, զընտիրս շիրմաց, յետինքն ոչխարացն, ո՛վ մեծդ դիւցազանց, յայլս արարածոց ևն. փոխանակ՝ զվնասակար խոտս, զմեծամեծ հրամանս, զընտիր շիրիմս, յետին ոչխարքն. կամ թե՝ զվնասակարս ի խոտոց, զմեծամեծս ի հրամանաց, զընտիրս ի շիրմաց, յետինքն յոչխարացն, մեծդ ի դիւցազանց (=աշխ. խոտերի վնասակարները, խոտերից վնասակարները, խոտերի մեջ վնասակարները)։ Նույնպես՝ Ի վերայ միոյ լերանց (=լեռներից մեկի վրա)։ Երկուս մանկունս ումն արբեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրումն (=ուրումն ի դայեկաց=դայակների կամ դայակներից մեկի ձեռքով)։ Անգամ իւրեանց ումեք ոչ խնայէին (=իրենց մեկին, իրենցից մեկին անգամ չէին խնայում)։ Ի միում աւուրց (=օրին մեկը)։

**177. Բացառական և գործիական** հոլովներն ընդհանրապես նույն կիրառություն ունին, ինչ որ աշխարհաբարում։ Նկատելի է հետևյալը՝ **բանակի իմաստով** (§ 172 բ.). օրինակ՝ Արար Նոյ յերեքհարիւր կանգնոյ զերկայնութիւն տապանին և ի յիսուն կանգնոյ զլայնութիւնն (= երեք հարյուր կանգուն... հիսուն կանգուն)։ Բարձրութիւն Գողիաթու (էր) վեց կանգուն և թզաւ։ Եմմաւոն հեռի էր յԵրուսաղեմէ հարիւր և վաթսուն ասպարիսաւ (=հարյուր վաթսուն ասպարես)։ Նստաւ արտաքոյ բանակին հեռի երկոտասան հրասախաւ (=տասներկու հրասախ հեռու)։— Այսպես և Հռոմայեցի յազգէ կամ ազգաւ (=ազգի կողմից կամ ազգով հռոմայեցի)։ Ժամէ ի ժամ, տանէ ի տուն, ամ յամէ= ժամեժամ, տնետուն, տարեցտարի։

## ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ

**178.** Անորոշ դերբայը գոյական է և նույն նշանակություն ունի, ինչ որ նույն բնից կազմված բայական անունը. օրինակ՝ յաղթել= յաղթանք, զարմանալ=զարմացումն, երթալ=երթ։ Յաղագս երթալոյն Աբգարու յարևելս։ Երթ մեծին Սահակայ ի Տիզբոն։

Դա իբրև դերբայ առնում է նույն խնդիրները, ինչ որ համապատասխան բայը (դիմավոր բայը), օրինակ՝ Յաղագս թագաւորելոյ Վաղարշայ և շինելոյ զաւանն Բասենոյ, և պատել պարսպաւ զնոր քաղաքն։

**179.** Պետք է նկատի ունենալ՝

1. Անորոշ դերբայն իբրև բայանուն՝ կարող է և հոդն առնել, բայց հաճախ անհոդ է գործածվում այն դեպքերում, երբ աշխարհաբարում

այդ դերբայը հոդ ունի, օրինակ՝ Թագաւորել Արշակայ և որդւոցն=Արշակի և իր որդիների թագավորելը։ Թագաւորեցուցանել զՎաղարշակ Հայոց աշխարհիս=Վաղարշակին մեր Հայոց աշխարհի վրա թագավորեցնելը։ Խաղալն Արտաշիսի յարեմուտս և ձերբակալ առնել զԿրիսոս և աւարել ընձեռել Հայոց զպատկերս կռոցն։

2. Անորոշ դերբայը գործածվում է բոլոր հոլովներով ու նախդիրներով՝ նայելով իր խնդրառու բառի պահանջին, օրինակ՝

Ուղղական ենթակա՝ Լաւ է ոչ ուտել միս։ Անդ էր տեսանել կոտորած անհնարին։

Սեռական՝ Վասն տնկելոյ զանտառն, որ կոչի ծննդոց։

Տրական՝ Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։

Ներգոյական և գործիական՝ Իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց և ցամաքեցոյց իսկ ի սիգալն իւրում զյորձանս ծովուց։

Հայցական՝ Սմբատ հրամայէր զփողսն պղնձիս հնչեցուցանել։

Բացառական՝ Ձայն ահա ի լսելոյ գիտեմք։

3. Անորոշ դերբայը հաճախ անփոփոխ ձևով դառնում է խնդիր այնպիսի բայերի, որոնք սովորաբար ուրիշ հոլովով են պահանջում իրենց խնդիրը, օրինակ՝ Երկնչել յիմեքէ=վախենալ մի բանից, բայց՝ Երկեաւ երթալ անդր=վախեցավ գնալ այնտեղ։ Ես կերակուր ունիմ ուտել=կերակուր ունիմ ուտելու։ Մեք զցաւոց և զմահուան բազում ինչ պատճառս ունիմք ճշմարիտ բանիւ ի մէջ բերել։ Իշխանութիւն ունիմ արձակել զքեզ։ Եկն տեսանել (=եկն ի տեսանել=եկավ տեսնելու)։ Աճապարէր հասանել=աճապարում էր հասնելու։ Եկեալ նստաւ զՇրէշ բլրով... կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի։

## ՇԱՐԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ

**180.** Բառերի շարադասությունը նախադասության մեջ՝ ընդհանրապես ազատ է, ինչպես և աշխարհաբարում։ Պետք է դիտել հին և նոր լեզուների հետևյալ տարբերությունները։

**181.** Գրաբարում, մանավանդ պատմելիս, բայը հաճախ դրվում է ենթակայից առաջ, շատ անգամ նույնիսկ խոսքի սկզբում, մինչդեռ աշխարհաբարում սովորաբար ենթական բայից առաջ է ընկնում և բայը հաճախ նույն խոսքի վերջն է դրվում։ Օրինակ՝ Ապա յետ այսորիկ դարձեալ առաքեաց առ Արշակ արքայ Հայոց Շապուհ արքայ Պարսից։ Ապա կոչեաց թագաւորն Պարսից զդիւթսն և զաստեղագէտսն։ Պատասխանի ետ Պարթևն։ Ապա տայր հրաման Շապուհ արքայ Պարսից։ Ապա արձակեաց արքայն Պարսից Շապուհ ի վերայ աշխարհին Հայոց երկուս ոմանս։ Լուաւ զայս ամենայն թագաւորն։

**182. Վերադիր ածականները** դրվում են անունից և առաջ և հետո, օրինակ՝ քաջ այր, այր քաջ։

**183. Սեռական խնդիրը կամ հատկացուցիչը** սովորաբար իր խնդրառու անունից հետո է դրվում, բայց կարող է և առաջ դրվել. օրինակ՝ Յաշխարհս Հայոց. ի Հայոց աշխարհս։ Սկիզբն չարեաց. չարեաց ըսկիզբն։

**184.** Սովորաբար իրենց խնդրառուից հետո են դրվում և մյուս բոլոր **կողմնակի խնդիրները**, ինչպես են՝ դերբայների, բայական անունների, թվականների և թիվ ու քանակ ցույց տվող այլ բառերի լրացումները. օրինակ՝ Յաղագս յարձակելոյ Տիգրանայ ի վերայ զօրացն Հռոմայեցւոց։ Դիմումն ի մեզ Պոմպէի։ Խաղալն Արտաշեսի յարեմուտս և ձերբակալ առնել զԿրասոս։ Մի ոմն ի ձէնջ։ Զայնու ժամանակաւ ապստամբեաց յարքայէն Հայոց մի ի ծառայից նորա։

Աշխարհաբարում **խնդրառուն** է հետո դրվում, ինչպես Հռոմայեցոց զորքի վրա Տիգրանի հարձակվելու մասին։ Ձեզնից մեկը։

**185.** Բացասական խոսքերի մեջ **ոչ**, **մի՛** մակբայները կարող են բայից բաժանվել. օրինակ՝ **որք ոչ** ընդ նովին օրինօքն **մտանէին**: **Մի՛** այսուհետև **հոգայցէք** վասն վաղուի։ Մի՛ դու ընդ իս բազմապատիկ տանջիր և ոչ ես ընդ քեզ սակաւագոյն (§ 32)։

## ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆ

**186. Ենթակայի** և բայի համաձայնությունը նույն կերպ է լինում, ինչպես և աշխարհաբարում։ Պետք է դիտել հետևյալ տեսակի համաձայնությունները, որ կան և մեր Նոր լեզվի մեջ։

1. Երբ բազմակի ենթակաները ցույց են տալիս մի ընդհանուր գաղափար, բայը դրվում է եզակի, օրինակ՝ Դողումն և սոսկումն ունի զարարածս (աշխարհաբար՝ ահ ու դողը բռնեց)։

2. Երբ եզակի ենթական հավաքական նշանակություն ունի, բայը կարող է դրվել նաև հոգնակի, օրինակ՝ Առհասարակ ատեանն աղաղակէին։ Ի բառնալ ազգին Արշակունեաց՝ **տիրեցին** աշխարհիս Հայոց **ազգըն** Սասանայ պարսկի։ Դիզեալ կային ամբոխն։

3. Երբ անեզական անունները ենթակա են, լինին եզակի թե հոգնակի նշանակությամբ առնված, բայը սովորաբար դրվում է հոգնակի. երբեմն միայն եզակի է դրվում, երբ անունը եզակի իմաստով է առնըվում. օրինակ՝ Եղիցին կամք քո։ Տեսին աչք իմ։ Հոգւոյ և մարմնոյ միտք են կառավար։ Բարք մարդկան հակառակասէր է։ Զի՞ պիտոյ է մեզ բնաւ կեանք անցաւոր աշխարհիս (§ 85)։

**187. Ստորոգյալն** ու **ստորոգելիական վերադիրը** սովորաբար եզակի են դրվում. բայց կարող են նաև թվով համաձայնել հոգնակի ենթակայի հետ. օրինակ՝ Դուք ամենեքեան եղբարք էք։ Վարդապետք էիք, արդ աշակե՞րտք լինիցիք։ Դուք եղերուք պատրաստք։ Հինգ ի նոցանէ յիմարք էին և հինգն՝ իմաստունք։

*Ստորոգելիական վերադրի համաձայնության մասին տե՛ս § 174։*

**188.** *Եթե ստորոգյալը անեզական անուն է և բայից անմիջապես առաջ է դրված, եզակի ենթակայի բայը հոգնակի է դրվում. օրինակ՝ Միս ուտել, ասեն, մեղք են=Միս ուտելը, ասում են, մեղք է։ Պատուէրն այն կեանք են։ (§ 85)։*

**189.** *Նախադաս* **ածականները** *թվով և հոլովով սովորաբար չեն համաձայնում իրենց գոյական անունին, իսկ ետադասները սովորաբար համաձայնում են։ Օրինակ՝*

*ա.* **Նախադաս անհամաձայն,**—*Ծառազգեստ զբաղում հարուածոյ։ Առաքեաց առ նա բազում գանձիւք։ Էր զօր չարաչար մահուամբ վախճանէր։ Ոչինչ կարօտին նոքա մարմնաւոր մեծութեան։ Յետ երկոտասան ամաց։ Տասն կուսանաց։ Երկու աւուրբք Այս ամենայն չարիք։ Զայս նախարարքս։ Յարքունի տանէ։ Գեղեցիկ վիմօք։*

*բ.* **Նախադաս համաձայն.**—*Վասն մեծի յուսոյն։ Վիճակս արկանէին, թէ ո՛ր լեզու որո՛ւմ դասու հասցէ յաջակերտութիւն։ Այսպիսեաց իրաց։ Ի ձեռն պատուաւորի զօրագլխի ուրուք։ Մերոյ ազգիս։ Այսու բարեմտութեամբ։ Ընդ նովին օրինօք։ Զչորս զինուորսն. չորից զինուորացն։ Հինգ այր. հնգի առն. հնգից արանց։ Զերկուս աւուրս, երկուց աւուրց։ Նորոյ ուխտի ։*

*գ.* **Ետադաս համաձայն,**—*Արք պարսիկք։ Արքք օրհասականք։ Տերանց ձերոց մարմնաւորաց։ Բանիւք սպառնալեօք։ Յլուք սպիտակօք։ Ընդ օրինօք քովք։ Հայր իմ, հօր իմոյ, հօր իմում, ի հօրէ իմմէ։ Արք երկու, արանց երկուց։ Առն իմաստնոյ։ Ժամանակս բազումս։ Բազում գործս բարիս։ Հողովք աշխարհականօք։ Բոլորով սրտիւ իմով։ Ձիւղոյդ ձերմէ։ Ամացն քառասնից։ Զմայրեաւքն տնկելովք էր։ Կատարած զօրացն հարելոց։*

*դ.* **Ետադաս անհամաձայն,**—*Հրամանաւ արքունի։ Արք հինգ, զարս հինգ. արք վեց, արս վեց ելին։ Հարքն մեր։ Լապտերքս մեր։— Այսպես միշտ ետադաս քանակական և տացական ածականները հոգնակի ուղղական և հայցական հոլովների հետ։*

**Ծան. 1.** *Որեար, մանկտի, մարդիկ ևլն. ձևով եզակի են, իսկ իմաստով հոգնակի. դրանց ածականները համաձայնում են ըստ իմաստի՝ Յորում սակաւք ի* **մարդկանէ յառաջագոյն ցրուեալքն** *դադարեալ բնակէին։ Մարդկանն մոլորելոց։ Բայց և՝ մարդկանդ այդմիկ. մանկտւոյ իմում։*

**Ծան. 2.** *Հին մատենագիրների սիրած ճարտասանական ձևերն են՝ ածականի փոխանակ գործածել նրանից կազմված վերացական անունը՝ 1) իբրև սեռական խնդիր. 2) կուսքի իմաստի պահանջած հոլովով, իսկ բուն անունն՝ իբրև վերացական անվանսեռականը։ Օրինակ՝ Ծառայք ամբարշտութեան (փոխանակ՝ ծառայք ամբարիշտք)։ Պաշտօն պղծութեան։ Յերդս և ի կաքաւս լկտութեան։ Խնդութեամբ սրտիւ (այս համաձայնության մասին տե՛ս § 176. 5)։ Յո՞ թափեցից զգառնութիւն թիւնից, կամ ո՞ւր բաց գատրեցից զբազմութիւն նետիցն։ Յայտնեցաւ խորամանկութիւն խորհրդոցն (տե՛ս § 176. 5 զվնասակարս խոտոց)։*

**190.** *Բացահայտիչն իբրև գոյականի վերադիր, լինի բացահայտյալից առաջ թե հետո դրված, սովորաբար թվով և հոլովով համաձայնում է իր բացահայտյալին։ Տեղերի հատուկ անունները միայն, եթե նախադաս են (երբեմն և ետադաս ժամանակ) սովորաբար անփոփոխ են մնում։ Օրինակ՝ Արշակ արքայ, Արշակայ արքայի, յԱրշակայ արքայէ, Արշակաւ արքայիւ։ Սպարապետն Վարդան, սպարապետին Վարդանայ եւն։ Ապար աշխարհ, Ապար աշխարհի, յԱպար աշխարհէ եւն։ Տիսպոնի քաղաքի։*

## *ՀՈԴԵՐ*

**191.** *Գրաբարի հոդերն են՝* ս, դ, ն, *որոնք գործ են ածվում՝*

*1.* Ցուցական *իմաստով՝ իբրև* այս, այդ, այն. *օրինակ՝ տեղիս=այս տեղի, տեղիս այս. տեղիդ=այդ տեղի, տեղիդ այդ. տեղին=այն տեղի, տեղին այն։*

*2.* Դիմորոշ *իմաստով, ինչպես և աշխարհաբարում,* ես, դու, մեք, դուք, *բառերի նշանակությամբ. օրինակ՝ Մի՛ հեղգասցուք մեղաւորքս (=Մենք մեղավորներս)։ Օգնեա՛ ինձ միայնումս։—Այլ և կոչականների հետ՝ Լուարո՛ւք ինձ, զօ՛րքդ ամենեքեան։ Սիրեցեա՛լդ իմ։*

*3.* Ստացական *իմաստով, ինչպես և աշխարհաբարում՝* իմ, քո, իւր, մեր, ձեր, իւրեանց, նորա, նոցա *բառերի նշանակությամբ, որոնց հետ և սովորաբար գործ են ածվում։ Օրինակ՝ Եթէ ակն քո չար է, ամենայն մարմինդ խաւարին եղիցի։ Յայսմ գիշերի զոգիդ ի քէն ի բաց պահանջիցեն։ Կենդանի ես և շունչդ ի քեզ է։ Ի քում ականդ գերան կայ։ Զմեր վաստակութիւնս յո՞ տարայց։ Մերոյ ազգիս։ Աշխարհս Հայոց։ Զձեր մոլորութիւնդ սրտի մտօք դարձուցանիցէք ի ճշմարտութիւն երևելի մերոց դիւցազնական օրինացս։ Հաւասար իմոց սիրելի նախարարացս։*

**192.** *Գոյականաբար գործածված ածականներն ու սեռականները, որոնց անունը զեղչվում է, ստանում են, ինչպես աշխարհաբարում, սովորաբար* ն, *երբեմն* ս, դ *հոդերը և անվան նախդիրը։ Այսպիսի ածականները դրվում են իրենց գոյականի հոլովով, իսկ սեռականները միայն ուղղական և հայցական հոլովներով են գործածվում, երբեմն միայն՝ հոգնակի թվով։ Օրինակ՝ Եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն (=ընդ փայտ չոր) զի՞նչ լինիցի։ Հոգայ զաշխարհիս (=աշխարհիս բաները)։ Զքոյսն ի քոյոց քեզ մատուցանեմք։ Զնոցայն լաւ վարկուցեալ, քան զիւրն փրկութիւն։ Յիւրսն եկն և իւրքն զնա ոչ ընկալան։*

**193.** *Առանձնապես դիտելու է, որ դերանունների սեռականները (որոնցից իմ, քո, մեր, ձեր, իւր ստացական ածական են. § 101. 6. 7) լինում են՝*

Իմ, *իմն, իմս, իմքս, իմոյք, յիմսս=իմոյական, իմային, իմոյին=իմը, իմս, իմինը, իմոնք։*

**Քո**, *քոյն, քոյդ, քոյքն, զքոյսն=քոյական, քոյին=քոնը, քոնդ, քուկդ, քոնոնք։*

**Իւր**, *իւրն, իւրքն, յիւրսն=իւրական, իւրային (իւրայոցն, յիւրայոց. իւրայովք)=իրը, իրենը, իրականը, իրայիններըշ*

**Մեր**, *մերս=մերային (մերայնոց), մերոյին, մերոյն=մերը, մերոնք։*

**Ձեր**, *ձերդ=ձերային (ձերայնոց), ձերոյին=ձերը, ձերոնք։*

**Իւրեանց**, *իւրեանցն, զիւրեանցն, իւրեանցքն, յիւրեանցն=իւրեանցային=իրենցը։*

**Սորայս**, *դորայդ, նորայն. սոցայն, դոցայն, նոցայն (հոլովումը տե՛ս § 101. 7)=սրանը, դրանը, նրանը ևլն։*

Ծան. *Երբ ա և ո վերջացած բառերի վրա հոդ է դրվում, հոդից առաջ մտնում է յ. քոյդ, Նորայն։ Եղիցի ձեր բան՝ այոյն այո և ոչն ոչ։*

**194. Որ, որ ինչ, որ ոք, որպէս, որպիսի, որչափ, յորժամ, յորմէ հետէ, ուր, մինչ, զի** *(նախադաս) բառերով սկսված երկրորդական հարաբերական խոսքերի մեջ առաջին շեշտված բառի, գլխավորապես բայի վրա դրվում է* **ս, դ, ն** *հոդերից մեկը։* **Ս** *հոդը նշանակում է այս դեպքում՝ ես, մեք. սա, սոքա, այս, այսոքիկ. աստ, այսր. այժմ, այսօր.—* **դ,** *հոդը նշանակում է՝ դու, դուք. դա դոքա, այդ, այդոքիկ. այդր, յայդմ ժամու.* **ն** *յոդը՝ նա, նոքա, այն, այնոքիկ. անդ, անդր. յայնժամ։ Երբեմն էլ ստանում են աւասիկ, աւադիկ, աւանիկ ցուցականների իմաստը։*

*Հոդերն այսպես գործ են ածվում ավելի այն ժամանակ, երբ հարաբերյալը հարաբերականից հետո է գալիս (§ 232. 2), կամ երբ հարաբերյալն անձնական կամ ցուցական դերանուն է և զեղչված է։ Բայց երբեմն հարաբերյալի չզեղչված ժամանակն էլ ավելադրությամբ գործածվում են այս հոդերը՝ խոսքին ուժ տալու համար։ Աշխարհաբարում այս դեպքում երբեմն կրկնվում է հարաբերյալը։ Օրինակ՝ Ես որ կոչեցայս անմահ, ահաւասիկ... (=Ես, ես որ անմահ կոչվեցի, ահա՜...)։ Ես եմ որ խօսիմս ընդ քեզ։ Զի ասէքդ՝ բարւոք ասէք (=Այդ որ ասում եք, լավ եք ասում)։ Ոչ ոք կարէ զայդ նշանս առնել, զոր դուդ առնես։ Բանիցդ առասպելաց... զոր ոչդ վայել է քեզ խօսել։ Ոչ գիտեմ՝ զինչ խօսիսդ։ Գիտէ՞ք՝ զինչ արարիդ ձեզ։ Արարին՝ որպէս ասացանն։ Ապախտ արարեր զվաստակսն, զոր ինձն վաստակեցեր։ Եւ որ սպառնասդ ինձ մահու, ահա՛ խառնես զիս ի փունդն։ Այլ զոր դուդ կոչես մեծ Անահիտ տիկին... Որ ասացերդ թէ... Զոր ասացերն թէ... Եւ մինչդեռ կայրն կախեալ այսպէս, խօսեցաւ զայս ամենայն։ Դու աստէն իսկ աշխատեա՛ց ի մշակութիւն տանջանացդ, յորում կասդ։ Երանի երկրին, ընդ որ նա՛յն անցանիցէ, և տեղւոյն, ուր նա՛յն վախճանեսցի։ Պետրոս և որ ընդ նմայն էին։ Ուր եսն իցեմ, և դուք անդ իցէք։ (Տե՛ս § 30. 3)։*

**195.** *Հարցական խոսքերի մեջ էլ երբեմն բայի կամ ուրիշ բառի*

վրա դրվում է ս, դ, ն հոդերից մեկը, որ և աշխարհաբար թարգմանվում է այս, այդ, այն ցուցականներով. օրինակ՝ Զի՞նչ խօսիդ=Այդ ի՞նչ ես խօսում։ Զիա՞րդ երկնչիսդ ի սատանայէ=Այդ ի՞նչպէս վախենում ես սատանայից։

**196. Որոշող Ն հոդի** *գործածությունն աշխարհաբարում և գրաբարում մեծ մասամբ նույնն է։ Ուշադրություն պիտի դարձնել հետևյալ տարբերությունների վրա.*

1. Սովորաբար որոշող հոդ չեն առնում ընդհանուր իմաստով, իբրև սեռի անուն, գործածված անունները, մանավանդ երբ հոգնակի են. բայց երբ հայցական են, զ նախդիրն առնում են։ Անհոդ են մնում նույնպես և բնության մեջ մի հատ առարկաների անունները՝ լուսին, արեգակն, երկիր, երկին, աշխարհ, հիւսիս, հարաւ ևլն. նույնպես և դժոխք, սատանայ, Գիր (=սուրբ Գիրք). ազգերի անունները, երբ հոգնակի են. հատուկ անունները, այլև՝ ծով, ցամաք, տէր, աստուած (քրիստոնեական իմաստով), հաճախ և արքայ բառը ևլն։ Օրինակ՝ Գինի (=գինին) ուրախ առնէ զմարդ և հաց հաստատէ զսիրտ մարդոյ։ Որ սիրէ զխրատ, սիրէ զիմաստութիւն։ Զայնր զփորձ ոչ միայն քրիստոնեայք, այլ և հեթանոսք և մոգք գիտեն։ Հրեայք ի զուր ակնկալութիւն կապեալ են։ Մի դանձէք ձեզ գանձս յերկրի, ուր ցեց և ուտիճ ապականեն և ուր գողք ական հատանեն։ Յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք և յորժամ կամիք կարող էք առնել նոցա բարիս։ Օդ ընդ ջուր և ընդ երկիր խառն է։

2. Եթե հատուկ անունն ունի առաջից մի ածական վերադիր կամ հասարակ անուն բացահայտիչ, այդ ածականն ու հասարակ անունն առնում են Ն, կոչականում Դ հոդը։ Իսկ եթե ածականը կամ հասարակ անունը հատուկ անունից ետադաս են, երկուսն էլ, խնդիրն և խնդրառուն, սովորաբար անհոդ են մնում. օրինակ՝ Մեծն Ներսէս, սէգն Տրդատ, թագաւորն Տրդատ, գետն Տիգրիս, քաղաքն Տիզբոն, քա՛ջդ Թէոփիլէ,— Ներսէս Մեծ, Տրդատ թագաւոր, Երասխ գետ։ Նույն ձևով՝ արեգ ամիս, շուշան ծաղիկ, եղևին ծառ. բայց՝ ամիսն արեգ, ծաղիկն շուշան, ծառն եղևին։

3. Եթե անունն ունի որոշող սեռական վերադիր, սովորաբար միայն սեռականն է հոդ առնում. երբեմն սակայն երկուսն էլ՝ սեռականն ու իր անունը՝ հոդ են առնում։ Բայց երբ սեռականը հատուկ անուն է, հոդը սովորաբար դրվում է միայն խնդրառու անվան վրա։ Երբ վերադիր է իմ, քո, մեր, ձեր, իւր, իւրեանց, նորա, նոցա բառերից մեկը, կամ մի ազգի անուն, դրանց խնդրառու անունը կարող է Ն հոդ առնել կամ բնավ անհոդ մնալ։ Օրինակ՝ Եղև պատճառ մահուան մարդոյն։ Կինն Գնելայ հասեալ առ արքայն Ներսէս՝ գոյժ արկանէր նմա զիւրոյ առնն տարապարտ կորուստն։ Մի՛ գիտասցէ ձախ քո՝ զինչ գործէ աջ քո, որպէսզի եղիցի ողորմութիւնն քո ի ծածուկ։ Ի նախարարսն Հա-

*յոց անկանէր թագաւորութիւնն։ Այրուձին Հայոց։ Թագաւորն Հոնաց։ Ի բառնալ ազգին Արշակունեաց։ Ազգն Սասանայ պարսկի։*

## ՆԱԽԱԴՐՈՒԹՅՈՒՆ

**197.** *Գրաբարի կապերը դրվում են իրենց գոյականից առաջ, ուստի կոչվում են նախդիր կամ նախադրություն. նախդիրներն են՝ զ, ի(յ), ց, առ, ընդ, ըստ, իբրև զ, քան զ, մինչև, բաց կամ բայց, հանդերձ, վասն։*

**198.** *Նախդիրների կիրառության համար ընդհանրապես պետք է իմանալ.*

*1. Կողմնակի խնդիրներն իրենց խնդրառուի հետ առնվում են իբրև մի միություն. ուստի նախդիրը դրվում է նախադաս կողմնակի խնդիրներից ամենից առաջ. նույնիսկ եթե կողմնակի խնդիրը մի նախդրով է սկսվում, նրանից առաջ ընկնում է խնդրառուի նախդիրը։ Օրինակ՝ Այս արդարացուցանէ* զանգիր *հին առացեալ* զրոյցս: *Եւ* զընդ *լծով կացեալսս (=զկացեալսս ընդ լծով) լծադիրս և հարկապահանջս կացոյց բազմաց։*

*2. Նախդիրը կարող է կրկնվել նախադաս ու ետադաս ածականի և իր գոյականի, ինչպես և կողմնակի խնդրի և իր խնդրառուի վրա, մանավանդ երբ կողմնակի խնդիրը որևէ բառով բաժանված է իր խընդրառուից։ Օրինակ՝ Ի լերինս յայսմիկ։ Լսել... զիւրոյ թագաւորին զանարգանս։ Զամենեցունց զկարգեալ թոշակն նուազեցուցանէին։ Զզէնս և զզարդս զարի արանց և զքաջ երիվարաց։ Յափշտակել զքրիստոնէից զինչս և զստացուածս։ ԶՅունաց աշխարհն և զՀոռոմոց քաջ գիտեմ։ Յամենեսին ի ձեզ։ Ընդ ձեզ ընդ ամենեսեան։ Ընդ գետն մեծ ընդ Կուր։ Զողջոյն բերեալ զմեծ թագաւորին։ Զիւրաքանչիւր տեղի շնորհէր նոցա զբազմականին։ Աքէլ ի հարազատէն սպանանի յեղբօրէն։ Ի պատոփրանացս յայսցանէ ի փոքունց։ Ոչ զիւրանելն ոք տեսանէ զնորա, և ոչ զամբառնալ։ Ոչ թողոյր զերկոցունց տոհմացն զորձ կորիւն և ոչ զմի (§ 156. 2)։*

*3. Նախդիրները մեծ մասամբ ունեն մի քանի նշանակություն և գործ են ածվում մի քանի հոլովների հետ՝ ձևափոխելով նրանց հոլովական իմաստը։ Երբեմն, սակայն, միայն ավելի որոշում են հոլովների իմաստը որ հոլովներն առանց նախդրի էլ ունեն։*

## Զ

**199.** **Զ** *նախդիրը բառին կպած է գրվում։ Բաղաձայնից առաջ արտասանվում է* ըզ. *ձեռագիրների մեջ գրվում է նաև* զը, *ինչպես արտասանում էին հին վարդապետները,—զմարդ=ըզմարդ, զըմարդ։*

**200.** **Զ հայցականի հետ** *դրվում է, երբ հայցականը որոշյալ է և սեռի անուն է, հաճախ և երբ ուղղության հայցական է (տե՛ս § 83. 137, 1. 171—173. 196. 1)։*

**201. Զ տրականի հետ** խնդրում են մի քանի բայեր՝ հարկանել, զարկանել, զարկուցանել, անկանել։ Աշխարհաբար թարգմանվում է տրական կամ գործիական հոլովներով. օրինակ՝ Հարկանեմ զքարի, զվիմի, զգետնի (=քարի զարնել, քարովը տալ)։ Ցետս յետս չոգան և զարկան զգետնի (=գետնին զարնվեցան, գետնովը դիպան)։ Ծափ զծափի հարկանեմ (=ծափ ծափի տալ)։

Նկատել հետևյալ դարձվածները՝ զահի, զերկիւղի, զամօթի, զդողման հարկանիմ։ Զագահութեան, զախտի հարկանիմ (ինչպես աշխ. մեկի սիրուն զարնվել)։ Զդիմի հարկանիմ ումեք։

**202. Զ բացառականի հետ,** որ կոչվում է պատմական հոլով, նշանակում է՝ **մասին, վրա, համար** (=վասն, յաղագս, ի մասին), կամ թարգմանվում է լոկ բացառական հոլովով։ Խնդրում են՝

1. Այն բայերը, որոնք նշանակում են՝ ասել, պատմել, մտածել. ինչպես՝ խորհիմ, զրպարտեմ, ամբաստանեմ, վկայեմ, ճառեմ, գրեմ, հարցանեմ, հոգամ, փոյթ ունիմ, անփոյթ առնեմ, տրտնջեմ, քրթմնջեմ, խէթ ունիմ,—այլ և գոհանամ, կարօտիմ։ Օրինակ՝ Հարցանելով եհարց զմէնջ (=մեզնից, մեր մասին)։ Ոչ է փոյթ քեզ զումեքէ։ Խորհուրդ արարին զնմանէ։ Եղբայր քո ունի խէթ ինչ զքէն։ Դու ուստի՞ դիտես զայդպիսի բանս խօսել զտեառնէ։ Գոհանամ զքէն։ Քանի՞ ամբաստանեն զքէն։ Ասիցեն զամենայն բան չար սուտ զձէնջ։

2. Ունիմ, կալնում, ձգեմ, առնում, բուռն հարկանեմ,—կապեմ, կախեմ, կախեալ կամ և այլ բայերը։ Աշխ. բացառական հոլով. օրինակ՝ Կալաւ զձեռանէ նորա (=ձեռիցը բռնեց)։ Բուռն եհար զնոցանէ։ Գրէր և կնքէր զերդումն և կապէր զաւետարանէն (=ավետարանից կապեց)։ Զնա կախեցին զփայտէ։ Կախել զմիոյ ոտանէն։ Թուր զգօտւոյ (=գոտուցը կախ)։

3. Առաքեմ, յղեմ, արձակեմ (=մարդ ուղարկել), գնամ, երթամ, դեսպան առնեմ ևն. զումեքէ, զիմեքէ=մէկի եւեից գնալ, ուղարկել (կանչելու. բերելու համար. կամ գնալ, ուղարկել մի բանի (բերելու համար)։ Օրինակ՝ Առաքեաց Շապուհ ի Հայս արս զհողոյ եւ զջրոյ (=հողի ու ջրի) և ընդ սակաւ աւուրս եկին բերին զայն ինչ, զորմէ յղեացն (=ինչի որ ուղարկել էր)։

**203. Զ գործիականի հետ,** որ կոչվում է պարառական հոլով, նշանակում է.

1. Տեղի իմաստով՝ **ջուրջը, չորս կողմը, չորս բոլորը.** կամ՝ **կողմը. վրա. մոտերը:** Օրինակ՝ Մի ոմն ի նոցանէ, որ զնովաւն կային։ Խռնեցան զնովաւ ժողովուրդք բազումք։ Ամենայն ժողովուրդն զծովեզերբն զցամաքն ունէին։ Եղեն դիակունք նոցա իբրև աղբ զճանապարհաւ։ Եւ մտեալ թագաւորն հայել զբազմականօքն։

Երբեմն ավելանում է շուրջ մակբայը. օրինակ՝ Ժողովուրդն շուրջ զնովաւ նստէր։ Հայեցաւ շուրջ զիւրև (=նայեց իր շուրջը) Ցամենայն տեղիս շուրջ զգաւառաւն։

2. Ժամանակի իմաստով՝ մոտերը (շուրջ), ժամանակները: Օրինակ՝ Զինն ժամու (=ժամը իննի մոտերը,—շուրջ ինը ժամին)։ Եւ նվաւ զչորրորդ ժամու՝ ետես այլս, զի կային դատարկք ի հրապարակս։ Զմէջ գիշերաւ։ Զայնու ժամանակաւ։

3 Հետևյալ բայերն առնում են զ-ով գործիական խնդիրներ, որ աշխարհաբար թարգմանվում են կա՛մ գործիական, երբեմն և ուրիշ հոլովով, կա՛մ վրա, վրայով բառերով,—Եմ, լինիմ, գամ, առնեմ զիւիք =մի բանով լինել (անել), մի բանի հետ լինել, զբաղված լինել. օրինակ՝ Մինչ նոքա զաղմկաւն էին, զայնու լինէին, գային։ Զրանիւք առնել զոք (=մեկին խոսքի բռնել, խոսքով անել)։ Ամենայն պակասութիւնքդ զինև (=իմ վրա, իմ վզիս)։ Զքազիմ զիւիք։ Զմիմեամբք (=իրար վրա) ելանել, դիզանել, արկանել։ Այր զարամբ ելանէին տիրել աշխարհիս։ Զոմամբ ծիծաղել, կատակել, արհամարհել, այպանել։ Զմտաւ ածել (=միտը բերել, մտքով անցնել, մտածել)։ Ածել զիւրև (յանկուցանել=իրեն քաշել)։ Ածել զձեռամբ, զձեռօք, զբռամբ (=ըմբռնել, ունել)։ Ածել զնովիմբ (=ավելացնել, վրա բերել)։ Ածել զբոցով (=բոցով անց կացնել, վրան դնել)։ Ածին զնոքօք ձորձս (=վրաները ձորձ քաշեցին)։ Ունել, առնուլ զզէն իւր զինքեամբ (=վրան ունենալ, առնել)։ Արկանել ինչ զիւրեաւ, զգլխով (=վրան գցել)։ Զամենայն վնասուն պատճառսն արկանէր զկապելովքն։ Եւ զաջ թեւն բեկեալ՝ զձախոյ կողմամբն արկեալ։ Անկանել զպարանոցաւ (=վզովն ընկնել)։ Երթալ, վազել, անցանել զիւիք, զգետով, զցամաքաւն (=մի բանի վրայով)։ Երթալ զսրով (=սրի վրա ընկնել)։ Ցանել ինչ զերեսօք։ Հեղուլ արտասուս զերեսօք (=երեսովը, երեսի վրայով)։ Անցանել, զանցանել, զանց առնել, ելանել զպատուիրանաւ, զուխտիւ, զխրատով, զաւանդութեամբ, զնովաւ (=զանց անել, անտես անել, չկատարել, չպահել)։ Անցանել, անցուցանել, զանցանել զոմամբ, զիւիք (=գերազանցել, առաւելուլ)։ Անցուցանէր պայծառութեամբ զթադաւորաբնակ արքունեօքն (=գերազանցում էր)։ Անցանել, զանցանել զոմամբ (=առաջ անցնել, առաջ ընկնել մեկից)։

## Ի, Յ

**204. Ի** նախդիրը ձայնավորով սկսվող բառերի վրա դառնում է յ, երբեմն ի յ, որ բառին կպած է գրվում։

**205. Ի հայցականի հետ,** որ կոչվում է «նախդրիւ տրական», գործ է ածվում.

1. Երբ խնդիրը ցույց է տալիս այն տեղը, երբեմն և իրը կամ անձը, դեպի ուր, կամ դեպի որը, որի մոտ, վրա, մեջ ուղղվում է գործողությունը իբրև պատասխան յո՞ հարցի (§ 141. 1)։ Աշխարհաբար՝ հայցական-ուղղական, տրական հոլովներով և դեպի, մեջ, վրա, մոտ բառերով։ Օրինակ՝ Եւ թագաւորն Հայոց դառնայր ի կողմանսն Հայոց,

յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք։ Ոչ արկանեն գինի նոր ի տիկս հինս։ Երթայք ի վաճառականս և գնեսջիք։ Դեսպանս ստիպաւ արձակէր յամենայն ազգս հեռաւորս։ Ընդունել ինչ ի գանձ արքունի։ Իբրև եկն ի նա (ի թշնեին)։ Զբոլոր բարկութիւնն եհեղ յայրն երանելի։ Որ յարեւելս առ մեզ գայցէ՝ թողցեն. իսկ յարևելից յարևմուտս անանց լիցի ճանապարհ։ Ամբարձ զաչս իւր յաշակերտս։ Ընդէ՞ր ոչ ետուր զարծաթն իմ ի սեղանաւորս։ Դուք երթայք ի տօնն, ես ոչ երթամ յայն։

2. Երբ խնդիրը, սովորաբար բայական անուն կամ անորոշ դերբայ, ցույց է տալիս նպատակը, որին հասնելու համար կատարվում է գործողությունը։ Աշխարհաբար թարգմանվում է տրական, երբեմն և հայցական-ուղղական հոլովներով և ճամար բառով. բայական անունը սովորաբար անորոշ դերբայ է դառնում. երբեմն պահվում է գրաբարի ի նախդիրը։ Օրինակ՝ երթալ յորս, հասանել յօգնութիւն, գումարել ի մարտ պատերազմի։ Ի խորհուրդ կոչել։ Ի գործ առաքել։ Որ լեզու որում դասու հասցէ յաշակերտութիւն։ Սրտի մտօք եկեալ էին ի վաստակ արքունի։ Աշխարհագիր առնել զամենայն երկիրն Հայոց ի թողութիւն հարկաց և ի թեթևութիւն այրուձիոյն։ Նուաճեցաք զամենայն երկիրն մեզ ի ծառայութիւն։ Դուք պարարէք զմարմինս ձեր նմա ի կերակուր։ Ոչ ինչ կարի յօգուտ էր։

Սույն իմաստով գործ են ածվում և առ, առ ի, առ յ. առ ի յ. օրինակ՝ Պատրաստք եմք առ ամենայն մեքենայս... ոչ միայն ի շարշարել, այլ և ի մեռանել։ Վառեալք և ջեռեալք առ այրել։ Աշակերտք հեզք առ ի յուսումն և փոյթք առ ի վարդապետել։ Առաքեցին դաշաճանս... զի ըմբռնեսցեն զնա բանիւք առ ի մատնել զնա պետութեան և իշխանութեան դատաւորին։ Առ ի հանգիստ ձմերոցի։ Հանդերձ առ ի զարդս մեծարանաց։

3. Երբ բայը ցույց է տալիս մի բանից մի ուրիշ բանի, մի վիճակից մի ուրիշի, մի պաշտոնից մի ուրիշի ևն. փոխվել, դառնալ։ Աշխարհաբար թարգմանվում է ուղղական կամ տրական հոլովներով։ Օրինակ՝ Եղիցին դժուարինքն ի դիւրինս և առապարքն ի հարթ ճանապարհս։ Հող էիր և ի հող դարձցիս։ Զուլեսցեն զսուսերս իւրեանց ի խոփս և զսուինս իւրեանց ի մանգաղս։

4. Գործիական հոլովի իմաստով, որի տեղ և դրվում է հաճախ։ Աշխ. գործիական հոլով։ Օրինակ՝ Ի ճանապարհ հեթանոսաց մի՛ երթայք։ Գոչեաց... ի ձայն մեծ։ Առնել, ասել, առաքել ի ձեռն ուրուք, յանուն իմ։ Նիւթոյ անուն ի նոցա լեզու (=նրանց լեզվով) ի մրո ջ մերձ է։ Աղաղակել ի մի բերան։ Կոտորել ի սուր սուսերի։ Վառել ի զէն և ի զարդ։ Եհար զնոսա ի հարուածս անհնարինս։ Ննջել ի քուն թանձրութեան։ Յայլ և այլ լեզուս խօսել։ Շինել զպարիսպն կանգունս հինգհարիւր յերկայնութիւն։

**206.** Մեր քերականները ի նախդրով հայցական հոլովը դնում են

իբրև առանձին հոլով «նախդրիւ տրական», որովհետև շատ բայեր և ածականներ այդ ձևով են առնում իրենց առարկայական խնդիրը, որ աշխարհաբարում սովորաբար (երբեմն և գրաբարում) տրական հոլովով է դրվում։ Այսպես են բացի վերևում հիշվածներից նաև՝ ածել, հասանել, հասուցանել (ի փառս, ի պատիւ), ձգել, արկանել (զձեռն յինչ= ձեռքը մեկնել մի բանի). մերձենալ յոք, յինչ (=կպչել, դիպչել մեկին. մի բանի). ձայն առնել (=ձայնել մեկին). արկանել (յինքն). գալ (ի միտս=ուշքի գալ). յաւելուլ, փչել, ածել (ապտակ ի ծնօտ ուրուք). դարձուցանել ինչ յոք. սաստել յոք. յարել, հաւատալ, հայել, յեղուլ, յուսալ, ձեռն մխել, խնայել, դիմել. մատնել, տալ. մատուցանել, խոստովանել, պահել (յօրն=...օրվան պահել)։ Նախանձաւոր լինել, պարտաւոր լինել, վնասակար լինել, մէտ և յօժար, պիտանի, պիտանացու, վստահ, ապաստան լինել (յոք, յինչ=մեկին, մի բանի) ևլն։ Մօտ էր ի քաղաք անդր տեղի։

## ՆԵՐԳՈՅԱԿԱՆ ՀՈԼՈՎ

**207.** Ի հայցականի և եզակի տրականի *հետ կազմում է* ներգոյական հոլով:

*ա) Այս իմաստով հոգնակիում* ի *նախդիրը դրվում է միշտ հայցականի վրա. իսկ եզակիում տրականի վրա։ Բայց եթե եզակի տրականն* այ, ոյ *վերջավորությունն ունի, վերցվում են կամ* ում, ոջ *վերջավորությունները, եթե կան (§§ 102. 106). կա՛մ, եթե* ի *հոլովման ձև ունին (§ 132. 2), այս ձևն է վերցվում (օրինակ՝ գիշեր, գիշերոյ,—ի գիշերի. մարմին, մարմնոյ,— ի մարմնի), թէ չէ՝ հայցական հոլովի վրա է դրվում* ի *նախդիրը։*

*բ) Հատուկ, երբեմն և հասարակ անունների ու դերանունների համար, վերցվում է եզակի հայցականը. օրինակ՝ ի Հռոմ, յԱրտաշատ, ի Բաբելոն, յԵգիպտոս, բայց նաև ի Բաբելոնի, յԵգիպտոսի. նույնպես և յաշխարհի յորովայնի բայց երբեմն նաև՝ յաշխարհ յորովայն։ Այսպես և ի մեզ, ի ձեզ, ի քեզ, բայց յիս (=ինձնում)։*

*գ) Եզակի հայցականի և անեզական բառերի հայցականի հետ, երբ եզակի իմաստով են առնված (§ 85), դրվում է ստացական և ցուցական ածականների տրականը. օրինակ՝ ի փառս իւրում, ի կեանս քում, յաթոռ իւրում, ի գնալ իմում։ Որ նստէր ի մեծ գահոյս յայսմ։ Յայնմ գործ։*

**208.** *Ներգոյական դրվում են.*

*1. Այն խնդիրները, որոնք եղելության մի տեղում, մի բանի մեջ լինելն են ցույց տալիս, իբրև պատասխան* ո՞ւր *հարցի (§ 141. 2)։ Աշխարհաբար թարգմանվում է ներգոյական, տրական և հայցական-ուղղական հոլովներով, կամ* մեջ, վրա, ներսին *բառերով։ Օրինակ՝ Քանզի էին իսկ այնպիսիքն բնակեալ ի կեանս իւրեանց իբրև ի թանձրամած*

յխաւարի, և ոգիքն արգելեալք ի մարմնի իբրև զկենդանի ի գերեզմանի, յորս ամենևին չծագէ նշոյլ սուրբ լուսոյն։ Երևեցան նոքա սուր ընդ մէջ և վահան ի ձեռին։ Գրէր մատամբ յերկրի։ Որ կայցէ ի տանիս՝ և կարասին իւր ի տան, մի՛ իջցէ առնուլ։ Ընկալար զբարիս քո ի կենասըն քում։ Եւ ոչ Սողոմոն յամենայն ի փառսն իւրում զգեցաւ իբրև զմի ի նոցանէ։ Օրհնեալ ես դու ի կանայս։ Որ ի փոքուն անիրաւ է և ի բազմին անիրաւ է։— Հեծել ի ձի, յէշ և յաւանակի իշոյ։ Հեծեալ էր ի ջորւոջ իւրում։ Երիվար, յորում արքայ հեծանէր։ Նստել յաթոռ իւրում։ Դնել ի բանտի, ի դիպահոչ, ի գբի ներքնում, ի գերեզմանի։ Սերմանել յագարակի։ Կայր յեզր ծովուն։ Ի ձեր կողմն է։ Բնակէր երկրին, ի կողմն հարաւոյ։ Որ կայր յայն կոյս ծովուն։

2. Ժամանակի պարագայական խնդիրները, իբրև ե՞րբ հարցի պատասխան։ Աշխ. տրական, հայցական-տրղական և ներգոյական հոլովներով, այլ և ժամանակ բառով։ Օրինակ՝ Յամսեանն չորրորդի եկին. հասին յաշխարհն Հայոց։ Հասին ի Դուռն ի մեծի շաբաթու զատկին։ Յեօթներորդում ժամու եթող զնա ջերմն։ Ի հնգետասաներորդի ամի տէրութեանն Տիբերեայ կայսեր։ Ի ծերութեան, ի մանկութեան, ի խաղաղութեան։ Ի ժամու, յամենայն ժամու։ Յամենայն ժամ։ Ի նմին ժամու, ի նմին ժամանակի, յայնմ ժամանակի։ Յաւուրն ութերորդի եկին. յաւուրս Շապհոյ. ի սկզբան. ի միաշաբաթուն, ի միաշաբաթւոջն։ Երկիցս ի շաբաթու։ Ի տարւոջ մի անգամ։ Ի տարւոջ և կիսում՝ (=տարի ու կեսում). յերեսուն ամի, ի վեց աւուրս (=երեսուն տարում, վեց օրում)։ Ի գիշերի և ի տուընջեան. ի տուէ և ի գիշերի (=գիշեր ցերեկ)։ Յայսմ գիշերի (=այս գիշեր)։ Յայն բան եկին աշակերտքն (=այն խոսքի վրա, ժամանակ)։ Ի հնգետասան օր հասանէր ի հրամայեալ տեղին։

3. Անորոշ դերբայը ժամանակի պարագայի իմաստով։ Աշխարհաբար թարգմանվում է իս վերջավորությամբ անկատար դերբայով (գնալիս, խոսելիս). ժամանակ, հետո բառերով (գնալու ժամանակ, գնալուց հետո), կամ թե հաճախ երկրորդական խոսքով (երբ այս ինչ բանը լինում է, լինում էր, եղավ)։ Իմ, քո, մեր, ձեր, իւր ստացականներն անորոշ դերբայի հետ դրվում են ում վերջավորությամբ տրական։ Օրինակ՝ Ի բառնալ ազգին Արշակունեաց տիրեցին աշխարհիս Հայոց ազգն Սասանեայ պարսկի։ Ի ծնանելն ։ Բազումք ի ձէնջ ի խորշակէ յերթալն սատակիցին։ Ահա՛ ել սերմանահան սերմանել, և ի սերմանելն իւրում՝ էր որ անկաւ առ ճանապարհաւ։ Ի ծագել արևու տապացաւ։ Ի գնալ քում:

**Յ**

**209.** Յ նախդիրը, որ միշտ անվան հետ կպած է գրվում, դրվում է հայցականի հետ և գործ է ածվում՝

*1. Մինչև բառի իմաստով, որի հետ երբեմն և բանում է։ Օրինակ՝ Ընդէ՞ր, արքայ, ցայդ վայր (=մինչև այդտեղ) միայն ետուր ընթեռնուլ։ Ցայժմ (=մինչև այժմ)։ Եկայք երթիցուք մինչև ցԲեթղեհէմ։*

*2. Իբրև խնդիր մի քանի բայերի և ածականների՝ փոխանակ տրականի։ Օրինակ՝ Ասէ ցնա, ցիս, ցմեզ, ցոք, ցեղբայր իւր։ Ինքն ցինքն ասել։ Ասել ցմիտս իւր։ Ո՞ իցէ ի ձէնջ մարդ, ցոր խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տայցէ նմա։ Եհարց ցնա, ցնոսա, ցաշակերտսն։ Ետ ղնա ցմշակս իւր, ցաղջիկն։ Ցմեզ ապաստան։ Քոյդ ցքեզ (=քոնդ քեզ)։*

## ԱՌ

**210. Առ հայցականի հետ** *նշանակում է.*

1. Դեպի, մոտ, երբ *խնդիրը ցույց է տալիս այն անձը, կամ իրը, դեպի որը ուղղվում է գործողությունը։ Աշխարհաբար թարգմանվում է նաև տրական, սակավ անգամ և հայցական-ուղղական հոլովով։ Օրինակ՝ Երթ ի տուն առ ընտանիս քո։ Դու առ ի՞ս գաս։ Զդոյն պատուէր առ ամենեսեան արկանէր։ Գրել իբր առ ատելիս և առ անպիտանս։ Ասաց առակ մի առ նոսա։ Անկաւ առ ծունկս նորա։ Զդառնալ անդրէն առ որ։ Ժողովեցան առ նա ժողովուրդք բազումք։*

2. Համեմատությամբ, վերաբերությամբ, նկատմամբ, համար, դեպի: *Օրինակ՝ Եթէ առ մարմնաւորս այսպէս, որչափ ևս առաւել առ հոգևորն։ Որպէս առ մի մարդ, այսպէս և առ բոլոր աշխարհս։ Զամենայն ասացեալս արարից և կատարեցից առ մնացորդս աշխարհին։ Զայդպիսի նախանձ և ոչ մարդ առ մարդ ունի։ Այլ զի՞նչ է այն առ այդչափ մարդիկ։ Փոքր է մարմնոյ մեծութիւն առ հոգևոր փարթամութիւն։ Սէգ, պճնող առ հանդերձս։ Գթած, ողորմած առ աղքատս։*

3. Համար, *որ անորոշ դերբայի հետ կարող է զեղչվել։ Տե՛ս § 205. 2։*

**211. Առ եզակի և հոգնակի հայցականի և եզակի տրականի հետ** *նշանակում է իբրև* **ներգոյական.**

1. Մոտ, մոտին, կշտին (ներգոյականի նշանակությամբ). *Թարգմանվում է երբեմն և տրական հոլովով։ Օրինակ՝ Աւասիկ տապար առ արմին ծառոց դնի։ Քորք սորա առ մեզ են։ Գտին զյաւանակն կապեալ առ դուրս։ Ճարակեսցէ գայլ ընդ գառին և ինձ առ ուլու մակաղեսցի։ Կային առ նմա։ Դուք էիք մեր պարծանք առ թշնամիսն ճշմարտութեան, արդ դուք էք մեր նախատինք առ նոյն թշնամիս։ Զհեռաւորս ևս առ միմեանս համարէին։ Կէսքն առ նմա իսկ էին ի կարաւանին։*

2 Համար, պատճառով, *երբեմն* նպատակով: *Աշխարհաբար ասվում է նաև բացառական հոլովով։ Անորոշ դերբայը հայցական է դրվում, բայց հետո ստացական* իմ, քո, մեր, ձեր, իւր *ածականները՝ տրական։ Օրինակ՝ Ո՞ ի ձէնջ* առ հոգալ իւրում *յաւելուլ կարիցէ ի հասակ*

ի·ր կանգուն մի։ Առ ահին (=ահից, ահու) աղաղակեցին։ Առ նախան-ձու մատնեցին զնա։ Այր, ասէ, առ քաղցի իւրում շրջեսցի և կերիցէ զկէս անձին իւրոյ։ Եւ առ յոյժ խնդութեան ոչ երբեք յագէին երկայնու-թեամբ ճանապարհին։ Առ յոյժ աղքատութեանն ակամայ դիմեսցեն յօ-րէնս մոգաց։ Առ սէրն։ Առ հեռ և առ նախանձ ծնկեալ՝ նենգաւ գնայր ընդ Դաւիթ։ Առ հօգս, առ ցաւս իւր ճչայ։ Առ ամօթոյ ձերոյ ասեմ։

3. *Դարձվածներ՝* Ունել, դնել, համարել, գրել զումն առ իմաս-տունս, առ յիմարս, առ մարդիկ (այլ և համարել ի մարդիկ), առ ոտ.յոս, առ լաւս ելն=մեկին իմաստունի, հիմարի, մարդու տեղ դնել, մեկին մի բան համարել։ Տալ երկուս գառինս առ օր (=օրենը, օրը, օրական)։ Առ այր (=մարդը, յուրաքանչյուր մարդ, մարդագլուխ) հարիւր դը-րամ տուգանեսցին։ Եւ ոչ առ սակաւ մի համբէր։ Առ անգամ մի ի նե-ղութենէ անտի զանձինս ապրեցուսցեն։ Ոչ սակաւ զանձս առ ժամայն ծախէին։ Առ այն օր պահել հրամայեաց։ Առ աչս, առ երևոյթս, առ երեսս (=երեսանց, դրսից)։ Առ այս ետ պատասխանի (=սրան, այս բանին պատասխանեց)։

**212. Առ բացառականի հետ՝ առ ի** *ձևով կամ միայն* **առ՝** *նշանա-կում է*

1. *Մեկի* **մոտից, կողմից, բերանից,** *այլև* **պատճառով, համար,** *կամ լոկ բացառականի իմաստ ունի։ Օրինակ՝ Առ ի մարդկանէ այդ անկար է։ Առ ի ծնողաց ինձ Խորէն անուն։ Քոյր քո առ ի հօրէ", եթէ առ ի մօրէ։ Խօսեսցի առ ի քէն ընդ ժողովրդեանդ։ Առ յինքենէ խօսել։ Ձի մի՛ մերժեալ ընկեսցի առ ի նոցանէ։ Ոչինչ զանգիտէին առ ի յոյժ բազմութենէն։ Առ ի մեղաց (=մեղքից), առ ի չգոյէ։ Առ երկիւղէ, առ հարկէ, առ պատճառէ, առ իւրեանց բնութենէ (=յերկիւղէ, ի հարկէ ելն)։*

2. **Նպատակով, համար:** *Անորոշ դերբայն աշխարհաբար թարգ-մանվում է նաև երկրորդական խոսքով* **որպես զի** *շաղկապով սկսված։ Օրինակ՝ Տացեն նշանս առ ի մոլորեցուցանելոյ։ Նոցա աչք կալեալ էին առ ի չճանաչելոյ զնա։ Եթէ յիրաւանց իմոց տաղտկանայցեն ան-ձինք ձեր առ ի չառնելոյ ձեզ (§ 176. 1) զամենայն պատուիրանս իմ, և ցրելոյ զուխտն իմ, արարից նոյնպէս և ես ձեզ։ Ծանրացուցանէ զա-կանջս առ ի չլսելոյ զդատաստան արեան. խնու զականջս, զի մի՛ տես-ցէ զանիրաւութիւն։—Հանցէ ի զոհէն զառ ի յիշատակէն նորա։ Անդ ե-դին առ ի յիշատակէ զտուրսն քարեղէնս։ Առ առակէ շրջեցուցանէին։*

**Առ ի, առ յ,** *տե՛ս և § 205. 2։*

**212 Առ գործիականի հետ** *նշանակում է՝*

1. *Տեղի իմաստով՝ մի բանի* **մոտը, մոտերը, մոտովը.—կշտին, մոտին** *(համեմատությամբ)։ Օրինակ՝ Ժողովուրդն կայր առ ծովեզերբն։ Էր որ անկաւ առ ճանապարհաւ։ Սամարացի ոմն ճանապարհորդեալ*

ընդ նոյն առ նովաւ։ Անդ էր առ լերամբ երամակ մի խոզոց։ Անցանէին առ Գալիլիացւովք։ Ոչ առ այլովք վատթարովքն վեհ երևի։ Զի՞նչ է յարդ առ ցորենաւ։ Փոքր է այս առ այնու։

2. Ժամանակի իմաստով՝ օրերը, ժամանակները, օրով։ Օրինակ՝ Եւ որ այլ ևս հարկ աշխարհին՝ բազմագոյն քան առ հարբն նորա երթայր յարքունիս։ Կարգեալ իսկ էին նոքա առ նախնեօքն մերովք։ Առ այնու ժամանակաւ։ Առ կենդանութեամբ առն իւրոյ։ Առ մեօք (=մեր օրով)։

## ԸՆԴ

**213. Ընդ հայցականի հետ** գործ է ածվում՝

1. Ի նախդրի փոխանակ, հաճախ երբ խնդիրն ընդարձակ տարածություն է ցույց տալիս։ Աշխարհաբար վրա, երեսին,—մեջ,—դեպի բառերով, երբեմն և հայցական-ուղղական, տրական ու ներգոյական հոլովներով է ասվում։ Օրինակ՝ Եղ համբաւ նորա ընդ ամենայն երկիրն ընդ այն։ Բժշկէին ընդ ամենայն տեղիս։ Ընդ ամենայն տեղիս է տէրութիւն նորա։ Աշխարհագիր առնել ընդ ամենայն տիեզերս։ Աւետարանս առաքեաց ընդ ամենայն ատրուշանս աշխարհին իւրոյ (բայց ոչ բոլոր իմաստով՝ Աւետիս խնդալիս առաքէր յատրուշանս բազումս)։ Ցորդեալ տարածանէր ընդ ամենայն կողմանս հեռաւոր ճանապարհին։ Ոչ յանկեան ուրեք աշխարհի քարոզի (օրէնքն մեր), այլ համատարած ընդ ամենայն երկիր, ընդ ծով և ընդ ցամաք, և ընդ կղզիս. ոչ միայն ընդ արևմուտս, այլ և ընդ արևելս, այլ և ընդ հիւսիս և ընդ հարաւ։ Հող հանէր ընդ չորս կողմանս երկրի։ Ցածիք ընդ ծով և ընդ ցամաք։ Մտեալ շրջէր ընդ Երիքով։ Շրջէր ընդ ամենայն քաղաքս և ընդ գեօղս։ —Հայել ընդ երկինս, ընդ ագռաւս, ընդ շուշանն վայրի, ընդ նոսա, ընդ նա։ Գնաց ընդ արևմուտս Դնել ընդ սնարս իւր։ Թքին ընդ երեսս նորա։ Ասել ընդ միտս. զարմանալ ընդ միտս (=մտքում)։ Արկ զմատունս իւր ընդ ականջս նորա։ Մտանել ընդ գետինն։

2. Երբ գործողությունը մի բանի միջից, միջով, վրայից, վրայով կամ ուղղությամբ անցնել է ցույց տալիս։ Աշխարհաբար նաև գործիական կամ բացառական հոլովներով։ Օրինակ՝ Ընդ այլ ճանապարհ գնացին յաշխարհն իւրեանց։ Մտէք ընդ նեղ դուռն։ Բազումք են, որ մտանեն ընդ նա։ Անցեալ ընդ այն։ Գնաց ընդ արտորայս նոցա։ Որ ինչ մտանէ ընդ բերան՝ ոչ պղծէ զմարդ։ Եւ ընդ քո անձն իսկ անցցէ սուր։ Զգնայր ընդ եզր ծովուն։ Հերձաւ վարագոյրն ընդ մէջ։ Եւ ընդ քիթսն և ընդ բերանն առ հասարակ գոլորշի ջերմախառն ելանէր։ Անցանել ընդ գետն։

3. Երբ խնդիրը ցույց է տալիս մերձավոր ժամանակները։ Աշխարհաբար ժամանակները, դեպի, դեմ, վրա, մեջ, հետո, բառերով, կամ հայցական-ուղղական, բացառական, ներգոյական հոլովներով։ Օրինակ՝ Թերևս գիտիցես և ընդ այն ժամանակս ծնեալ իցես։ Ընդ այգն,

ընդ առաւօտն (=առավոտյան դեմ)։ Ընդ երեկս։ Ընդ աւուրսն ընդ այնոսիկ (=այն օրերում, այն օրերը)։ Ընդ սակաւ աւուրս եկին բերին։ Ընդ աւուրս տասն եկեսցէ (=տասն օրից, տասն օրում, վրա տասն օրը կը գա)։

4. Երբ խնդիրն անորոշ դերբայ, երբեմն և բայական անուն է և նշանակում է մի բան լինելուն պես, լինելուց հետո, երբեմն և ի նախդրի իմաստով (§ 207. 3) լինելիս, լինելու ժամանակ: Օրինակ՝ Ընդ բուսանելն չորացաւ։ Ընդ ելանելն նորա ի նաւէ անտի...։ Արջք օրհասականք ընդ վախճանել շնչոյն հզօրագոյնս կռուին։ Եթէ ոչ վաղիւ ընդ առաւօտն, ընդ երևումն սքանչելւոյն (արեգական) ընդ իս զիւրաքանչիւր ծունր նմա ոչ կրկնեսջիք...։

5. Իբրև խնդիր զգացմունք ցույց տվող և մի քանի ուրիշ բայերի, վրա, գլխին բառերի իմաստով։ Երբեմն հայցականի հետ և տրական հոլովով է դրվում այս խնդիրը։ Օրինակ՝ Զարմանային... ընդ վարդապետութիւն նորա։ Խոժոռել, խռովել ընդ բանն (այլև՝ խռովել ընդ բանին)։ Խնդալ ընդ բարիս։ Հաճել, նախանձել ընդ ոք, ընդ ինչ (այլև՝ նախանձել, զարմանալ, գութ ունել, ուրախանալ ընդ ումեք, ընդ իմիք)։ Էր ցասմամբ մեծաւ ընդ Տիւրացիս։ Անցք անցին ընդ նա։ Արարին ընդ նա զոր կամեցան։ Որ ինչ արարին ընդ նմա։ Զասեն ինչ ընդ դմա։ Առնել ողորմութիւն ընդ տանն նորա։ Հայեցեալ ընդ նա։ Եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի։

6. Ընդ... ընդ կրկնված ձևով նշանակում է երկու բանի մեջ, միջև, մեջտեղում, արանքում: Օրինակ՝ Վիհ մեծ է ընդ մեզ և ընդ ձեզ։ Մի՛ լիցի կռիւ ընդ իս և ընդ քեզ, և ընդ հովիւս իմ և ընդ հովիւս քո։ Կախեցաւ ընդ երկինս և ընդ երկիր։

Այս գործածությունը նշանակում է և ընդ ամենայն, ընդ բնաւ=միանգամայն, բոլորը միասին։ Օրինակ՝ Եւ լինէր հանդէս համարուն վաթսուն և վեց հազար այր ընդ հեծեալ և ընդ հետևակ։ Ընդ այր և ընդ կին և ընդ մանուկ աւելի քան չորեք հարիւր բիւր։

**214. Ընդ հայցականի և եզակի,** երբեմն և **հոգնակի տրականի** հետ նշանակում է հետ, հետը միասին: Օրինակ՝ Հաշտեա՛ց ընդ եղբօր քում։ Եղև խնդիր ընդ հրէից վասն սրբութեան։ Զայս խօսէր ընդ նոսա։ Զէթ ընդ իւրեանս ոչ բարձին։ Ուտել և ըմպել ընդ արբեցողս։ Ոչ խառնեալ վատութիւն ընդ արութիւն քաջութեան։ Կարել ընդ մորթ։ Տուն ընդ տուն կցել։ Ընդ իս, ընդ նմա։

**215. Ընդ սեռականի հետ** նշանակում է՝ փոխանակ, փոխանակ ընդ=տեղը, փոխանակ. երբեմն և համար: Օրինակ՝ Զայն առեալ տացես ընդ իմ և ընդ քո։ Ակն ընդ ական և ատամն ընդ ատաման։ Զի՞նչ տացէ մարդ փրկանս ընդ անձին իւրոյ։ Առ զմի ի կողից նորա և ելից ընդ այնր մարմին։ Թագաւորեաց եղբայր նորա ընդ նորա։ Ընդ ամե-

*նայն դատարկ բանի, զոր խօսիցին մարդիկ, տացեն համարս։ Բերէտ ընդ միոյ երեսուն, ընդ միոյ վաթսուն և ընդ միոյ հարիւր։ Տալ ինչ ընդ իրիք։*

**216. Ընդ բացառականի հետ,** *առանց ի նախդրի, նշանակում է՝* **կողմից, կողմը,** *կամ լոկ բացառականի իմաստ ունի։ Օրինակ՝ Ասա՛, զի նստցին սոքա մի ընդ աջմէ քումմէ և մի յահեկէ։ Ելին ընդ կողմանէ դրանցն։ Բանակն էր նոցա ընդ հիւսիսոյ. ընդ հարաւոյ. ընդ արևելից կողմանէ։ Անկցին ընդ կողմանէ քումմէ հազարք։ Ընդ ցուցն կախեալ իջուցին։ Որ ինչ կայ ընդ երեսաց լուսոյն, նա է պատճառ խաւարին։*

**217. Ընդ գործիականի հետ,** *նշանակում է* **տակը, տակին, ներքո:** *Օրինակ՝ Ոչ լուցանեն ճրագ և դնեն ընդ գրուանաւ։ Եթէ ընդ յարկաւ իմով մտցես։ Քանզի և ես այր մի եմ ընդ իշխանութեամբ։ Մտէ՛ք ընդ վիմօք և թագերուք։ Ընդ գլով, ընդ ծառայութեամբ, ընդ աշխարհագրով արկանել։ Ընդ հարկաւ դնել։ Ոչ ընդ նովին օրինօք մտանէին։*

## ԸՍՏ

**218. Ըստ հայցականի և տրականի հետ,** *նշանակում է՝*

**1. Համեմատ, պես, համաձայն, նայելով, թվով, չափով:** *Օրինակ՝ Մի՛ ըստ աչս դատիք։ Ըստ նոցա կարծիս (կարծեաց)։ Ըստ կամս, ըստ միտս, ըստ օրէնս=ըստ կամաց ևլն։ Կատարել դատաստան ըստ գրելոյն։ Հատուցանել իւրաքանչիւր ըստ գործս։ Ըստ առաջին կարգի օրինացն արքունի (=պալատի առաջվա կարգով, սովորությամբ)։ Ըստ ամենայնի (=ամեն բանով, բոլորովին)։ Ըստ նմին և (=նմանապես և)։ Ըստ իս (=իմ կարծիքով)։ Ըստ արժանւոյն։ Ըստ տունս, ըստ վրանս, ըստ երդ, ըստ գլուխ (=տների ևլն. թվով)։ Ըստ աճել մանկանն։ Իւրաքանչիւր ըստ կարի իւրում։ Մի՛ ըստ գործոց նոցա առնէք։*

**2. Ըստ միայն հայցականի հետ** *գործածվում է* **դուրս, դենը** *բառերի իմաստով իբրև խնդիր անցանել, ելանել, անկանել, լինել ևլն բայերի։ Աշխ. նաև բացառական և հայցական-ուղղական հոլովներով։ Օրինակ՝ Անցանել ըստ չափ, ըստ սահման, ըստ օրէնս, ըստ երդումն, ըստ բանս, ըստ ջուր։ Ելանել ըստ հրաման, ըստ չափ, ըստ ձեռն (ուրուք). անկանել ըստ կողմն, ըստ ակն։ Ըստ ակն էաք ի տեառնէ։ Ըստ այն մի գիշերն (=այն մի գիշերից դատ)։ Ի ձէնջ ըստ կողմն ելեալ։ Զամենայն ազգս ժողովեա՛ և անցո՛ ըստ Պահ դուռն ի ներքս։ Որ և ըստ հեթանոսական օրէնս անցանէր արիմհեղութեամբ։ Կայսր չելանէ ըստ քո հրաման։ Որ անցեալ իցէ ըստ ուխտ պատուիրանին։ Ամենայն արարածք ոչ երբեք անցանեն ըստ եդեալ սահմանն իւրեանց։ Ըստ երկիր անդր ոչինչ է (=Երկրից դենը ոչինչ չկա)։*

**219. Ըստ բացառականի հետ,** *առանց ի նախդրի, ցույց է տալիս հաջորդություն,* **ետևից.** *կամ լոկ բացառականի իմաստ ունի։ Օրինակ՝ Օր ըստ օրէ։ Ասել, ելանել մի ըստ միոջէ։ Ամ ըստ ամէ (=օրեցօր, տարեցտարի)։ Այր ըստ առնէ (=իրար ետևից)։ Եւ որ ըստ այսմանէ։ Ըստ հիւսիսոյ կուսէ։*

**220. Իբրև զ, որպես զ** *հայցականի հետ, նշանակում են՝* **պես, նըման, ինչպես:** *Գործ են ածվում հավասարության կամ նմանության բաղդատություն ցույց տալու համար։ Օրինակ՝ Իբրև զհողմ սաստիկ զի բախիցէ զծով մեծ, այնպէս...(=ինչպես սաստիկ քամին, որ...)։ Մի՛ շատախօս լինիք իբրև զհեթանոսս։ Եղերուք խորագէտք իբրև զօձս և միամիտք իբրև զաղաւնիս։ Լերինք ցնծացեն որպէս զխոյս և բլուրք՝ որպէս զգառինս մաքեաց։ Մի՛ լինիք իբրև զկեղծաւորսն տրտմեալք։*

*Իբրև թվականի հետ նշանակում է* **մոտ, մոտավորապես,** *օրինակ՝ էին արք իբրև հինգ հազարք։ Մեկնեցաւ ի նոցանէ իբրև քարընկէց մի։ Իբրև բեռինս երկուս։*

**221. Քան զ, առավել քան զ,** *հայցականի հետ, նշանակում է.*

1. **Քան, քան թե:** *Գործ է ածվում առավելության կամ նվազության բաղդատական աստիճան ցույց տալու համար։ Ածականը հաճախ դըրվում է* **եւս** *(=է՛լ, է՛լ ավելի),* **առաւել, ավելի, եւս առաւել, առաւել եւս** *բառերով, կամ* **—գոյն** *ածանցով բաղադրված ձևով։ Օրինակ՝ Ոգի առաւել է քան զկերակուր և մարմին քան զհանդերձ։ Լաւ էք քան զբազում ճնճղուկս։ Էջ սա արդարացեալ քան զնա։ Մեծ ևս քան զայս սէր ոչ ոք ունի։ Ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր։ Լաւագոյն զշինուածս մարդկեղէնս քան զհողեղէնսն հաշուէին։ Զմահ քան զկեանս ընտրէին։ Քան զսուտն ստագո՞յնք լինիցիք։ Եւս քան զեւս (=ավելի ու ավելի) աճեցին։ Աւարն օր քան զօր (=օր օրի վրա) աճեցեալ բազմացաւ։ Սիրեցին մարդիկ զխաւար առաւել քան զլոյս։ Այլ մեզ քան զայդ ոչ իմանալ ինչ է, ոչ առնել (=բայց մենք դրանից ավելի բան ոչ պիտի իմանանք, ոչ անենք)։*

2. *Մի բանի* **չափ, պես:** *ժողովրդական ձևով՝* **քանց:** *Օրինակ՝ Եթէ ունիցիք հաւատս քան զհատն մանանխոյ (=... հատի չափ)։ Խոստանայ ի վեր քան զմարդ և քան զմժիղ (=մժեղի չափ, քանց մժեղ) աղդել ոչ կարէ։*

**Ծան.** *1. Գերադրական աստիճանի իմաստն ստացվում է, ինչպես աշխարհաբարում, նույն բաղդատական ձևով, միայն* **քան զ** *նախդրի խնդիրը դրվում է* **ամենայն. ամենեքեան** *բառերով. օրինակ՝ Որ մեծն է քան զամենայն։ Առաւել քան զամենեսեան զնոսա գատէր։ Որ յետին չար է քան զամենայն չարիս։*

*Նույն իմաստն ստացվում է, երբ բաղդատության խնդիրը դրվում է, ինչպես աշխարհաբարում, սեռական, բացառական և* **ի** *նախդրով հայցական (ներգոյական)։ Օրինակ՝ Սա ամենեցունց թագաւորացն մերոց հարստագոյն և խոհեմագոյն, և արանցն այ-*

*Նոցին և ամենեցուն քաջ։ Ողբամ զքեզ, Հայոց աշխարհ, ողբամ զքեզ, հանուրց հիւսիսականաց վեհագոյն։* **Ամենեցուն** *քան զքեզ նախագունիցն ճանաչիս* **վեճագոյն:** *Ծնաւ կինն հանկարծ երիս կատարեալս ի դիւցազանց։*

**Ծան. 2.** *Քան զ նախդրով գործ են ածվում և՝* **արտաքոյ բան զ, արտաքս բան զ**=*մի բանից դուրս։* **Յառաջ բան զ, Նախ բան զ**=*մի բանից առաջ։ Վեց աւուրբ յառաջ քան զզատիկն (=զատկից վեց օր առաջ)։* **Ի ներքս բան զ**=*մի բանից ներս։* **Ի վեր բան զ, ի վերոյ բան զ, զեր բան զ**=*մի բանից վեր, օրինակ՝ Ի վեր քան զմարդկային բնութիւն =մարդկային բնությունից վեր։ Նույն իմաստն արտահայտվում է և* **զեր զ** *ձևով՝ Գեր զմարդիկ, գեր զբնաւն։ Ցեսու երթայր* **առաջի բան զնոսա**=*...նրանցից առաջ։ Չիշխեն* **այլ** *ինչ* **բան զայն** *գործել=...նրանից զատ ուրիշ բան։ Այլազգ քան զայս։* **Անդր բան զ**=*մի բանից գենը։*

**222. Մինչեւ ի (յ), մինչեւ ց** *հայցական հոլովի հետ*=**մինչև:** *Օրինակ՝ Ուտէին և ըմպէին... մինչև յօրն, յորում եմուտ Նոյ ի տապան Տրտում է ոգի իմ մինչև ի մահ (=մահու չափ)։ Մինչև ի կատարած աշխարհի (=մինչև աշխարհի վերջը)։ Մինչև ի քաղաքն։ Մինչև ցե՞րբ եցեմ ընդ ձեզ, մինչև յե՞րբ անսայցեմ ձեզ։ Տաց քեզ մինչև ցկէս թագաւորութեան իմոյ։ Քանի՞ցս անգամ եթէ մեղիցէ ինձ եղբայր իմ, և թողից նմա. մինչև ցեօ՞թն անգամ։ Մինչև ցեօթանասնեկին եօթն անգամ (=յոթանասուն անգամ յոթն անգամ)։ Ի վեց ժամէ աւուրն մինչև ցինն ժամ։ Մինչև ցայժմ, մինչև ցայսօր։*

**223. Բաց** *կամ* **բայց** *բացառականի հետ*=**բացի, զատ:** *Օրինակ՝ Բայց յինէն (=բացի ինձնից)։*

**224. Հանդերձ** *(նախադաս և ետադաս) գործիականի հետ*=**նետը միասին** *(հանդերձ)։ Ինքն (Սմբատ) հանդերձ միով կնաւ իւրով և սակաւ արամբք գայ։ Անդ նստէր աշակերտօքն հանդերձ։*

**225. Առանց** *սեռականի հետ*=**առանց**: *Օրինակ՝ Առանց զձեզ ինչ աշխատ առնելով խաղացաք գնացաք յերկիրն Յունաց և առանց գործոյ պատերազմի սիրով մարդասիրութեամբ նուաճեցաք զամենայն երկիրն մեզ ի ծառայութիւն։*

**226. Վասն** *(նախադաս, երբեմն և ետադաս) սեռականի հետ*=**համար**: *Օրինակ՝ Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի։*

### ՆԱԽԱԴՐԱԿԱՆ ԵՎ ՄԱՆԿԱՑԱԿԱՆ ԲԱՌԵՐ

**227.** *Կան բազմաթիվ ածականներ, որոնք քերականությունների մեջ սովորաբար դրվում են իբրև նախադրություն։ Այսպես են՝* **տրական** **խնդրով՝** *նման, հանգոյն, հանգէտ (=նման, պես), համեմատ, հաւասար, զոյգ կամ զոյգ ընդ (=հետ մի տեղ, միասին), հակառակ, հակառակ ընդ.* **հայցական խնդրով՝** *կից ի, մերձ ի, մօտ ի.* **հայցական և**

գործիական խնդրով՝ մերձ առ, մօտ առ. բացառական խնդրով՝ ուրույն (=ջոկ, հեռու, զատ, բացի), մեկուսի, հեռի։

**228.** Ավելի կարևոր են այն անունները, որոնց հոլովական ձևերից մի քանիսը, հաճախ նախդիրներով, գործ են ածվում նախադրության իմաստով, կամ մենակ գործածվում են իբրև մակբայ։ Ստացական ածականները իմ, քո, մեր, ձեր, իւր հոլովով համաձայնում են այդ անուններին. նախդիրները՝ զ, ընդ, առ դրվում են նախադաս սեռականի վրա։

1. Ետ (=ետ, ետք, ետև) բառից՝

Ստ ընդ ետ=նույն հետայն=իսկույն, ետևից։ Թող անդէն ետ ընդ ետ լինէր նմա որդի։ Ետ ընդ ետ իսկ ընդէ՞ր ոչ յղեաց։

Յետ=ետ, դեպի ետ։ Զամօթն ի յետ ընկեցեալ։

Յետ=հետո։ Յետ այսր ամենայնի այլ բանիւք զմեզ մի՛ հարցանեք։ Յետ վեց աւուր։

Յետս=ետ, դեպի ետ։ Ի հայրենի օրինացն յետս կալ։ Գնացին յետս յետս (=ետ ետ)։

Յետոյ, յետուստ=ետևից, ետևով, ետևում, ետևի. հետո, ապա։ Յետոյ ձերմէ (=ձեր ետևից)։ Ունկն դնէր առ դրան խորանին, քանզի յետոյ նորա կայր։ Թաղեաւ յետոյ դրանն։ Յետոյ կողմն (=ետևի կողմըն)։ Յետուստ խորանի կամ որմոյն մերոյ։ Յետուստ կողմանէ։ Ծակել զորմն յետուստ։ Լի էին աչօք առաջոյ և յետոյ (=առջևից և ետևվից)։ Յետոյ (=հետո) զղջացաւ։

Ետ զետէ=ետևե ետև, հետզհետե։

2 Հետ=հետ, հետք բառից՝

Զհետ=ետևից։ Երթային զհետ նորա։ Աղաղակէ զհետ մեր։ Այր զեղբօր զհետ երթիցէ։ Մի զմիոյ հետ=հետզհետե, միմյանց ետևից։

Ի... հետէ=ի վեր, սկսած։ Յայնմ հետէ, յայսմ հետէ, յորմէ հետէ։ Ի սկզբանէ հետէ, ի հնոց ժամանակաց հետէ, յայգուէ իսկ հետէ, յայնմ ժամանակէ հետէ, ի վաղուց հետէ։

Երբեմն գործ է ածվում և հետ, ի հետ=հետը, ետևը, ետևից։

3. Զկնի, զ... կնի=զհետ=ետևից. հետո։ Եկայք զկնի իմ։ Գնացին զկնի նորա։ Զմեր կնի ոչ շրջէր։ Զերիս ամս՝ ամ զամի զկնի։ Մի զմիոյ կնի կցեաց։ Զմիմեանց կնի կարգեալ տողեսցին։ Զկնի Աբգարու մինչև ցՆրուանդ։ Զկնի ոչ բազում աւուրց։ Որ առաջի և զկնի (= առաջից և ետևից) երթային։

Ծան. Կինճ նշանակում է՝ ոտքի տակը, հետք։ Այս բառով բարդված են՝ կրկին=երկկին (որից երկկնակի), երեքկին, չորեքկին ևն.=բառացի երկու հետ (անգամ), երեք հետ, չորս հետ, կամ երկու ոտք, երեք ոտք, չորս ոտք։ Եօթանասնեկին=յոթանասուն անգամ։

4. Առաջ բառից՝

Յառաջ=դեպի առաջ, առա՛ջ։

Ընդ առաջ=առաջը։ Ելին ընդ առաջ նորա։

Առաջի *կամ* առաջոյ=*առաջի, առջևի. առաջից, առջևից, առաջ(ը), առաջին*։ *Առաջի նորա=նրա առաջ(ին)*։ Առաջի ձևից՝ զառաջեաւ, զառաջեօք=*առջևը*։ *Զառաջեաւ իմով*։ *Առաջք, զառաջս ունել=առաջն առնել, առաջը բռնել*։

5. Մէջ *բառից՝*

Ի մէջ, ընդ մէջ=*մեջ, միջով, միջից*։ Ի միջի=*մեջը, միջին*։ *Ի միջի ձերում*։ Ի միջոյ=*միջից*։ *Ի միջոյ ձերմէ*։

6. Վեր *բառից՝*

Ի վեր=*վեր, դեպի վեր*. վերոյ=*վերի, վերևի, վերևը*. ի վերոյ=*վերը, վերևը, վերևում. վերից*։ *Ի վերոյ նորա*։ Ի վերուստ=*վերից, վերևից*։

7. Ներս, ներքս *բառից՝*

Ի ներքս=*ներս, ներսը*. ներքոյ=*ներքևի, տակի*. ի ներքոյ, ներքոյ=*ներքևից, տակից. ներքևը, տակը*. ի ներքուստ=*ներսից, ներսեվից. տակից, ներքևից*։

8. Ստոր=*ցած բառից՝ ի ստոր, ի ստորև, զստորև, ի ստորէ, ի ստորից, ի ստորուստ=ստորև, ցածում, ցածից*։

9. Հանդէպ *բառից՝ ի հանդէպ, հանդիպի կամ հանդիպոյ, ի հանդիպէ կամ ի հանդիպոյ, ի հանդիպոջ=հանդեպ, հանդեպի, հանդեպից, հանդեպը*։

10. Աղագ=*միջոց, եղանակ, պատճառ բառից՝* յաղագս, աղագաւ=*համար, պատճառով*։

11. Սակ=*թիվ, համար, չափ, բառից՝* սակս, ի սակս=*վասն, համար*։ *Սակս է՞ր, յո՞ր սակս=ինչո՞ւ համար*։ *Յայս սակս, յայն սակս*։

12. Համար *բառից՝* ի համար=*համար*։ *Շինեալ և տուն հովանոց, մահարձանօք, սքանչելի դրօշուածովք, բարձր քանդակաւ, ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ*։

13. Վերայ *բառից՝* ի վերայ=*վրա*։ *Ի վերայ նորա*։ *Քար ի քարի վերայ*։

14. Դէմ *բառից՝* ընդ դէմ=*դեմը, ընդդեմ, հակառակ*, ի դէմս, ի դիմաց=*դիմացը, կողմից*։

15. Արտաքս=*դուրս, դեպի դուրս*. արտաքոյ=*դուրսը, դրսում, դրսից*. արտաքուստ=*դրսից*։

16. Ի ձեռն, ընդ ձեռն=*ձեռամբ=ձեռքով*։

17. Ի պատճառս=*պատճառով*։

18. Ի...կողմն, ի...կոյս=*դեպի...կողմը*։ Ի...կողմանէ, ի...կուսէ=*կողմից*։ *Դարձաւ ի կինն կողմն, ի թիկունս կոյս, յարևելս կոյս*։ *Ի տանէ կողմանէ, յինէն կողմանէ, ի քէն կուսէ (տե՛ս § 176. 5)*։

19. Ընթեր, առընթեր, առ... ընթեր=*մոտին, կշտին*։

20. Պէս, գունակ, օրինակ, զօրէն=*պես, տեսակ, նման*։

21. Փոխանակ, փոխարէն, փոխան=*փոխանակ*։

22. Յանդիման=դիմաց։
23. Չափ.—մա՛ու չափ, կիսով չափ։
24. Շուրջ զ..., Շուրջ զնովաւ=նրա շուրջ։

## ՇԱՂԿԱՊ

**229. Համադասական շաղկապներ.**

**Եւ**=*և, ու*։

**Եւ, նաեւ**=*և, նաև, էլ, նույնպես. օրինակ՝ Եկից և ես (=ես էլ) զկնի քո։ Եւ դու ի նոցանէ ես։*

**Եւ եւս... եւս**=*ևս, էլ։ Զոր ունէին և զայն ևս (=այն էլ) կորոյս։*

**Արդ եւս**=*դեռ նո՛ր, նո՛ր, հենց նո՛ր, հենց այժմ։*

**Արդ**=*արդ, հի՛մա։*

**Եւ...եւ, եթէ... եթէ..., թէ...թէ**=*և՛... և՛... թե...թե։ Համարս պահանջէ ի մէնջ և վասն արտաքնոց, և վասն ներքնոց։ Եթէ մեք, և եթէ նոքա այսպես քարոզեցաք։*

**Եթէ, թէ**=*թե (հարցական խոսքերի մեջ, որոնք իմաստով ժխտում են իրար). օրինակ՝ Տացո՞ւք, եթէ ոչ տացուք։*

*Հարցական խոսքերի սկզբում* **եթէ**=*արդյոք, թերևս, գուցե. իսկ* **մի՛ եթէ** *կամ լոկ* **մի՛**=*մի՛թե, մի՛ գուցե, չլինի՛ թե. օրինակ՝ եթէ գիտիցե՞ս (=գիտե՞ս արդյոք), զի այսօր առնու տէր զտէրդ։*

**Եթէ...եւ եթէ. թէ...թէ, եւ թէպէտ, թէպէտ**=*թեկուզ...թեկուզ. կամ լոկ՝ թե (միայն երկրորդ խոսքի սկզբում.* այսպես լինի թէ այնպես *իմաստով). օրինակ՝ Թէպէտ ի չար վարէր, և թէպէտ ի բարի, ոչ պարսաւանք ինչ էին նմա և ոչ գովութիւնք (=թեկուզ ի չարը վարեր, թեկուզ ի բարին, կամ՝ ի չարը վարեր, թե ի բարին)։ Թափեմք զձեզ ի գործակալացն յունաց, թէպէտ պատերազմաւ ընդ կայսեր, թէպէտ խաղաղութեամբ (=պատերազմով լինի թե խաղաղությամբ)։*

**Թէեւ, թէպէտ, թէպէտ եւ**=*թեև, թեպետ, թեպետ և, թեկուզ։*

**Թէ բիւր**=*թեպետ և շատ, շատ էլ, ինչքան էլ. օրինակ՝ Զի թէ բիւր չար իցէ (=շատ էլ չար է), սակայն...*

**Կամ, եւ կամ**=*կամ, և կամ, կամ թե։*

**Կամ...կամ, կամ թէ...կամ թէ**=*կամ...կամ։*

**Այլ, այլ եւ, այլ եւս**=*այլ, այլ և, -էլ, այլևս։*

**Ոչ եթէ, ոչ թէ...այլ**=*ոչ թե...այլ։*

**Այլ**=*բայց, իսկ. օրինակ՝ Լուարուք, զի ասացաւ՝ ակն ընդական և ատամն ընդ ատաման։ Այլ ասեմ ձեզ՝ մի՛ կալ հակառակ չարին. այլ եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո, դարձո՛ նմա և զմիւսն։ Թէպէտ և արտաքին մարդս մեր ապականի, այլ ներքին մարդս մեր նորոգի օր ըստ օրէ։*

**Այլ եթէ**=*բայց եթե։*

Բայց=*բացի, բայց եթե, օրինակ՝ Ոչ ոք ի նոցանէ կորեաւ, բայց որդին կորստեան (=բայց եթե, կամ բացի կորստեան որդին)։*

Բայց, սակայն,—բայց սակայն, այլ սակայն=*բայց, սակայն։*

Համայն, եւ համայն, համայն եւ այնպէս=*դարձյալ, բայց և այնպես, այնուամենայնիվ։*

Իսկ=*իսկ։*

Իսկ=*իսկ, հապա, բա՛ (հարցական խոսքերի սկզբում). օրինակ՝ Հարցանէին զնա ժողովուրդքն և ասէին. իսկ արդ (=հապա՛ այժմ) ղի՞նչ գործեսցուք։*

Այլ արդ=*բայց արդ։*

Ապա եթէ, ապա թէ=*իսկ եթե, իսկ թե։*

Նա՛, նա՛մանաւանդ, նա՛ թէ=*մա՛նավանդ թե։*

**230. Ստորադասական շաղկապներ.**

Զի=*որ (ամեն տեսակ երկրորդական խոսքերի սկզբում)։*

Զի=որ, *հարաբերական դերանունը, տե՛ս § 232. 1։*

Զի, որպէս, որպէս զի=*որ, որպեսզի (միայն ապառնի ժամանակների հետ՝ իբրև նպատակի խոսք). օրինակ՝ Բարի է ինձ, զի խոնարհ արարեր զիս, որպէս (=որ, որպեսզի) ուսայց զարդարութիւնս քո։*

Զի, քանզի, վասն զի, փոխանակ զի,—որով, որովհետեւ=*որ, զի, քանի որ, որովհետև (սովորաբար ներկա և անցյալ ժամանակների հետ իբրև պատճառական խոսք)։*

Փոխանակ զի=*նրա համար որ, օրինակ՝ Օրհնեսցին ի զաւակի քում ամենայն ազգք, փոխանակ զի լուար ձայնի իմում։*

Իբր զի, իբրու զի, որպէս զի=*որ, այնպես որ, այնքան որ. օրինակ՝ Տէրն ինքնին օգնեաց մեզ, որպէս զի (=անպես որ) զանուն քաջութեան ժառանգեցաք։*

Մա՛նաւանդ զի, այն զի=*մա՛նավանդ որ։*

Քան, քան՝ զի, քան եթէ, քան թէ=*քանց, քանց որ, քան թե (առաջադաս բաղդատական խոսքերի սկզբում). օրինակ՝ Քան զնոսա արկանէր ի գեհեն՝ զնա որ պատրեացն զնոսա ընդէ՞ր ոչ արկանէր=Քանց նրանց էր գեհեն ձգում..., կամ՝ նրանց գեհեն ձգելու տեղ։*

Եթէ. թէ=*եթե, թե, թե որ (պայմանական խոսքերի սկզբում)։*

Եթէ...ապա, ապա եւ, ապաքէն, ապա ուրեմն=եթե...ապա, *օրինակ՝ Եթէ զիս գիտէիք, ապա և զհայրն իմ գիտէիք։ Եթէ սիրէիք զիս, ապա ուրախ լեալ էր ձեր։ Կախարդն եթէ հանէր, ապաքէն դիւօք հանէր։*

Եթէ. թէ=*թե որ. օրինակ՝ Հաւատա՞յք, եթէ կարող եմ առնել=Հավատո՞ւմ եք, թե կարող եմ անել։ Ոչ եմք անձանց տեարք, եթէ ըստ կամս գնասցուք=Մենք մեր գլխի տերը չենք, թե մեր կամքով շարժվենք։*

Եթէ ոչ=*եթե ոչ, բայց եթե։*

**Մինչ, մինչեւ մինչդեռ**=մինչ, մինչդեռ, քանի, քանի դեռ, երբ, երբ դեռ. օրինակ՝ Յովսէփ եօթնուտասնամեայ էր, մինչ (=երբ) արածէր եղբարբքն հանդերձ խաշինս։ Մինչև (=մինչդեռ) մեք զայլս կամէաք հնազանդել, մեր՝ որ վարդապետք օրինացդ էին, զկնի նոցա մոլորութեանն խոտորեցան։

**Մինչեւ, յորմէ հետէ**=այն օրից երբ, այն օրից ի վեր. օրինակ՝ Մինչև գնաց Մեսրոպ յարքունական դրանէն, ոչ զոք ի ճարտարաց գտանէր անդ ի դպրաց։ Երեք ամք են, յորմէ հետէ գամ։

**Մինչ, մինչեւ**=մինչև, մինչև որ։

**Մինչ, մինչեւ, մինչ զի**=այնպես որ, այնքան որ, մինչև որ. օրինակ՝ Շրջշրջէին զնա անդէն, մինչ զի ոչ մնաց ի նմա տեղի ողջ։ Եղև պատանեակն իբրև զմեռեալ, մինչև բազմաց ինչ ասել թէ մեռաւ։ Շարժումն մեծ եղև ի ծովուն, մինչ նաւին ծածկել յալեաց անտի (=...այնպես որ նավը ծածկվեց...)։ Ժողովեցան առ նա ժողովուրդք բազումք, **մինչեւ մտանել նմա** ի նաւն։

Գրաբարում այս իմաստով **մինչ, մինչեւ** դրվում են նաև անորոշ դերբայի հետ, իսկ աշխարհաբարում միշտ դիմավոր բայով է ասվում։

**Մինչչեւ**=քանի դեռ չ..., դեռ չ. օրինակ՝ Մինչչեւ հաւու խօսեալ իցէ երիցս ուրասցիս զիս=Հավը դեռ խոսած չի լինիլ, (որ երեք անգամ) կ՚ուրանաս ինձ։

Աշխարհաբար այս երկրորդական խոսքը սովորաբար անցյալ դերբայով կամ առաջ բառով է ասվում։— Աքլորը դեռ չկանչած՝ դու...։ Աքլորը կանչելուց առաջ...։

**Չեւ, չեւ եւս**=դեռ չ... Օրինակ՝ Չև էր ուրուք ձեռնարկեալ (=Դեռ ոչ ոք չէր դիպել)։ Ի ճշմարտութեան վերայ չև է հասեալ։ Չև էր հասեալ ժամ նորա։

**Իբրեւ, յորժամ**=երբ, երբ որ։

**Ցորժամ**=մինչև (այն ժամանակ) որ. օրինակ՝ Անդ լինիջիր, ցորժամ ասացից քեզ։

**Ուստի**=ուստի։

**Ապա թէ ոչ**=ապա թե ոչ։

**Թող թէ**=թող թե։

**Այսինքն է, այս է**=այսինքն։

**231.** Իբրև ստորադասական շաղկապ բանում են, ինչպես աշխարհաբարում, և հարցական բառերը, երբ առանց հարցման իբրև հարաբերական բառ են գործածվում։ Դրանց ետևից կարող է իբրև թարմատար շաղկապ դրվել **եւ**=էլ, էլ որ, երբեմն նաև **թէ**=որ։ Օրինակ՝ Երբ և է՝ յայտնելոց են (=երբ էլ լինի...)։ Զինչ և խնդրեսցես՝ տաց քեզ=Ինչ էլ որ խնդրես՝ կտամ քեզ։

**232.** *Հարաբերական կամ շաղկապական* որ *դերանվան (հոլովումը տե՛ս § 101. 5) և նրանով կազմված խոսքերի համար պետք է իմանալ.*

*1.* Որ *հարաբերականի հոլովների փոխանակ գործ են ածվում՝* ուր, ուստի, զի, յորժամ, որպէս, իբրև. *օրինակ՝ Եկն ի քաղաքն, ուր (յորում) սնեալն էր։ Դարձայց ի տուն իմ, ուստի (=յորմէ) ելի։ Մի՛ լինիցիս որպէս կեղծաւորքն, զի (=որ, որք) սիրեն... Եգիտ անդ զօրս բազումս պարսից, զի զաշխարհն յինքեանս գրաւեալ էին ի ծառայութիւն։ Ի ժամանակի, որպէս (=յորում, յորժամ) ապստամբեցին հրեայք Ադրիանոսէ։ Ի ժամանակի, որպէս բորբոքեսցի բարկութիւն նորա։*

*2. Երկրորդական հարաբերական խոսքը կարող է և գլխավոր խոսքից առաջ ընկնել. հարաբերյալն այս դեպքում դրվում է երկրորդական խոսքի վերջում, երբեմն և գլխավոր խոսքի մեջ, և հաճախ մնում է ուղղական հոլովով։ Օրինակ՝* Որ բասիլիսկոսն կոչի ազգ օձից՝ *հայելով միայն սատակէ։ Եւ* որ *ի վերայ բագնին և սեանն կային* պատկերքն՝ *ծածկեալ պատեցին եղեգամբ (=Եւ* զպատկերսն *որ ի վերայ բագնին և սեանն կային, ծածկեալ պատեցին)։*

*3.* Որ *հարաբերականն առանց հարաբերյալի, եթե որոշ իմաստ ունի՝ թարգմանվում է* Նա որ, այն որ. *իսկ եթե ընդհանուր անորոշ իմաստ ունի, ստանում է հարաբերական անորոշ դերանվան նշանակություն իբրև՝* ո, ո ոք, որ ոք,—զինչ, որ զինչ, որ ինչ*=ով որ, ինչ որ, որը որ, որ մեկը որ, այն որ, այն ինչ որ, Նա որ։ Օրինակ՝ Ջոգաւ վաղվաղակի որ (=Նա որ) առ զհինգն (զհինգ քանքարն), գործեաց նոքօք և շահեցաւ այլ ևս հինգ։ Նոյնպես և որ (=Նա որ) զերկուսն, շահեցաւ այլ ևս երկուս։ Եւ որ (=Նա որ) զմին առ, գնաց փորեաց զերկիր և թագոյց զարծաթ տեառն իւրոյ։—Եւ մատուցեալ որ (=Նա որ) զհինգ քանքարն ա՛ռ... Մատուցեալ և որոյ (=Նա որ) զերկուս քանքարն առեալ էր... Հնձես զոր (=այն որ) ոչ սերմանեցեր։ Ամենայնի, որ (=ով որ) ունիցի՝ տացի և յաւելցի. և որ (=ով որ) ոչն ունիցի, և զոր (=ինչ որ) ունիցին՝ բարձցի ի նմանէ։ Բառնաս զոր (=այն ինչ որ) ոչ եդիր։ Երանի որում (=Նրան որին, ում որ) թողութիւն եղև։ Արկ զիւրև յորոյ վերայ (=ինչի վրա որ, այն որի վրա) անկեալ դնէր։ Որոց (=ովքեր որ) պէտք էին բժշկութեան՝ բժշկէր։ Անիրաւ թագաւոր ոչ տացէ զվարձս վաստակոցն՝ որ (=Նրանց որ) մտադիւրն պատրաստին մեռանել ի վերայ նորա։ Դուք ոչ մտանէք և որ (=ովքեր որ) մտանելոց են՝ արգելուք։ Որ (=ով որ) կամի փոխ առնուլ ի քէն՝ մի՛ դարձուցաներ զերեսս։ (Տե՛ս § 30. 3)։*

Որ ոք *(=որ մեկը որ, որը որ) ի նոցանէ վաղ առ իս եկեսցէ, զնա արարից թագաւոր։ Եւ* որ *կամիցի* ոք *(=ով որ) դատել և առնուլ զշապիկս քո, թող ի նաև զբաճկոն քո։ Առաքեա* յոյր *ձեռն (=ում ձեռքով*

որ) առաքելոց ես։ Տաց պատասխանի ոյք նախատեն զիս բանիւ։ Ծագեա զողորմութիւն քո՝ ոյք (=նրանց որ) ճանաչեն զքեզ։ Ո ոք և (=ով որ էլ) երթայր առ նոսա՝ ուսուցանէին կամակար։ Արարին ընդ նա զոր ինչ (=ինչ որ) կամեցան։ Ուսուցէք նոցա պահել զամենայն որ ինչ (=ամեն ինչ որ) պատուիրեցի ձեզ։ Զոր ինչ (=ինչ որ) ծախիցես ի դա, հատուցից քեզ։ Որ զինչ և (=ինչ էլ որ) ասիցէ ձեզ, արասջիք։ Զինչ (=ինչ որ) և անուանեաց Ադամ, այն է անուն նոցա։ Դարձուցից ուստի (=այնտեղ, որտեղից որ) ելին։

4. Երբեմն որ հարաբերականը դրվում է ոչ այն հոլովով, որ պահանջում է երկրորդական խոսքի իմաստը, այլ այն հոլովով, որ պահանջում է գլխավոր խոսքի իմաստը և որ պիտի ունենար իբրև հարաբերյալ դրված ցուցականը, եթե լիներ։ Օրինակ՝ Որում խնդրէ ի քէն՝ տուր=Այնմ որ խնդրէ ի քէն՝ տուր։ Որոց (=այնոցիկ, որք) մտանեն՝ չտայք թոյլ մտանել։ Գտին ժողովեալ զմետասանսն և զորս (=զայնոսիկ, որք) ընդ նոսայն էին։ Կարդային առ որ (=առ այն, որ) յամենայն ժամանակի պաշտպան լինէր ազգին իւրեանց։ Որ բամբասէն՝ կորուսանէ զանձն իւր և զորոց (=զայնոցիկ, որք=զանձինս այնոցիկ, որք) լսենն։ Հնձեմ ուստի (=անտի, ուր) ոչ սերմանեցի, և ժողովեմ՝ ուստի (=անտի, ուր) ոչ սփռեցի։ Երկիր պագանեմք որում գիտեմքն։ Վասն որոյ (=վասն այնորիկ, որ) կախեցեր ինձ աղ... յուսամ...

**Ծան.** Որ հարաբերականը հաճախ աշխարհաբար թարգմանվում է ցուցական դերանունով. մանավանդ վասն որոյ, այր վասն, յոյր սակս=վասն այսորիկ, վասն այդորիկ, վասն այնորիկ. կամ՝ յայս սակս, յայն սակս, կամ՝ սմին իրի, դմին իրի, նմին իրի=սրա համար, դրա համար, նրա համար. կամ՝ այս պատճառով, այդ պատճառով, այն պատճառով։

## ՁԱՅՆԱՐԿՈՒԹՅՈՒՆ

**233.** Գրաբարում ձայնարկությունները հաճախ առնում են տրական խնդիր։ Ինչպես աշխարհաբարում երանի՜ նրան, վա՜յ քեզ, այնպես և գրաբարում ասվում են՝ աւա՜ղ (աղետից), բարէ՜ (թշուառութեանս), ո՜հ (անմտութեանն), ո՜վ (սքանչելեացն), վա՜շ (ինձ)։

Շատ գործածական ձայնարկություններից են նաև՝ աղէ՜, օ՜ն, հա՜պա, օ՜շ թէ, իցի՜ւ, իցի՜ւ թէ (=երանի՜ թե)։

10. էջ 279։ Չակերտների մեջ բերվածները քաղված են Հերման Պաուլի «Լեզվի պատմության սկզբունքները» գրքից։ Տե՛ս սույն հրատարակության մեջ 630 էջի տողատակի ծանոթությունը։

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ ՇԱՐԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆ

1. էջ 307։ «Աշխարհաբարի շարահյուսության» 1912 թ. հրատարակության մեջ կրավորական ածանցը և բայը տրված են այդ ժամանակ գործող ավանդական—ստուգաբանական դրությամբ՝ ու. կարդացուել: Այստեղ այդ ածանցը գրվում է «վ» (ու), ինչպես գրել է հեղինակը «Հայոց լեզվի տեսության» մեջ 1931 թ.՝ § 241, 3-ում. «կրավորական բայերը կազմվում են «վ» (ու) մասնիկով»։ Այդ ձևով ճշգրտորեն ներկայացվել է այդ ածանցի և ստուգաբանական և այժմյան գրության ձևը։

2. էջ 368։ 1912 թ. հրատարակության մեջ այս վերջավորությունն ու ածանցը տրված են այդ ժամանակ գործող գրաբարյան ուղղագրությամբ՝ է, եայ: Այժմ այդ վերջավորությունն ու ածանցը գրվում են՝ ե, յա: Այստեղ դրանք տրվում են այնպես, ինչպես դրված են «Հայոց լեզվի տեսության» § 160, և § 189-ում՝ ե (հին է), յա (հին եայ):

3. էջ 378։ Տե՛ս 2-րդ ծանոթագրությունը։

4. էջ 389։ 1912 թ. հրատարակության մեջ չկա «=հ», այն ավելացված է սույն հրատարակության մեջ, այն նկատառումով, որ բերված օրինակներից երկուսը՝ յանուն և յօգուտ բառերը, արդի ուղղագրությամբ գրվում են հ տառով՝ հանուն, հօգուտ։

5. էջ 428։ «Անձայն յ տառ» ասելով հեղինակը նկատի ունի մինչև 1922 թվականը գործող ուղղագրությամբ բառի վերջում ա-ից և ո-ից հետո գրվող յ-ն, որը չէր արտասանվում՝ փեսայ, երեկոյ=փեսա, երեկո։

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ ՀՈԼՈՎՆԵՐԸ

1. էջ 624։ 1908 թ. հրատարակության մեջ տպված է «է վերջավորությամբ». այստեղ դարձված է «ե (հին է) վերջավորությամբ»։ Տե՛ս «Աշխարհաբարի շարահյուսության» 2-րդ ծանոթագրությունը։

2. էջ 633։ Այս տողատակի բացատրությունը վերաբերում է բերված բառերի գրության այն ձևին, որ ընդունված էր մինչև 1922 թվականը։

3. էջ 634։ Այս և նախորդ երկու պարբերությունների բացատրության մեջ քննարկված վերջավորությունները 1908 թ. հրատարակության մեջ տրված են այդ ժամանակ գործող ուղղագրությամբ, ըստ որի բերված անունների հոլովական վերջավորության մեջ վ հնչյունը գրվում էր ւ տառով՝ գիշերւան, գիշերւայ, երեկւան, երեկւայ և այլն. Նմանապես՝ «կիսաձայն յ-ի տեղ անցել է ւ»: Այստեղ տրվում է համաձայն «Հայոց լեզվի տեսության» 1931 թ. հրատարակության § 272. 3-ի, որտեղ կա նույն երևույթի բացատրությունը։

## ԳՐԱԲԱՐԻ ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Տպագրվում է ըստ 1936 թ. երկրորդ վերամշակված հրատարակության։

1. էջ 712։ «Ուսուցի այդ մասին չի գրված այս քերականության մեջ» նախադասությունը Մանուկ Աբեղյանի ձեռքով ավելացված է «Գրաբարի քերականության» 1936 թ. հրատարակության այն օրինակում, որ պահվում է հեղինակի որդու՝ ժողովրդական նկարիչ Մհեր Աբեղյանի մոտ։

2. էջ 712։ 1936 (ինչպես նաև 1907) թ. հրատարակության մեջ որպես օրինակ դրված է նաև «կին մի=մի կին», որը հեղինակի ձեռքով ջնջված է 1936 թ. հրատարակության այն օրինակում, որը պահվում է Մանուկ Աբեղյանի որդու՝ ժողովրդական նկարիչ Մհեր Աբեղյանի մոտ։